ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ



# ՀԱՅԱՍՏԱՆ

## ՔՐԴԱՍՏԱՆ ԵՒ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆ

ԲԱԲԵԼԱԿԱՆ-ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՑ

ՍԵՊԱԳԻՐՆԵՐՈՒ ՀԱՄԱՁԱՅՆ

ԳՐԵՑ

ԴՐ. ՄԱՔՍԻՄԻԼԻԱՆ ՇՏՐԷՔ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. ԲԱՌՆԱԲԱՍ ՊԻԼԷՋԻԿՃԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1904.

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ծ.

# ՀԱՅԱՍՏԱՆ

## ՔՐԴԱՍՏԱՆ ԵՒ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆ

ԲԱԲԵԼԱԿԱՆ-ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՑ

ՍԵՊԱԳՐԵՐՈՒ ՀԱՄԱՁԱՅՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1904.

# ՀԱՅԱՍՏԱՆ

## ՔՐԴԱՍՏԱՆ ԵՒ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆ

ԲԱՐԵԼԱԿԱՆ-ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՑ

ՍԵՊԱԳՐԵՐՈՒ ՀԱՄԱՁԱՅՆ

ԳՐԵՑ

ԴՐ. ՄԱՔՍԻՄԻԼԻԱՆ ՇՏՐԷՔ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. ԲԱՌՆԱԲԱՍ ՊԻԼԷԶԻԿՃԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1904.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

*Դր. Մաքսիմիլիան Շտրէքի այս գործն, որ* **Zeitschrift für Assyriologie** *թերթին ԺԳ (էջ 57—110), ԺԴ (էջ 103–172) եւ ԺԵ (էջ 257–382) հատորներուն մէջ լոյս տեսած է* **Das Gebiet der heutigen Landschaften Armenien, Kurdistân und Westpersien nach den babylonisch-assyrischen Keilinschriften (von Maximilian Streck)** *տիտղոսին տակ, թարգմանուած հրատարակուած է "Հանդէս Ամսօրէի" մէջ**: *Այսօր առանձին հատորով ի մի ամփոփուած երբ լոյս կը տեսնէ սոյն աշխատութիւնը, կարեւոր կը համարինք յայտարարել թէ թարգմանութիւնս ամբողջական է այն մասանց մէջ, որ մեզի համար կարեւորութիւն ունին. միայն Դ. Գլխուն վերջի մասերը համառօտուած են: Ի սկզբան մեր քաղձանքն էր առանձինն հրատարակութեանս մէջ յաւելուլ՝ Հանդիսի մէջ զանց առնուած այն կտորները, ուր մի առ մի կը յիշուին անուան մը սեպագիր արձանագրութեանց մէջ ուր եւ քանի անգամ հանդիպած ըլլալը. բայց նկատելով որ ոչ-մասնագիտաց համար կարեւորութենէ զուրկ է այս ծանօթութիւնը, իսկ մասնագիտաց համար՝ աւելորդ, ըստ որում ասոնց մատչելի է բնագիրը, լաւ համարեցանք տպագրութիւնը չծանրաբեռնել: Շատ տեղ հեղինակը բեւեռագրութեանց թէ բնագիրը եւ թէ թարգմանութիւնը դրած է. մենք թարգմանութեամբ շատացանք:*

---

* *ՀԱ 1899 թ. Ժ–ԺԲ (էջ 307, 325, 359), 1900 թ. Ա–Է (էջ 4, 46, 81, 145, 193), 1902 թ. Բ, Զ, Է, Ժ (էջ 43, 183, 228, 338), 1904 թ. Ե–Թ (էջ 157, 185, 216, 239):*

## Գ

*Կարեւոր կը համարինք գործոյն ոճախուեան վրայ Հ. Տաշեանի Հանդէսի մէջ (1899, էջ 57) գրած համառօտ Մատենախօսականէն քանի մը կտոր յառաջ բերել որով յերեւան կ'ելլէ գործոյն կարեւորութիւնը:*

*"Երկիր մ'որ դարերու ընթացքին մէջ այնչափ բազմատեսակ արկածներու թատր եղած է, անկարելի է որ իւր արտաքինն անփոփոխ պահէ: Հին սերնդոց եւ ազգաց հետ կ'իյնան նաեւ քաղաքներ ու բերդերը, նորերուն կը յաջորդեն նորագոյններ, յաճախ բոլորովին հողաթաղ ու անհետ ընելով հնագոյնները: Այնուհետեւ գիտութեան գործքն է աւերակները պրպտել, հողաբլուրները պեղել ու յայտնել հնագոյն շինուածոց դարերով ծածկուած մնացորդները, որոնք յանկարծ կու գան նոր լոյս մը սփռել խոր մթութեան մէջ թաղուած անցեալի մը վրայի Մեր աւերակաշատ աշխարհին վրայ բաւական ծանօթութիւն կու տան՝ բազմաթիւ յիշատակարանաց հետ՝ նաեւ մեր պատմագիրք: Սակայն այս ամէնք կը համնի հազիւ Ե. դար յ. Ք.ի: Անկէ վեր՝ ցանցառ են աղբիւրները, քանի որ կանոնաւոր պեղումներ չեն եղած: Բաց ի հատուկտիր տեղեկութիւններէ՝ կը մնայ մեզի զոնէ ուրիշ՝ բաւական յորդ աղբիւր մը, այսինքն՝ արձանագրութիւնքն բնիկ աշխարհին (Ուրարդեանց), բայց ոչ նուազ նաեւ Ասորեստանեայց: Վերջինոցս տիեզերակալ իշխանութիւնը դարերով միակ համազօր հակառակորդ մ'ունեցաւ Վանի ուրարդեան իշխողները. եւ դարերով տեւեց փոփոխ բախտիւ երկու կողման աշխարհակալական մրցումն:*

*Բնական է ուրեմն որ Ասորեստանեայց բազմաթիւ յիշատակարանաց մէջ առատ նիւթ գտնուի մեր աշխարհի Ուրարդեան շրջանի պատմութեան եւ աշխարհագրութեան համար: Ահա այս նկատմամբ օգտակար ձեռնարկ մըն է Տտրէք գիտնականին վերոյիշեալ երկն՝... լոյս տեսած Բեցուլդի ասորագիտական թերթին մէջ սա խորագրով...., նպատակ ունենալով քաղել եւ ի մի ամփոփել նոյն յիշատակարանաց այն ամէն տեղեկութիւնքն*

որ յիշեալ աշխարհաց մասին են: Գրութեան գլխաւոր նպատակն աշխարհագրական է, սակայն նոյն իսկ այս ատաղձը ժողվելու համար պէտք էր անյիշատակ չթողուլ այն դէպքերն՝ որոնց աւանդող քանդակք կը յիշեն այն աշխարհներն, քաղաքներն ու աւաններն: Ասով աշխարհագրական ու պատմական տեղեկութիւնք հիւսուած են անընդհատ՝ ինչպէս նոյն յիշատակարանաց՝ նոյնպէս առաջիկայ երկասիրութեանս մէջ, որ՝ աւելորդ է ըսել, մասնագիտի հմտութեամբ գրուած է”:

Ի վերջոյ պարտք կը համարինք 126 էջին ծանօթութեանը վերջին մասին մտադիր ընելու ընթերցողները, ուր հեղինակը կը խոստանայ Յաւելուածով մը իւր մեկնութեանցն այլ եւ այլ կէտերը եղանակաւորել եւ իւր գործոյն ցանկը կամ բովանդակութիւնը հրատարակել: Նկատելով որ այս խոստացուած Յաւելուածը չորս երկար տարիներէ ի վեր տակաւին հրատարակուած չէ, եւ հեղինակին բազմազբաղ պարապմունքները կ'երեւայ թէ դեռ երկայն ատեն զինքը պիտի արգելուն այս խոստումը կատարելէ, այլ եւս սպասել աւելորդ երեւցաւ մեզ:

Վիեննա, 15. Օգոստոս 1904: Հ. Բ. Գ.

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ



# ՀԱՅԱՍՏԱՆ

## ՔՐԴԱՍՏԱՆ ԵՒ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆ

ԲԱԲԵԼԱԿԱՆ-ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՑ

ՍԵՊԱԳՐԵՐՈՒ ՀԱՄԱՁԱՅՆ

ԳՐԵՑ

ԴՐ. ՄԱՔՍԻՄԻԼԻԱՆ ՇՏՐԷՔ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. ԲԱՌՆԱԲԱՍ ՊԻԼԷԶԻԿՃԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1904.

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԳԱՐԱՆ

Ծ.

50

# ՀԱՅԱՍՏԱՆ

## ՔՐԴԱՍՏԱՆ ԵՒ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆ

ԲԱՐԵԼԱԿԱՆ-ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՑ

ՍԵՊԱԳՐԵՐՈՒ ՀԱՄԱՁԱՅՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1904.

# ՀԱՅԱՍՏԱՆ

## ՔՐԴԱՍՏԱՆ ԵՒ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆ

ԲԱԲԵԼԱԿԱՆ-ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՑ

ՍԵՊԱԳՐԵՐՈՒ ՀԱՄԱՁԱՅՆ

ԳՐԵՑ

ԴՐ. ՄԱՔՍԻՄԻԼԻԱՆ ՇՏՐԷՔ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. ԲԱՌՆԱԲԱՍ ՊԻԼԷՃԻԿՃԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1904.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

*Դր. Մաքսիմիլիան Շտրէքի այս գործն, որ* Zeitschrift für Assyriologie *թերթին ԺԳ (էջ 57—110), ԺԴ (էջ 103–172) եւ ԺԵ (էջ 257–382) հատորներուն մէջ լոյս տեսած է* Das Gebiet der heutigen Landschaften Armenien, Kurdistân und Westpersien nach den babylonisch-assyrischen Keilinschriften (von Maximilian Streck) *տիտղոսին տակ, թարգմանուած հրատարակուած է "Հանդէս Ամսօրէի" մէջ*: Այսօր առանձին հատորով ի մի ամփոփուած երբ լոյս կը տեսնէ սոյն աշխատութիւնը, կարեւոր կը համարինք յայտարարել թէ թարգմանութիւնս ամբողջական է այն մասանց մէջ, որ մեզի համար կարեւորութիւն ունին. միայն Դ. Գլխուն վերջի մասերը համառօտուած են: Ի սկզբան մեր քաղձանքն էր առանձինն հրատարակութեանս մէջ յաւելուլ՝ Հանդիսի մէջ զանց առնուած այն կտորները, ուր մի առ մի կը յիշուին անուան մը սեպագիր արձանագրութեանց մէջ ուր եւ քանի անգամ հանդիպած ըլլալը. բայց նկատելով որ ոչ-մասնագիտաց համար կարեւորութենէ զուրկ է այս ծանօթութիւնը, իսկ մասնագիտաց համար՝ աւելորդ, քստ որում ասոնց մատչելի է բնագիրը, լաւ համարեցանք տպագրութիւնը չծանրաբեռնել: Շատ տեղ Հեղինակը քեւեռագրութեանց թէ բնագիրը եւ թէ թարգմանութիւնը դրած է. մենք թարգմանութեամբ շատացանք:*

---

** ՀԱ 1899 թ. Ժ-ԺԲ (էջ 307, 325, 359), 1900 թ. Ա-Է (էջ 4, 46, 81, 145, 193), 1902 թ. Բ, Զ, Է, Ժ (էջ 43, 183, 228, 338), 1904 թ. Ե-Թ (էջ 157, 185, 216, 239):*

*Կարեւոր կը համարինք գործոյն որպիսութեան վրայ Հ. Տաշեանի Հանդիսի մէջ (1899, էջ 57) գրած համառօտ Մատենախօսականէն քանի մը կտոր յառաջ բերել որով յերեւան կ'ելլէ գործոյն կարեւորութիւնը:*

*«Երկիր մ'որ դարերու ընթացքին մէջ այնչափ բազմատեսակ արկածներու թատր եղած է, անկարելի է որ իւր արտաքինն անփոփոխ պահէ: Հին սերնդոց եւ ազգաց հետ կ'իյնան նաեւ քաղաքներ ու բերդերը, նորերուն կը յաջորդեն նորագոյններ, յաճախ բոլորովին հողաթաղ ու անհետ ընելով հնագոյնները: Այնուհետեւ գիտութեան գործքն է աւերակները պրպտել, հողաբլուրները պեղել ու յայտնել հնագոյն շինուածոց դարերով ծածկուած մնացորդները, որոնք յանկարծ կու գան նոր լոյս մը սփռել խոր մթութեան մէջ թաղուած անցեալի մը վրայ։ Մեր աւերակաշատ աշխարհին վրայ բաւական ծանօթութիւն կու տան՝ բազմաթիւ յիշատակարանաց հետ՝ նաեւ մեր պատմագիրք: Սակայն այս ամէնը կը հասնի հազիւ Ե. դար յ.Ք.ի: Անկէ վեր՝ ցանցառ են աղբիւրները, քանի որ կանոնաւոր պեղումներ չեն եղած: Բաց ի հատուկտոր տեղեկութիւններէ՝ կը մնայ մեզի գոնէ ուրիշ՝ բաւական յորդ աղբիւր մը, այսինքն՝ արձանագրութիւնքն բնիկ աշխարհին (Ուրարդեանց), բայց ոչ նուազ նաեւ Ասորեստանեայց: Վերջիններս տիեզերակալ իշխանութիւնը դարերով միայն համազօր հակառակորդ մ'ունեցաւ Վանի ուրարդեան իշխողները. եւ դարերով տեւեց փոփոխ բախտիւ երկու կողման աշխարհակալական մրցումն:*

*Բնական է ուրեմն որ Ասորեստանեայց բազմաթիւ յիշատակարանաց մէջ առատ նիւթ գտնուի մեր աշխարհի Ուրարդեան շրջանի պատմութեան եւ աշխարհագրութեան համար: Ահա այս նկատմամբ օգտակար ձեռնարկ մըն է Շտրէք գիտնականին վերոյիշեալ երկն՝... լոյս տեսած Բեցոլդի ասորագիտական թերթին մէջ սա խորագրով..., նպատակ ունենալով քաղել եւ ի մի ամփոփել նոյն յիշատակարանաց այն ամէն տեղեկութիւնքն*

որ յիշեալ աշխարհաց մասին են: Գրութեան գլխաւոր նպատակն աշխարհագրական է, սակայն նոյն իսկ այս ատաղձը ժողվելու համար պէտք էր անյիշատակ չթողուլ այն դէպքերն՝ որոնց աւանդող քանդակք կը յիշեն այն աշխարհներն, քաղաքներն ու աւաններն: Ասով աշխարհագրական ու պատմական տեղեկութիւնք հիւսուած են անընդհատ՝ ինչպէս նոյն յիշատակարանաց՝ նոյնպէս առաջիկայ երկասիրութեանս մէջ, որ՝ աւելորդ է ըսել, մասնագիտի հմտութեամբ գրուած է„:

Ի վերջոյ պարտք կը համարինք 126 էջին ծանօթութեանը վերջին մասին մտադիր ընելու ընթերցողները, ուր հեղինակը կը խոստանայ Յաւելուածով մը իւր մեկնութեանցն այլ եւ այլ կէտերը եղանակաւորել եւ իւր գործոյն ցանկը կամ բովանդակութիւնը հրատարակել: Նկատելով որ այս խոստացուած Յաւելուածը չորս երկար տարիներէ ի վեր տակաւին հրատարակուած չէ, եւ հեղինակին բազմազբաղ պարապմունքները կ'երեւայ թէ դեռ երկայն ատեն զինքը պիտի արգելուն այս խոստումը կատարելէ, այլ եւս սպասել աւելորդ երեւցաւ մեզ:

Վիեննա, 15. Օգոստոս 1904: Հ. Բ. Պ.

# ՀԱՅԱՍՏԱՆ

## ՔՐԴԱՍՏԱՆ ԵՒ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆ՝

### ԲԱԲԵԼԱԿԱՆ-ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՑ ՍԵՊԱԳՐԵՐՈՒ ՀԱՄԱՁԱՅՆ

---

## Ա.

### *Նայիրի ըսուած երկիրները:*

*Որչափ գիտենք, առաջին անգամ Սաղմանասար Ա. կռուեցաւ Նայիրի ըսուած երկիրներու վրայ, թէ եւ ինքը Նայիրի անուանակոչութիւնը գործած չէ։ Տիգղաթպիղեսեր Ա.՝ ինչպէս Սէքէնէ-սուի՝ արձանագրութեան մէջ ինքը կ՚ըսէ, երեք անգամ Նայիրի արշաւած եւ "Արեւմուտից մեծ ծովէն մինչեւ Նայիրիի ծովը գտնուած ամէն երկիրները նուաճած„ է։ Այս երեք արշաւանքներէն միայն առաջնոյն վրայ լիուլի տեղեկութիւն ունինք. մէկալ երկու արշաւանքները հարկ է որ իւր պաշտօնական թագաւորութեան (պալու) հինգերորդ տարիէն ետքն իյնան. դժբախտաբար այս թագաւորին մեծ աղոցածոյ արձանագրութիւնը հոս կ՚ընդհատի։ Յիշեալ առաջին արշաւանքին ատեն — իւր թագաւորութեան երրորդ տարին — Ասորեստանի այս թագաւորը "վերին ծովուն եղերքները՝ հեռաւոր թագաւորաց երկիրներուն„ վրայ քալեց՝ Նայիրիի ցեղապետներուն հզօր նիզակակցութեան դէմ. [բանակս] "անկոխ արահետ-*

ներէ ու դժուարամատչելի կրճերէ, զորոնք յառաջ թագաւոր մը տեսած չէր, փակուած ճամբաներէ ու անհարթ ուղիներէ տարի։„ Անկէ վերջը՝ Թուով 16 բարձրաբերձ լեռներէ անցաւ, ուր անթափանցելի թաւուտներու պատճառաւ՝ արուրեայ բրիչներով հարկ եղաւ առեւէն եկող պատերազմիկ կառքերուն ճամբայ բանալ։ Եթէ զօրքը լեռնական կատաղի եւ անանցանելի առուակներու հանդիպէր՝ անմիջապէս [illegible] բռուած ծառերը տապալելով, կամուրջ կը շինէին։ Եփրատն ալ անցնելէն ետքը՝ Նայիրիի իշխաններէն 23ին բանակներուն հետ պատերազմի սկսաւ։ Այս 23 իշխաններու բանակները բոլորովին պարտուեցան. պատերազմի ատեն ասոնց պատերազմիկ կառքերէն 120 հատ ջախջախեցաւ։ Տիգղաթպիղեսեր մինչեւ “վերին ծով„ հալածեց Նայիրիի 60 թագաւորները. յայտնապէս այս թուին մէջ չեն վերոյիշեալ 23 իշխանները։ Նայիրիի քաղաքները հիմնայատակ կ՚ըլլան. այս քաղաքներէն աւար տարուեցան “մեծ խմբով ձի, ջորի, եզ եւ անոնց դաշտերուն անհամար կենդանիները։„ Ասորեստանեայց թագաւորը կը պարծի Նայիրիի ամէն թագաւորները գերած ըլլալուն վրայ։ Անոնց երկիրներն անոնց ձեռքէն չառաւ, այլ ամէնուն վրայ մէկանց հարկ դրաւ՝ 1200 ձի եւ 2000 արջառ։ Ամէնէն ետքը հպատակեցաւ Դայաենիի իշխանը՝ տեսնելով ընդդիմանալուն ալ անօգուտ ըլլալը։ Տիգղաթպիղեսեր Ա. ասկէ ետքը դէպ ի Մելիդ յառաջացաւ։ Ասորեստանցւոց թագաւորն իւր այս արշաւանքին այն կողմերու լերանց քարերուն ազնիւ տեսակներէն հետը բերելով՝ իբրեւ նուէր դրաւ իրմէ նորոգուած Անուի եւ Ռամմանի հին տաճարն եւ անոր յարակից մասերուն մէջ։

Չմոռնանք որ “կտրած կոթող„ բռուածին վրայ կը յիշուի թագաւոր մը, որ Կաշխարիի, Աշշուրի, Լուլումէի քովերը Հանէի եւ Նայիրիի լեռները որսորդութեամբ զբաղած է. եւ առ հասարակ՝

նայելով օղոցածոյ արձանագրութեան՝ այս թագաւորը Տիգղաթպիղեսեր Ա. կը համարուի։ Ասուրնասիրպաղայ բոլորովին համանման արձանագրութիւնը սա կարծիքն ալ կրնայ ընդունելի ընել, թէ վերոյիշեալ թագաւորն ինքն ըլլայ։

Տիգղաթպիղեսեր Առաջնոյն յաջորդներուն մէջէն ի մասնաւորի նկատողութեան առնլու ենք Ասուրնասիրպաղը, Սաղմանասար Բ.ը եւ Սամսիրամման Բ.ը։ Ասուրնասիրպաղ իւր թագաւորութեան առաջին տարին՝ առաջին անգամ Նայիրի եւ այն՝ աւելի որոշ կերպով Նայիրիի Նիմմէ գաւառն եւ դէպ ի "վար" Կիռուրի արշաւեց։ Նմանապէս իւր թագաւորութեան երկրորդ տարին Նայիրիի սահմանները մտաւ։ Սուբնատի աղբիւրներէն եկաւ եւ Իզալաի, Կինաբուի, Դամդամուսաի եւ Կաշիարի-Նիրբուի վրայէն անցնելով՝ Տուշհայի վրայ քալեց, ուր "իւր պատերազմական արութիւնները Նայիրէի երկիրներուն մէջ" արձանագրերով անմահացուց եւ Նայիրիի չորս գաւառներէն հարկ առաւ։ Նայիրիէն ետ դառնալէն ետքը՝ արշաւեց Նիրբուի եւ Կիրհուի վրայ։ Ուստի II, 97 արձանագրութեան ըսելը թէ Ասուրնասիրպաղ իւր թագաւորութեան հինգերորդ տարին "երկրորդ անգամ" Նայիրի արշաւեց՝ տարեատանցի գրողին կողմէն սխալ մըն է, վասն զի այս արշաւանքն երրորդն է։ Ասուրնասիրպաղ երրորդ անգամ Սի(Նի)-գիշայէն ճամբայ ելլելով՝ Նիրդուն, Տուշհա եւ Տիգրիսն անցնելէն ետքը՝ Դիռա եւ վերջապէս Կիրհու հասաւ։ "Նայիրիի երկիրներուն մէջ՝ անառիկ ամրոցներով պաշտպանեալ 250 քաղաք աւերեցի, կործանեցի եւ աւերակ դարձուցի" խօսքերով կը վերջանայ Ասուրնասիրպաղայ այս արշաւանքին վրայ տուած տեղեկութիւնը։ Այս արշաւանքը կատարելապէս լրացաւ շուտով յաջողած ապստակութեամբ մը դէպ ի Բիտ-Զամանի, այնպէս որ թագաւորը կը պարծի ըսելով "Նայիրիի ընդարձա-

կածուալ երկիրներն իրենց ամբողջական տարածութեամբը նուաճեցի:„ Բայց Ասուրնասիրպալայ իւր թագաւորութեան 18րդ տարին դարձեալ Նայիրիի վրայ արշաւելը, Հոն Կիրհուն միւսանգամ հպատակեցընելու եւ արդէն Ասորեստանեայց ձեռքն եղող Բիտ-Զամանի գաւառը դարձեալ զինու զօրութեամբ երթալու ստիպուիլը՝ ինչպէս իրաւամբ մտադիր կ'ընէ Լէման, կը ցուցընեն, որ Ասորեստանցիք եւ քաշուած են Նայիրիէ, որչափ ալ արքունի պատմագրերու պաշտօնապէս գրածները գեղեցիկ գոյն ու երեւոյթ ունենան: Ուստի անիմաստ ու մեծ նշանակութիւն չունեցող խօսք է, երբ տարեգրոց վերջը՝ Ասուրնասիրպալայ Նայիրիի վրայ ունեցած յաջողութիւններն այսպէս կը հնչեն. “Նայիրիի, Կիրհիի, Շուբարէի եւ Նիրբուի բանակներուն դէմ մռնչեցի իբրեւ զՌամման՝ աստուածն անձրեւոյ:„

Սաղմանասար Բ. եւ Սամսիրաման Բ. ալ արշաւեցին Նայիրի. բայց ինչպէս կ'երեւայ իրենց գործն աւելի նոյն երկրին արեւելեան մասին հետ էր:

Սաղմանասար Բ. իւր թագաւորութեան առաջին տարին Սիմէսիի կրճերէն Նայիրի արշաւեց եւ այս արշաւանքի առեն ստիպուեցաւ անցնիլ այնպիսի “անմերձենալի լեռներէ, որ երկաթէ դաշունի մը սայրին (?) նման դէպ երկինք ցցուած էին:„ Հուբուշկիայէն Ուրարտու հասաւ եւ Ուրարտեան Սուգունիա ամրոցէն դէպ ի վար “Նայիրիի ծովը„ շեղեցաւ, որպէս զի Գուզանի (Կիրզանի) վրայէն դարձեալ Ասորեստան դառնայ: Իւր թագաւորութեան երրորդ տարին դարձեալ Ուրարտուէն դէպ ի վար “Նայիրիի ծովը„ եկաւ եւ անկէ մեկնելէն ետքը՝ մտաւ նախ Կիրզան, ուր երկրին մայրաքաղաքին տաճարին մէջ կանգնեց իւր արքունի արձանը՝ Նայիրիի մէջ ըրած քաջութեանց ու գործոց արձանագրութեամբը. յետոյ մտաւ Հուբուշկիա եւ Էնզիտէի ու Սիռուրիի կրճերը. որ զինքն

Արբելա հանեցին։ Եւ կոթողին համաձայն՝ Սաղ-
մանասարին Տիգրիսի աղբերակունքն (Սեբէնէ-սու)
ըրած արշաւանքն եօթներորդ տարին կ'իյնայ. թէ
ինքն իր այս արշաւանքին առենը Նայիրիի երկիր-
ներէն անցած է, յայտնի է (Lay. 15, 22). Հոն
նոյն տարին Նայիրիի Ասորեստանցւոց հատուցա-
նելի հարկը կ'որոշուի։ Նմանապէս (իր թագաւո-
րութեան տասներորդ տարին) Կարկեմիշէ Ուրար-
տու չուած առենը՝ Նայիրի հանդիպած ըլլալու է։
Իւր թագաւորութեան 15դ տարին թէ Տիգրիսի
եւ թէ Եփրատայ աղբիւրը հասած է։ Յայտնապէս
կ'ըսուի թէ այս արշաւանքն եղած է “Նայիրիի ու
Ուրարտուի դէմ։” Տասնամեայ բացակայութենէ
ետքը՝ տարակոյս չկայ որ թագաւորը (թագաւո-
րութեանը 25դ տարին) Քաւայի (= Քուէ, վերին
մասն Կիլիկիոյ) արշաւանքի առեն Ուրարտու եկաւ,
թէեւ որոշ չի յիշուիր Նայիրիէ անցած ըլլալն.
Նմանապէս՝ թագաւորութեանը 27դ տարին՝ երբ
Բիտ-Զամանիէ Արզանիայի վրայէն Ուրարտու
մտաւ։ Վերջապէս նկատողութեան առնլու է Կիր-
հուի (29դ տարին), Հուբուշկիայի (30դ տարին),
Մալհիսի եւն եւ Հուբուշկիայի (31դ տարին) ար-
շաւանքները։

Սաղմանասար Բ.ի յաջորդը՝ Սամսիրաման Բ.
3 անգամ մեծ ձեռնարկութիւն ըրաւ Նայիրիի նա-
հանգներուն դէմ, ինչպէս արձանագրութիւնք կը
վկայեն։ Առաջին արշաւանքին վրայ ամենեւին
մանրամասնութիւն յայտնի չէ. “Նայիրիի համայն
թագաւորաց” հարկը կը ներկայացընեն կառքի
ձիեր։ “Այն առեն ամբողջ Նայիրին իբրեւ զցանց[1]
նուաճեցի”. այս մնամէջ ուռուցիկ խօսքով է որ
կ'աւարտի Նայիրիի այս արշաւանքին վրայ տրուած
տեղեկութիւնը. արշաւանք մը՝ որուն յաջողու-
թիւնը կամ ոչինչ էր եւ կամ շատ կարճատեւ,

---

1 Այսինքն՝ իբրեւ թէ ցանցով մը։

ինչպէս որ կ՚ապացուցանէ նկարագրութեան չորութիւնը՝ համեմատութեամբ այն մանրամասն ստորագրութեան, որով արձանագրութիւնն երկրորդ, բայց մանաւանդ երրորդ արշաւանքը կը նկարագրէ։

Երկրորդ արշաւանքին առաջնորդն էր Ասորեստանցւոց թագաւորին Ռաբշակը[1], որ մինչեւ "արեւմտեան ծով" յառաջանալով աւեր ու մահ սփռեց ի մասնաւորի Միկտիարա երկիրը. այս երկրէն դառնալու ատեն՝ Սունբայի պատերազմական զօրութիւնը խորտակելէն ետքը՝ Նայիրիի համայն թագաւորներէն հարկ առաւ՝ կառքի ձի։ Երրորդ արշաւանքի ատեն Սամսիրաման անձամբ իւր զօրքովը Զաբ գետին ու Սիլար լերանց վրայէն "վեր դէպ ի Նայիրի" քալեց։ Հոն Հուբուշկիայէն, Միկտիարայէն, Սունբայէն, Մանէն, Պարսուայէն եւ Տաւրլայէն հարկ առաւ. Մեսուննուաճելէն ետքը՝ Գիզիլբունդան առաւ, ուր Սիբար ամրոցն իւր արձանը կանգնեց՝ Նայիրիի մէջ կատարած քաջութիւնները փառաբանող գրութեամբ։ Հարաւային արեւելք (Մադաի) ապստամբութենէ մ'ետքը՝ Նայիրիի ամէն թագաւորները — թուով 27, որոնց անունները մի առ մի կը յիշուին — մատուցին անոր սովորական հարկը, որ է կառքի ձի։ Յաղթապանծ կերպով կ'աւարտէ սեպագիր արձանագրութիւնը հետեւեալ խօսքերով. "Այն ատեն նման որոտացող Ռամմանի մռնչեցի անոնց՝ Սիլարայ ահեղ լեռներէն մինչեւ վար՝ արեւմտեան ծովը. փառաւորութենէս երկիւղ թափեցի անոնց վրայ։"

Ասորեստանի երեք թագաւոր ալ կայ, որ կարճառօտիւ Նայիրիի երկիրները կը յիշեն։ Ռամանիրարի Գ.՝ Եղղիպի, Հարհար եւն, Աբդադանա ըսուած երկիրներն, "Նա՛րին իւր ամբողջ տարածութեամբը", ինչպէս նաեւ "լեռան զառիթափը

---

[1] Տուրտանի (תַּרְתָּן) կամ Ասորեստանեայց սպարապետին ստորակարգեալ բարձրաստիճան պաշտօնակալ մը։

ամբողջ տարածութեամբը՝ մինչեւ արեւմտեան Մեծ ծով„ նուաճած ըլլալուն վրայ կը պարծի։ Տիգղաթպիղեսեր Գ.ի ատեն՝ Էնզիի եւ Ուրարտուի բազմաթիւ քաղաքներն եւ Կումմուհի մէկ մասը Նայիրիի նահանգապետին իշխանութեանը տակ ինկան։ Վերջապէս Սարգոն երկու անգամ հարկ կ'առնու Հուբուշկիոյ իշխաններէն, որ "Նայիրիի թագաւոր„ կը կոչուին։ Այս թագաւորին իշխանութեան 7դ եւ 8դ տարիներն եղած են այս արշաւանքները։

Նայիրիի երկիրներէն ամէն մէկուն վրայ առանձինն ու մանրամասն խօսելէ յառաջ՝ կցենք հոս Տիգղաթպիղեսեր Ա.ռաջնոյն լերանց ցուցակն ու նոյն թագաւորին ու Սամսիրամանի Նայիրիի երկիրներուն երկու մեծ ցանկերը։

Տիգղաթպիղեսեր Ա. յաջորդ 16 լեռները կը յիշէ (հմմտ. վարը).

Եղամա, Ամադանա, Եղհ(թ)իշ, Շէրաբե(?)լի, Տարհունա, Տիրկահուլի, Կիսրա, Տար(?)հանաբէ, Եղուղա, Հաշտարաէ, Շահի(թի)շարա, Ուբերա, Միլխադրունի, Շուլիանզի, Նուբանաշէ, Շէշէ։

Այս ցանկի մասին միտ դնելու է որ Եղամա ըսուած լեռը հաւանականագոյնս նոյն է Եղամունի ըսուածին հետ, զոր Տիգղաթպիղեսեր Ա. Տաղա եւ Հարուսա լեռներուն հետ մէկտեղ կը յիշէ՝ որոնցմէ անցած էր Մուսրի չուած ատեն[1]. այս երեք լեռներն ալ Քումանի ըսուած երկիրն են։ Ամադանա նոյն է Դիռայի Ամադանային հետ։ Տիրկահուլի անուան առաջին մասին մէջ կը բովանդակի թերեւս Տիրիկհի անունը[2], որ Հինիի եւ

---

1 Հմմտ. Եղամա եւ Եղամունի ձեւին համար՝ Տունուբէ եւ Տունիբունի, Արզաշկու եւ Արզաշկունու, Դատա եւ Դատանա (Թագաւոր Հուբուշկիոյ)։

2 Հմմտ. Տուրուկիի, զոր արդէն Ռամման-Նիրարի Ա. նուաճած էր։ Hommel (Gesch. 501, I) Տուրուկ ձեւը "Թուրք„ անուան ամէնէն հին ձեւը կը համարի։

Կարեւոր կը համարինք գործոյն ոսպնաւորութեան վրայ Հ. Տաշեանի Հանդէսի մէջ (1899, էջ 57) գրած համառօտ Մատենախօսականէն քանի մը կտոր յառաջ բերել որով յերեւան կ'ելլէ գործոյն կարեւորութիւնը:

"Երկիր մ'որ դարերու ընթացքին մէջ այնչափ բազմատեսակ արկածներու թատր եղած է, անկարելի է որ իւր արտաքինն անփոփոխ պահէ: Հին սերնդոց եւ ազգաց հետ կ'իյնան նաեւ քաղաքներ ու բերդերը, նորերուն կը յաջորդեն նորագոյններ, յաճախ բոլորովին հողաթաղ ու անհետ ընելով հնագոյնները: Այնուհետեւ գիտութեան գործքն է աւերակները պրպտել, հողաբլուրները պեղել ու յայտնել հնագոյն շինուածոց դարերով ծածկուած մնացորդները, որոնք յանկարծ կու գան նոր լոյս մը սփռել խոր մթութեան մէջ թաղուած անցեալի մը վրայ: Մեր աւերակաշատ աշխարհին վրայ բաւական ծանօթութիւն կու տան՝ բազմաթիւ յիշատակարանաց հետ՝ նաեւ մեր պատմագիրք: Սակայն այս ամէնը կը համնի հազիւ Ե. դար յ. Ք. ի: Անկէ վեր՝ ցամքած են աղբիւրները, քանի որ կանոնաւոր պեղումներ չեն եղած: Բաց ի հատուկտոր տեղեկութիւններէ՝ կը մնայ մեզի գոնէ ուրիշ՝ բաւական յորդ աղբիւր մը, այսինքն՝ արձանագրութիւնքն բնիկ աշխարհին (Ուրարդեանց), բայց ոչ նուազ նաեւ Ասորեստանեայց: Վերջինքս տիեզերակալ իշխանութիւնը դարերով միակ համազօր հակառակորդ մ'ունեցաւ Վանայ ուրարդեան իշխողները. եւ դարերով տեւեց փոփոխ բախտիւ երկու կողման աշխարհակալական մրցումն:

Բնական է ուրեմն որ Ասորեստանեայց բազմաթիւ յիշատակարանաց մէջ առատ նիւթ գտնուի մեր աշխարհի Ուրարդեան շրջանի պատմութեան եւ աշխարհագրութեան համար: Ահա այս նկատմամբ օգտակար ձեռնարկ մըն է Տտրէք գիտնականին վերոյիշեալ երկն՝... լոյս տեսած Բեցոլդի ասորագիտական թերթին մէջ սա խորագրով...., նպատակ ունենալով քաղել եւ ի մի ամփոփել նոյն յիշատակարանաց այն ամէն տեղեկութիւնքն

որ յիշեալ աշխարհաց մասին են: Գրութեան գլխաւոր նպատակն աշխարհագրական է, սակայն նոյն իսկ այս ատաղձը ժողվելու համար պէտք էր անյիշատակ չթողուլ այն դէպքերն՝ որոնց աւանդող քանդակք կը յիշեն այն աշխարհներն, քաղաքներն ու աւաններն: Ասով աշխարհագրական ու պատմական տեղեկութիւնք հիւսուած են անընդհատ՝ ինչպէս նոյն յիշատակարանաց՝ նոյնպէս առաջիկայ երկասիրութեանս մէջ, որ՝ աւելորդ է ըսել, մասնագիտի հմտութեամբ գրուած էր:

Ի վերջոյ պարտք կը համարինք 126 էջին ծանօթութեանը վերջին մասին մտադիր ընելու ընթերցողները, ուր հեղինակը կը խոստանայ Յաւելուածով մը իւր մեկնութեանցն այլ եւ այլ կէտերը եղանակաւորել եւ իւր գործոյն ցանկը կամ բովանդակութիւնը հրատարակել: Նկատելով որ այս խոստացուած Յաւելուածը չորս երկար տարիներէ ի վեր տակաւին հրատարակուած չէ, եւ հեղինակին բազմազբաղ պարապմունքները կ'երեւայ թէ դեռ երկայն ատեն զինքը պիտի արգելուն այս խոստումը կատարելէ, այլ եւս սպասել աւելորդ երեւցաւ մեզ:

Վիեննա, 15. Օգոստոս 1904: Հ. Բ. Պ.

# ՀԱՅԱՍՏԱՆ

## ՔՐԴԱՍՏԱՆ ԵՒ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆ՝

### ԲԱԲԵԼԱԿԱՆ - ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՑ ՍԵՊԱԳՐԵՐՈՒ ՀԱՄԱՁԱՅՆ

---

## Ա.

### Նայիրի ըսուած երկիրները:

Որչափ գիտենք, առաջին անգամ Սալմանասար Ա. կռուեցաւ Նայիրի ըսուած երկիրներու վրայ, թէ եւ ինքը Նայիրի անուանակոչութիւնը գործածած չէ: Տիգղաթպիլեսեր Ա.՝ ինչպէս Սէբէնէ-սուի արձանագրութեան մէջ ինքը կ'ըսէ, երեք անգամ Նայիրի արշաւած եւ "Արեւմուից մեծ ծովէն մինչեւ Նայիրիի ծովը գտնուած ամէն երկիրները նուաճած„ է: Այս երեք արշաւանքներէն միայն առաջնոյն վրայ լիուլի տեղեկութիւն ունինք. մնկալ երկու արշաւանքները հազիւ է որ իւր պաշտօնական թագաւորութեան (պալու) հինգերորդ տարիէն ետքն կ'յնան. դժբախտաբար այս թագաւորին մեծ աղօթանքով արձանագրութիւնը հոս կ'ընդհատի: Յիշեալ առաջին արշաւանքին ատեն — իւր թագաւորութեան երրորդ տարին — Ասորեստանի այս թագաւորը "վերին ծովուն եզերքները՝ հեռաւոր թագաւորաց երկիրներուն„ վրայ քալեց՝ Նայիրիի ցեղապետներուն հզօր նիզակակցութեան դէմ. [բանակս] "անկոխ արահետ-

ներէ ու դժուարամատչելի կրճերէ, զորոնք յառաջ թագաւոր մը տեսած չէր, փակուած ճամբաներէ ու անհարթ ուղիներէ տարի:„ Ասկէ վերջը՝ Թուով 16 բարձրաբերձ լեռներէ անցաւ, ուր անթափանցելի թաւուտներու պատճառաւ՝ արուրեայ բրիչներով հարկ եղաւ ետեւէն եկող պատերազմիկ կառքերուն ճամբայ բանալ: Եթէ զօրքը լեռնական կատաղի եւ անանցանելի առուակներու հանդիպէր՝ անմիջապէս [illegible] բուսած ծառերը տապալելով, կամուրջ կը շինէին: Եփրատն ալ անցնելէն ետքը՝ Նայիրիի իշխաններէն 23ին բանակներուն հետ պատերազմը սկսաւ: Այս 23 իշխաններու բանակները բոլորովին պարտուեցան. պատերազմի ատեն անոնց պատերազմիկ կառքերէն 120 հատ ջախջախեցաւ: Տիգղաթպիղեսեր մինչեւ “վերին ծով„ հալածեց Նայիրիի 60 թագաւորները. յայտնապէս այս թուին մէջ չեն վերյիշեալ 23 իշխանները: Նայիրիի քաղաքները հիմնայատակ կ'ըլլան. այս քաղաքներէն աւար տարուեցան “մեծ խմբով ձի, ջորի, եզ եւ անոնց դաշտերուն անհամար կենդանիները:„ Ասորեստանեայց թագաւորը կը պարծի Նայիրիի ամէն թագաւորները գերած ըլլալուն վրայ: Անոնց երկիրներն անոնց ձեռքէն չառաւ, այլ ամէնուն վրայ մէկանց հարկ դրաւ՝ 1200 ձի եւ 2000 արջառ: Ամէնէն ետքը հպատակեցաւ Դախաենիի իշխանը՝ տեսնելով ընդդիմանալուն ալ անօգուտ ըլլալը: Տիգղաթպիղեսեր Ա. ասկէ ետքը դէպ ի Մելիտ յառաջացաւ: Ասորեստանցւոց թագաւորն իւր այս արշաւանքովն այն կողմերու լերանց քարերուն ազնիւ տեսակներէն հետը բերելով՝ իբրեւ նուէր դրաւ իրմէ նորոգուած Անուի եւ Ռամմանի հին տաճարն եւ անոր յարակից մասերուն մէջ:

Չմոռնանք որ “կտրած կոթող„ ըսուածին վրայ կը յիշուի թագաւոր մը, որ Կաշիարիի, Աշշուրի, Լուլումէի քովերը Հանէի եւ Նայիրիի լեռները որսորդութեամբ զբաղած է. եւ առ հասարակ՝

նայելով ողոցածոյ արձանագրութեան՝ այս թագաւորը Տիգղաթպիղեսեր Ա. կը համարուի: Ասուրնասիրպաղայ բոլորովին համանման արձանագրութիւնը սա կարծիքն ալ կրնայ ընդունելի ընել, թէ վերոյիշեալ թագաւորն ինքն ըլլայ:

Տիգղաթպիղեսեր Առաջնոյն յաջորդներուն մէջէն ի մասնաւորի նկատողութեան առնլու ենք Ասուրնասիրպալը, Սաղմանասար Բ.ը եւ Սամսիրամման Բ.ը: Ասուրնասիրպալ իւր թագաւորութեան առաջին տարին՝ առաջին անգամ Նայիրի եւ այն՝ աւելի որոշ կերպով Նայիրիի Նիմմէ գաւառն եւ դէպ ի "վար" Կիռուրի արշաւեց: Նմանապէս իւր թագաւորութեան երկրորդ տարին Նայիրիի սահմանները մտաւ: Սուբնատի աղբիւրներէն եկաւ եւ Իզալաի, Կինաբուի, Դամդամուսաի եւ Կաշիարի-Նիրբուի վրայէն անցնելով՝ Տուշհայի վրայ քալեց, ուր "իւր պատերազմական արութիւնները Նայիրիի երկիրներուն մէջ" արձանագրերով անմահացուց եւ Նայիրիի չորս գաւառներէն հարկ առաւ: Նայիրիէն ետ դառնալէն ետքը՝ արշաւեց Նիրբուի եւ Կիրհուի վրայ: Ուստի II, 97 արձանագրութեան ըսելը թէ Ասուրնասիրպալ իւր թագաւորութեան հինգերորդ տարին "երկրորդ անգամ" Նայիրի արշաւեց՝ ասորետանցի գրողին կողմէն սխալ մըն է, վասն զի այս արշաւանքն երրորդն է: Ասուրնասիրպալ երրորդ անգամ Սի(Նի)գիշայէն ճամբայ ելլելով՝ Նիրդուն, Տուշհա եւ Տիգրիսն անցնելէն ետքը՝ Դիռա եւ վերջապէս Կիրհու հասաւ: "Նայիրիի երկիրներուն մէջ՝ անառիկ ամրոցներով պաշտպանեալ 250 քաղաք աւերեցի, կործանեցի եւ աւերակ դարձուցի" խօսքերով կը վերջանայ Ասուրնասիրպալայ այս արշաւանքին վրայ տուած տեղեկութիւնը: Այս արշաւանքը կատարելապէս լրացաւ շուտով յաջողած ասպատակութեամբ մը դէպ ի Բիտ-Զամանի, այնպէս որ թագաւորը կը պարծի ըսելով "Նայիրիի ընդարձա-

կածուալ երկիրներն իրենց ամբողջական տարածութեամբը նուաճեցի։„ Բայց Ասուրնասիրպալայ իր թագաւորութեան 18դ տարին դարձեալ Նայիրիի վրայ արշաւելը, հոն Կիրհուն միւանգամ հպատակեցընելու եւ արդէն Ասորեստանեայց ձեռքն եղող Բիտ-Զամանի գաւառը դարձեալ զէնու զօրութեամբ երթալու ստիպուիլը՝ ինչպէս իրաւամբ մտադիր կ'ընէ Լէման, կը ցուցընեն, որ Ասորեստանցիք ետ քաշուած են Նայիրիէ, որչափ ալ արքունի պատմագրերու պաշտօնապէս գրածները գեղեցիկ գոյն ու երեւոյթ ունենան։ Ուստի անիմաստ ու մեծ նշանակութիւն չունեցող խօսք է, երբ տարեգրոց վերջը՝ Ասուրնասիրպալայ Նայիրիի վրայ ունեցած յաջողութիւններն այսպէս կը հնչեն. “Նայիրիի, Կիրհիի, Շուբարէի եւ Նիրբուի բանակներուն դէմ մռնչեցի իբրեւ զՌամման՝ աստուածն անձրեւոյ։„

Սաղմանասար Բ. եւ Սամսիրաման Բ. ալ արշաւեցին Նայիրի. բայց ինչպէս կ'երեւայ իրենց գործն աւելի նոյն երկրին արեւելեան մասին հետ էր։

Սաղմանասար Բ. իր թագաւորութեան առաջին տարին Սիմէսիի կրճերէն Նայիրի արշաւեց եւ այս արշաւանքի ատեն ստիպուեցաւ անցնիլ այնպիսի “անմերձենալի լեռներէ, որ երկաթէ դաշունի մը սայրին (?) նման դէպ երկինք ցցուած էին։„ Հուբուշկիայէն Ուրարտու հասաւ եւ Ուրարտեան Սուգունիա ամրոցէն դէպ ի վար “Նայիրիի ծովը„ շեղեցաւ, որպէս զի Գուզանի (Կիրզանի) վրայէն դարձեալ Ասորեստան դառնայ։ Իր թագաւորութեան երրորդ տարին դարձեալ Ուրարտուէն դէպ ի վար “Նայիրիի ծովը„ եկաւ եւ անկէ մեկնելէն ետքը՝ մտաւ նախ Կիրզան, ուր երկրին մայրաքաղաքին տաճարին մէջ կանգնեց իր արքունի արձանը՝ Նայիրիի մէջ ըրած քաջութեանց ու գործոց արձանագրութեամբը. յետոյ մտաւ Հուբուշկիա եւ Էնզիտէի ու Կիռուրիի կրճերը, որ զէնքն

Արբեղա հանեցին։ Սեւ կոթողին համաձայն՝ Սաղմանասարին Տիգրիսի աղբերակունքն (Սեբէնէ-սու) ըրած արշաւանքն եօթներորդ տարին կ'իյնայ. թէ ինքն իւր այս արշաւանքին ատենը Նայիրիի երկիրներէն անցած է, յայտնի է (Lay. 15, 22). հոն նոյն տարին Նայիրիի Ասորեստանցւոց հատուցանելի հարկը կ'որոշուի։ Նմանապէս (իւր թագաւորութեան տասներորդ տարին) Կարկեմիշէ Ուրարտու չուած ատենը՝ Նայիրի հանդիպած ըլլալու է։ Իւր թագաւորութեան 15ր տարին թէ Տիգրիսի եւ թէ Եփրատայ աղբիւրը հասած է։ Յայտնապէս կ'ըսուի թէ այս արշաւանքն եղած է "Նայիրիի ու Ուրարտուի դէմ։" Տասնամեայ բացակայութենէ ետքը՝ տարակոյս չկայ որ թագաւորը (թագաւորութեանը 25ր տարին) Քուայի (= Քուէ, վերին մասն Կիլիկիոյ) արշաւանքի ատեն Ուրարտու եկաւ, թէեւ որոշ չի յիշուիր Նայիրիէ անցած ըլլալն. Նմանապէս՝ թագաւորութեանը 27ր տարին՝ երբ Բիտ-Զամանիէ Արզանիայի վրայէն Ուրարտու մտաւ։ Վերջապէս նկատողութեան առնլու է Կիրհուի (29ր տարին), Հուբուշկիայի (30ր տարին), Մալհիսի եւն եւ Հուբուշկիայի (31ր տարին) արշաւանքները։

Սաղմանասար Բ.ի յաջորդը՝ Սամսիրաման Բ. 3 անգամ մեծ ձեռնարկութիւն ըրաւ Նայիրիի նահանգներուն դէմ, ինչպէս արձանագրութիւնք կը վկայեն։ Առաջին արշաւանքին վրայ ամենեւին մանրամասնութիւն յայտնի չէ. "Նայիրիի համայն թագաւորաց" հարկը կը ներկայացընեն կառքի ձիեր։ "Այն ատեն ամբողջ Նայիրին իբրեւ զցանց[1] նուաճեցի". այս անամէջ ուռուցիկ խօսքով է որ կ'աւարտի Նայիրիի այս արշաւանքին վրայ տրուած տեղեկութիւնը. արշաւանք մը՝ որուն յաջողութիւնը կամ ոչինչ էր եւ կամ շատ կարճատեւ,

1 Այսինքն՝ իբրեւ թէ ցանցով մը։

ինչպէս որ կ'ապացուցանէ նկարագրութեան չորութիւնը՝ համեմատութեամբ այն մանրամասն ստորագրութեան, որով արձանագրութիւնն երկրորդ, բայց մանաւանդ երրորդ արշաւանքը կը նկարագրէ։

Երկրորդ արշաւանքին առաջնորդն էր Ասորեստանցւոց թագաւորին Ռոփշակը[1], որ մինչեւ «արեւմտեան ծով» յառաջանալով աւեր ու մահ սփռեց ի մանաւորի Միկտիարա երկիրը. այս երկրէն դառնալու ատեն՝ Սունբայի պատերազմական զօրութիւնը խորտակելէն ետքը՝ Նայիրիի համայն թագաւորներէն հարկ առաւ՝ կառքի ձի։ Երրորդ արշաւանքի ատեն Սամիրաման անձամբ իւր զօրքովը Զաբ գետին ու Սիլար լերանց վրայէն «վեր դէպ ի Նայիրի» քալեց։ Հոն Հուբուշկիայէն, Միկտիարայէն, Սունբայէն, Մանէն, Պարսուայէն եւ Տաւրլայէն հարկ առաւ. Մեսուն նուաճելէն ետքը՝ Գիզիլբունդան առաւ, ուր Սիբար ամրոցն իւր արձանը կանգնեց՝ Նայիրիի մէջ կատարած քաջութիւնները փառաբանող գրութեամբ։ Հարաւային արեւելք (Մադաի) ապստամբութենէ մ'ետքը՝ Նայիրիի ամէն թագաւորները — թուով 27, որոնց անուններն մի առ մի կը յիշուին — մատուցին անոր սովորական հարկը, որ է կառքի ձի։ Յաղթապանծ կերպով կ'աւարտէ սեպագիր արձանագրութիւնը հետեւեալ խօսքերով. «Այն ատեն նման որոտացող Ռամմանի մռնչեցի անոնց՝ Սիլարայ ահեղ լեռներէն մինչեւ վար՝ արեւմտեան ծովը. փառաւորութենէս երկիւղ թափեցի անոնց վրայ։»

Ասորեստանի երեք թագաւոր ալ կայ, որ կարճառօտիւ Նայիրիի երկիրները կը յիշեն։ Ռամանիրարի Գ.՝ Եղղիպի, Հարհար եւն, Աբդադանա բռուած երկիրներն, «Նա՛րին իւր ամբողջ տարածութեամբը», ինչպէս նաեւ «լեռան ղառիթափը

---

[1] Տուրտանի (תַּרְתָּן) կամ Ասորեստանեայց սպարապետին ստորակարգեալ բարձրաստիճան պաշտօնակալ մը։

ամբողջ տարածութեամբը՝ մինչեւ արեւմտեան մեծ ծով„ նուաճած ըլլալուն վրայ կը պարծի։ Տիգղաթպիլեսեր Գ․ի առեն՝ Էնզիի եւ Ուրարտուի բազմաթիւ քաղաքներն եւ Կումմուհի մէկ մասը Նայիրիի նահանգապետին իշխանութեանը տակ ինկան։ Վերջապէս Սարգոն երկու անգամ հարկ կ'առնու Հուբուշկիոյ իշխաններէն, որ "Նայիրիի Թագաւոր„ կը կոչուին։ Այս թագաւորին իշխանութեան 7ր եւ 8ր տարիներն եղած են այս արշաւանքները։

Նայիրիի երկիրներէն ամէն մէկուն վրայ առանձինն ու մանրամասն խօսելէ յառաջ՝ կցենք հոս Տիգղաթպիլեսեր Առաջնոյն լերանց ցուցակն ու նոյն թագաւորին ու Սամսիրամանի Նայիրիի երկիրներուն երկու մեծ ցանկերը։

Տիգղաթպիլեսեր Ա․ յաջորդ 16 լեռները կը յիշէ (հմմտ․ վարը)․

Եղամա, Ամադանա, Եղհ(թ)իշ, Շէրաբե(?)լի, Տարհունա, Տիրկահուլի, Կիսրա, Տար(?)հանաբէ, Եղուղա, Հաշտարաէ, Շահի(թի)շարա, Ուբերա, Միլխադրունի, Շուլիանզի, Նուբանաշէ, Շէշէ։

Այս ցանկի մասին միտ դնելու է որ Եղամա բռուած լեռը հաւանականագոյնս նոյն է Եղամունի բռուածին հետ, զոր Տիգղաթպիլեսեր Ա․ Տաղա եւ Հարուսա լեռներուն հետ մէկտեղ կը յիշէ՝ որոնցմէ անցած էր Մուսրի չուած առեն[1]․ այս երեք լեռներն ալ Քումանի բռուած երկիրն են։ Ամադանա նոյն է Դիռայի Ամադանային հետ։ Տիրկահուլի անուան առաջին մասին մէջ կը բովանդակի թերեւս Տիրիկհի անունը[2], որ Հինիի եւ

---

1 Հմմտ․ Եղամա եւ Եղամունի ձեւին համար՝ Տունաբէ եւ Տունիբունի, Արզաշկու եւ Արզաշկունու, Դատտա եւ Դատտանա (Թագաւոր Հուբուշկիոյ)։

2 Հմմտ․ Տուրուկիի, զոր արդէն Ռամման-Նիրարի Ա․ նուաճած էր։ Hommel (Gesch. 501, I) Տուրուկ ձեւը "Թուրքը„ անուան ամէնէն հին ձեւը կը համարի։

Նէրդկիի մէջտեղը լեռնադաւառ մըն է. դիրքը շատ յարմար կու գայ. վասն զի առաջին երկու լերանց անուններէն հետեւցընելով՝ կարելի է ըսել թէ ամբողջ ցուցակն աշխարհագրօրէն արեւմուտքէն արեւելք է, եւ Տիրկահուլի անուամբ գրեթէ ակնարկուած տեղերը կու գանք։ Մէկալ լեռները, որոնց դիրքը կամ տեղը ճշդել դժուարին է, դէպ ի Վանայ լիճը ձգուած ըլլալու են։

Տիգղաթպիղեսեր Ա. իւր սղոցածոյ արձանագրութեան մէջ Նայիրիի 23 երկիրներուն ցանկը կամ ցուցակը կը դնէ. Նիմմէ, Տունուբէ, Տուալի, Քի(ն)տարի, Ուզուլա, Ունզամունի, Անդիաբէ, Պիլաքի(ն)նի, Աթուրգինի, Կուլիբարզինի, Շինիբիրնի, Հիմուա, Պաիտերի, Ուիրամ, Շուրուրիա, Աբաենի, Ադաենի, Կիրինի, Ալբաա, Ուգինա, Նազաբիա, Աբարսիունի, Դաիաենի։

Երկիրներու այս ցանկն, ինչպէս կ'երեւայ, ընդհանրապէս Նայիրիի երկիրներն արեւելքէն արեւմուտք կամ հիւսիսային-արեւմուտք յառաջ կը բերէ. վասն զի այս երկիրներու մէջէն առաջինը՝ Նիմմէ՝ ամէնէն արեւելեանն է, իսկ վերջինը՝ Դաիաենի՝ Նայիրիի ամէնէն հիւսիսային-արեւմտեան նահանգն է. եւ շատ յաճախ ամբողջ Նայիրիի տարածութիւնը կը նշանակուի "Նիմմէէ մինչեւ Դաիաենի„ բացատրութեամբ։ Այս երկիրներուն վրայ մանրամասն տես վարը։

Հաւանականագոյնս Տունուբէ՝ Սաղմանասար Բ.ի արձանագրութեանց Թու–նիբու–նին է։ Սաղմանասար՝ Թունիբունիի կըճերէն Ուրարտու մտաւ։ Պաիտերիի եւ Թերեւս Պադդիրի հետ անոր նոյն ըլլալուն վրայ՝ տես վարը։ Բելք՝ Շու–րու–րիա հին հայկական արձանագրութեանց մէջ հանդիպող Սու–րա–ի հետ նոյն կը համարի՝ դնելով նոյնը

---

1 Verhandl. d. Berl. Anthrop. Gesellsch. 1894, էջ 486։

Խաղդեաց իշխաններուն նախնական տեղւոյն անունը, որ ինծի յանդգնական կ'երեւայ։ Աքաէնէի նկատմամբ համեմատելու է նախահայկական սեպագրաց Աքաոնէոը, զոր Վանայ լճին հիւսիսային արեւմտեան կողմերը փնտռելու է։ Կամ՝ Աքաէնէ Տոսպեան արձանագրութեանց Բէաէնաին՝ մէկ երկրորդական ձեւն է՝ ա յաւելուածով։

Հոմէլ Կիրինին անունը Հայոց Կարին գաւառին հետ կը նոյնացնէ. եւ Կարինն ալ Κορινέαյի (Ptol. V. 13) հետ նոյն կը համարուի։ Կարծեմ թէ Կարին-Κορινέα շատ հիւսիսային ըլլալուն՝ արձանագրութեան Կիրինիին հետ չի կրնար նոյն համարուիլ. այն ատեն աւանց դժուարութեան նոյն կրնար համարուիլ, եթէ Եդ. Մայէրի սա շատ անհաւանական կարծիքն ընդունուէր, թէ «վերին ծով» ըսուածը Սեւ ծովն է։

Նմանապէս Սամսիրաման Նայիրիի երկիրներուն մէկ երկայն ցուցակը կամ ցանկը յառաջ կը բերէ՝ անոնց իշխաններուն մէկտեղ։ Ահա.

Բաքարուրա՝ իշխանը Սիրաաշմէ, Հարմիշանդա՝ իշխանը Ամահար, Պարսանի՝ իշխանը Զարիշու, Հունդուր՝ իշխանը Զարիշու, Կիպաբարուտակա՝ իշխանը Սանաշու, Ուշտաշշա՝ իշխանը Արդարաա, Կինուկա՝ իշխանը Շումաա, Գինգիբիր՝ իշխանը Տաատաի, Արիմա՝ իշխանը Բիսիրաին, Կիպարուշա՝ իշխանը Պարուուշտա, Ուիլա՝ իշխանը Աշպաաշտատաուկ, Կինգիշտիլենզահ՝ իշխանը Ամամաաշ, Մասիրաուշ՝ իշխանը Տարսիհու, Լուկաա՝ իշխանը Մամանիիս, Գիմամա՝ իշխանը Զաանզար, Սիմգուրի՝ իշխանը Սիրաաշու, Աբդանա՝ իշխանը Գիիշտաա, Աստաի՝ իշխանը Ադադաանու, Գինհուհտու՝ իշխանը Ուրսի, Գինզինա՝ իշխանը Բաարա, Կինդուտաուշ՝ իշխանը Արուա, Կիբրու՝ իշխանը Գիիրնակուուշ, Զուզարուրա՝ իշխանը Զաբանու, Գինգիրդա՝ իշխանը Իրտիսատի, Տաւրլա՝

իշխանը Բաարգուտա, Նանի (?)՝ իշխանը Շուուա, Սատիրիա եւ Արտասիրարի։

Այս ամէն երկիրներուն մէջէն միայն Արմէ-յի եւ Տումմէ-յի տեղերը կարելի է քիչ մը ճշդել, ըստ որում այս երկու անունները ուրիշ տեղ ալ կը հանդիպին. բայց ասոնց վրայ տես վարը։ Ամէնէն վերջը յիշուած Սատիրիա եւ Արտասիրարի անունները հաւանականօրէն երկիրներու անուն են, որ նախնաբար տիրող հարստութեանց անունները կը ներկայացընէին։ Հմմտ. Հումրի, ապիլ Ադինի եւն։

Ասորեստանցւոց Նայիրի ըսելով իմացածը ամէն ժամանակ նոյն եղած չէ։ Տիգղաթպիղեսեր Ա. Նայիրի ըսելով Եփրատէն (Արղանիոյ հիւսիսային կողմէն) մինչեւ Ուրմիոյ լիճն եղած ամբողջ լեռնագաւառը կ'իմանայ։ Այնչափ որոշ չէ թէ ինչպէս հասկընալու է Ասուրնասիրպալայ արձանագրութեանց Նայիրին. Կիրհու, Նիրբու եւ Կաշիարի մերթ իբր Նայիրիի չվերաբերող երկիր կը ներկայացուին եւ մերթ Նայիրիի գաղափարին մէջ կ'ենթադրուին։ Սաղմանասար Բ. ամէն բանէ յառաջ՝ "Տիգրիսի ակեր" (Սեբէնէ-սուի) երկիրը Նայիրի կը նկատէ. ասկէ զատ թէ իւր եւ թէ Սարգոնի ժամանակ Նայիրի անունը կապուած է Հուբուշկիոյ հետ, այնպէս որ այս երկրին թագաւորը "Նայիրիի թագաւոր" կը կոչուի ուղղակի։ Շրադեր կը կարծէ թէ Հուբուշկիա միայն՝ նախնաբար Նայիրի կը կոչուէր եւ թէ Նայիրի անունը յընթացս ժամանակաց Հուբուշկիոյ հիւսիսային եւ հիւսիս-արեւմտեան կողմերը գտնուող երկիրներուն վրայ տարածուեցաւ։ Ես կը կարծեմ թէ ասոր բոլորովին հակառակ հետեւութիւնը կ'ելլէ արձանագրութիւններէն։ Առաջին թագաւորացատեն՝ Տիգղաթպիղեսեր Ա.էն մինչեւ Սամսիրամման Բ.՝ Նայիրի իւր մէջը շատ մ'ընդարձակ երկիրներ կը բովանդակէր. դեռ Տիգղաթպիղեսեր Գ.ի ատեն՝ Նայիրիի կուսակալ մը կը նստէր Կումմուի մօտերը

կամ լաւ եւս՝ ի Տուշհա։ Իսկ Սարգոն, որ մինչեւ յառաջացած էր դէպ ի արեւմուտք եւ հիւսիս, Նայիրի բառով միայն Հուբուշկիան կ'իմանայ. Տիգղաթպիլեսեր Ա.նոյ եւ Սամսիրամման Բ.ի՝ յիշած բազմաթիւ Նայիրեան երկիրներուն տեղ յայտնապէս անցած են բոլորովին ուրիշ իշխանութիւններ, բայց ի մասնաւորի հզօրն Ուրարտու։ Վերոյիշեալ թագաւորաց յառաջ բերած Նայիրեան երկիրներէն եւ ոչ մէկը կը տեսնուի Սարգոնի քով. Նայիրի անունը Հուբուշկիոյ սեփականուած էր կամ այս երկրին վրայ միայն ամփոփուած։

Ասորեստանի հիւսիսային կողմը գտնուող ամէն երկիրներուն՝ սկզբնաբար Ասորեստանցիներէն Նայիրի անուանուելուն յայտնի ապացոյց է Վանայ լճին “վերին ծով Նայիրեան երկրի” եւ Ուրմիոյ լճին[2] “վարի ծով Նայիրեան երկրի” կոչուիլը։

Վանայ լիճը պարզապէս “ծով Նայիրեան երկրի” ալ կը կոչուի։ Շրադեր “Ծով Նայիրեան երկրի” կոչուածը Ուրմիոյ լիճը կը համարի. բայց ինծի շատ աւելի հաւանական կ'երեւայ Ասորեստանցւոց՝ Նայիրիի երկիրներուն մէջտեղը գտնուող Վանայ լիճը՝ համառօտիւ Նայիրեան ծով անուանելը։ Նայիրեան ծովուն Վանայ լիճն ըլլալը լաւ կը յարմարի Սալմանասարի մէկ արձանագրութեան, ուր կը պատմուի թէ այս թագաւորն Ուրարտուէն եւ Նայիրեան ծովուն երկիրներէն դառնալէն ետքը՝ Գու(Կիր)զանի հարկն առաւ. ինքն այս պարագային մէջ Ուրարտուէն գալով եւ Վանայ լճին եզերքէն դէպ ի արեւելք՝ Ուրմիոյ լճին

---

1 Այս թագաւորը, եթէ (Sams. II, 35) “վեր Նայիրի երկիրն ըլլայ” խօսքը միայն Հուբուշկիոյ վրայ չառնուի, Նայիրիի մաս կը համարէր նոյն իսկ Պարսուան եւ Գիզիլբունտան։

2 Հմմտ. Schrader, Die Namen der Meere in den assyrischen Inschriften. Abhandl. d. Berl. Akad. d. Wiss. 1877, էջ 192։

Հիւսիսային եզերքը գնաց, ուր փնտռելու ենք Կիրզանը։

Ասորեստանեան սեպագրաց Նայիրիին կը համապատասխանէ վանեան արձանագրութեանց[1] Նար——ը, որ՝ ինչպէս գլխաւորաբար Կելիշինի սեպագիրը կը ցուցունէ, բոլորովին տարբեր է Բիայնայէն = Ուրարտուէն։ Սաղմանասար Բ. ալ որոշ կերպով կը զանազանէ “Տիգրիսի (այսինքն՝ Սուբնատի) աղբեր երկիրը„, որ է ըսել Նայիրին՝ “Եփրատայ աղբեր երկրէն„, որ է ըսել Ուրարտու։ Տարակոյս չկայ որ Նայիրիի մէկ մեծ մասը վերջէն Տուպեան իշխաններու պետութեանը հետ ձուլուեցաւ։ Ըստ այսմ Սարդուր Ա. ինք զինքը “թագաւոր Նայիրիի„ կ'անուանէ։ Լեման կը կարծէ թէ Ասուրնասիրպաղայ անյաջողութեանց գլխաւոր պատճառն այն էր որ Նախկին իրարու հետ լոկ դաշնակցութեան թոյլ կապերով կապուած Նայիրեան ցեղերու տեղ՝ Ասորեստանեայց դէմ իրապէս միացեալ պետութիւն մը գտաւ՝ յիշեալ Սարդուր Առաջնոյ իշխանութեան ատեն. այս պետութիւնը վերջէն Ուրարտեանց հոն գաղթելուն ատենը անհետ կորսուեցաւ։ Ինչպէս ըսինք, եթէ Նայիրեան երկրին մէկ մասն՝ Ասորեստանեայց յետնագոյն թագաւորներու ատեն պարզապէս Ուրարտուի մէկ մասն կը համարուէր, սակայն Նայիրի անունը երկայն ատեն իբրեւ Ուրարտուէ տարբեր անուն՝ մնաց Վանայ թագաւորաց իշխանութենէն անկախ մասին վրայ։ Շրադէրին ըսածը թէ Ասուրնասիրպաղայ եւ Սաղմանասար Բ.ի ատենները Նայիրի Ուրարտուի մաս կը համարուէր, կրնայ թերեւս առաջին թագաւորին ժամանակին համար մասամբ ճիշդ ըլլալ. իսկ Սաղմանասարի թագաւորութեան միջոցին նկատմամբ՝ ինչպէս վերն ըսուածներէն

---

1 Սէյս՝ Նարաս — Նայիրի “գետերու երկիր„ կը թարգմանէ։ Այս անուան սեմական ծագում ունենալը տակաւին որոշ չէ։

կ՚երեւայ՝ տարակոյս չկայ որ Նայիրի եւ Ուրարտու աշխարհագրօրէն իրարմէ բոլորովին անջատ գաղափարներ էին։

Մանրամասն խօսելու ենք «վերին ծովուն եզերքները՝ հեռաւոր թագաւորաց երկիրները [արշաւեցի]» խօսքին վրայ, վասն զի այս խօսքը — խաչ մեկնչաց — մեծ նշանակութիւն կամ կարեւորութիւն ստացած է՝ Նայիրիին դէպ ի հիւսիս տեղաւորուելուն կամ դրուելուն համար։ Մեկնութեան դժուարութիւնն ի մասնաւորի այն է, որ հոն կը պատմուի թէ Ասորեստանեայց թագաւորը 16 լեռ եւ Եփրատը անցնելէն ետքը՝ հասաւ Նայիրիի 23 թագաւորաց երկիրները, եւ թէ այս երկիրներուն մէջէն անցնելով հասաւ մինչեւ «վերին ծով»։ Ամենէն բնականն է Շրադէրի հետ «վերին ծովը» Վանայ լիճը համարելը։ Շրադէր[1] այս 16 լեռները Վանայ ծովուն արեւմտեան կողմը Մուրատ-չայի (որ սեպագրաց մէջ Եփրատ կը կոչուի) եւ Տիգրիսի մէջտեղ կը դնէ։ Ինչպէս մտադիր կ՚ընէ Բելք[2], որ այն կողմերը անձամբ ճանապարհորդած է ու լաւ կը ճանչնայ, Ասորեստանցւոց բանակ մը կրնար արեւմուտքէն կամ հիւսիսէն Վանայ լիճը գալ՝ Մշոյ եւ Մանազկերտի մէջտեղերը Մուրատ-չայի վրայէն, Գախաենիի մէջէն ու Սիփան-դաղի հիւսային կողմէն անցնելէն ետքը. Հոս նկատողութեան չի կրնար առնուիլ Դաւրէժ-խոյի (Բայազիտ) ճամբան՝ մեր առջեւն եղած դէպքին հետ առնչութիւն չունենալուն։ Թէեւ այսօր ալ, ինչպէս նաեւ հին ատեններն Ասորեստանէն ուղղակի հիւսիս՝ Հակիարիի անկոխ ու վայրենի լեռնագաւառին մէջէն նեղ արահետներ Վանայ ծովը կը տանին. բայց բացարձակապէս անկա-

---

1 Zur Geographie des assyrischen Reiches, Sitzungsber. der Berl. Akad. d. Wiss. 1890, էջ 328։

2 Zeitschrift f. Assyrologie, Հտ. IX, 350 եւն։

րելի է որ բանակ մը այս ճամբաներէն անցնիլ կարենայ։ Լեման[1] կողմնակից է Բելքի այս մեկնութեանց, որ Շրադէրի կարծիքը կը հաստատեն։ Եդ. Մայեր[2] "վերին ծով„ով Սեւ ծովը կը հասկընայ. այս մեկնութեամբ ըստ երեւութին որչափ ալ ամէն դժուարութիւնք՝ բայց ի մասնաւորի Եփրատէն անցնիլը՝ գոհացուցիչ կերպով կը մեկնուին, սակայն այս ենթադրութիւնը կամ կարծիքն ամենեւին հաւանական չէ. շատ անհաւատալի բան է, որ Ասորեստանեայց բանակ մ'այն վաղեմի ժամանակներն արեւմուտքէն արեւելք տարածուող լայն լեռնաշղթաներն անցած ըլլայ. եւ ո՛չ իսկ Սարգոն, որ դէպ ի հիւսիս-արեւելք ամէնէն աւելի յառաջացողն է, այսպիսի յետին սահմանի տաժանելի ճամբայ մ'ըրած է՝ թէեւ այսպիսի ճամբայ կամ չու մը բանակի մ'անկարելի չըլլայ. սա պարագան ալ կայ որ Տիգղաթպիղեսեր Ա.նոյ այս արձանագրութեան մէջ՝ այս մեծ ձեռնարկութեան վրայ քիչ մ'աւելի մանրամասն կամ ընդարձակ խօսուած ըլլալու էր, որ սակայն եղած չէ։ Բաց աստի Նայիրիի երկիրներուն մէջէն իբրեւ ամէնէն հիւսիսայինը կը յիշուի Դաիաենի, որ Մելիդի կից է, ըստ այսմ Սեւ ծովէն բաւական հեռու երկիր մըն է։ Շրադէր[3] մեծ ծանրակշռութիւն կը դնէ "մեծ„ վերադիրին պակսելուն վրայ, զոր Ասորեստանցիք Միջերկրական ծովուն ու Պարսից ծոցին առջեւը կը դնեն, ըստ այսմ "մեծ„ վերադիրը Սեւ ծովուն առջեւն ալ դրուած ըլլալու էր։ Տիլէ[4]՝ որ ի սկզբան անդ թէեւ ինչ ինչ վերապահութեամբ "վերին ծովը„ Վանայ լիճը կը համարէր, ի վերջոյ նմանապէս Մայերի ըմբռնման կողմն ան-

¹ Անդ, 353։

² Gesch. des Altertums I, 330; Liter. Centralbl. 1887, Nr. 3, սիւն 76։

³ Zeitschrift für Assyriologie, IV, 81.

⁴ Gesch. 163, 614.

յաւ։ Երրորդ հնարաւորութիւն մ՚ալ կը մնայ. այսինքն "վերին ծով" ըսուածով Միջերկրականը հասկընալ։ Հոմմէլ[1] այս կարծիքը կը պաշտպանէ։ Միայն թէ Եփրատէն անցնիլը 16 լերանց շատերէն անցնելէն յառաջ կը դնէ. բայց ներեա՞լ է արձանագրութեան յայտնի բնագիրն այս կերպով մեկնել կամ բնագրին մէջ յետեւառաջութիւն մուծանել։ Ցամենայն դէպս շատ դժուարըմբռնելի է թէ ինչպէս կրնային Նայիրիի տէրութիւններն, այնպիսի արեւմտեան երկիրներու մէջ Ասորեստանեայց թագաւորին դիմացն ելլել, նա մանաւանդ երբ աչքի առջեւ բերուի, որ Նայիրիի տէրութիւններուն մէջ Ուրմիոյ լճին մօտերն գտնուող երկիրներ ալ կան, որ իրենց բանակները տուած են։ Աւելի ընդունելի կրնայ ըլլալ Վինքլէրի[2] կարծիքը՝ որ վերին ծովով Միջերկրականը հասկընալու դէպքին համար կ՚ըսէ թէ Տիգղաթպիղեսեր անարգել մինչեւ Միջերկրական յառաջացաւ եւ ետքէն հիւսիսային արեւելք դարձաւ, որպէս զի "Նէ-ոխօէն Եփրատն անցնի եւ ձախ եզերքը՝ Վանայ լճին մօտերը՝ դաշնակիցները խորտակէ։" Բայց որովհետեւ Տիգղաթպիղեսերայ արձանագրութեան IV, 99 տեղն եղածը միայն Վանայ ծովուն համար կրնայ ըլլալ, ուստի Վինքլէր շատ մէտ է IV, 50 գտնուածն ալ Վանայ ծովը հասկընալու։ Վինքլէր ալ "վերին ծովուն" Սեւ ծովն ըլլալը բացարձակապէս չ՚ընդունիր։

---

1 Gesch. 528 եւ 526, ծան. 2։

2 Gesch. 331 եւն, ծան. 36։

# Բ.

## Վանայ ծովուն արեւմտեան ու հարաւ-արեւմտեան կողմերը գտնուող երկիրներ:

### 1. Բīթ-Զամանī, Շուպրիա (Ուուրէ?), Նīրդուն, Ուրումէ:

Ա. Բīթ-Զամանī: Համառօտիւ սա կերպով է, որ այս երկիրն Ասուրնասիրպալայ եւ Սալմանասար Բ.ի քով կը յիշուի: Ասուրնասիրպալ իւր թագաւորութեան երկրորդ տարին Տուշհայի մէջ ինչպէս Զամանիի իշխանին, նոյնպէս եւ Շուբրիայ, Նիրդունի եւ Ուրումէի տէրութեանց հարկը կ'առնու: Երեք տարի ետքը՝ Տուշհայէ Բիտ-Զամանիի վրայ կը քալէ, որպէս զի պատժէ այն տեղուան "աւագները„, որ իրենց իշխանէն ապստամբելով՝ զանի սպանած էին: Սակայն ապստամբներու կողմանէ արագօրէն տրուած առատ տուրք կամ հարկ մը զինքը մեղմացուց: Զամանիի սպանուած իշխանն Ամմէբաʾլա[1] կը կոչուէր: Հաւանականագոյնս ասոր յաջորդն է Իլանի ապիլ Զամանի: Ասուրնասիրպալ՝ Արտէանուն իւր ապստամբ եղբօրը՝ Բուռամանուի տեղ ցեղապետ կարգած էր. արդ՝ չի գիտցուիր թէ Արտէանու կախում ունէ՞ր Իլանիէ թէ անկախ կ'իշխէր քաղաքային իշխանութեան մը՝ ըսենք Սինաբույի վրայ, որուն կ'իշխէր կ'երեւայ թէ իւր Բուռաման եղբայրը:

Հետաքրքրական է հարկ տրուած առարկաներուն ցանկը, որ Արամէացի գաղթականներէ բնակեալ երկրին քաղաքակրթութեան՝ համեմատաբար բաւական բարձր ըլլալը կը ցուցընէ: Այսպէս է ցանկը կամ ցուցակը. "Անօթ (?), զօ: ւոց եւ ձիոց կազմած, անոր կառքի ձիերէն 460, 2 տա-

---

[1] Բաʾլա տարակոյս չկայ որ בַּעַל է. Հմմտ. Ամմիպաʾլի եւ Ամմաբաʾլի ձեւերն ալ:

ղանդ արծաթ, 2 տաղանդ ոսկի, 200 տաղանդ կապար, 100 տաղանդ պղինձ (անագապղինձ ?), 300 տաղանդ երկաթ, 100 պղնձէ աման, 3000 պղնձէ տապակ (սկահակ, կաթսայ), 1000 զգեստ՝ գոյնզգոյն գործուած եւ կէրպաս (բուսած) նիւթէն զգեստներ, . . . փայտէ սկաւառակներ, անկողնոյ փղոսկրեայ կազմած՝ ոսկւով գործուած, անոր պալատին գանձը, 2000 արջառ, 5000 ոչխար, անոր կինը՝ ճոխ օժտովը, անոր մեծամեծներուն աղջիկները՝ իրենց մեծահարուստ օժտովն առի եւ։„ Արտէանուէ առնուած հարկն էր "2 մնաս ոսկի, 13 մնաս արծաթ, 1000 ոչխար, 2000 . . .։„ Ասուրնասիրպալ իւր թագաւորութեան 18ᵉ տարին անգամ մ'ալ Բիտ-Զամանի եկաւ։ Տե՛ս վարը Դամդամուսայի մէջ։

Ասուրնասիրպալէն զատ՝ ի մասնաւորի Սաղմանասար Բ. ալ Բիտ-Զամանի մտած է։ Սաղմանասար Բ. իւր թագաւորութեան երրորդ տարին Բիտ-Ադինիէ, աւելի որոշ՝ Պիտրուէ նախ եւ յառաջ Սումու երկիրն եկաւ եւ այս երկրէն Բիտ-Զամանի իջաւ։ Իւր այս ուղեւորութեան ատեն կարգաւ շօշափեց Նամդանուն, Մէրհիշուն, Իշուան (Էնզիտէ)։ Թագաւորութեան 27ᵉ տարին Սաղմանասարի Դայան-Աշուր սպարապետն Ուրարտու արշաւած ատեն՝ Բիտ-Զամանիէ կ'անցնի, ուր "կ'իջնայ՝„ դէպ ի Արսանիա, զոր կ'անցնի՝ Ամմաշտուբիի կրճէն։

Ապահովապէս Բիտ-Զամանիի կը վերաբերէին Ամեդի, Դամդամուսա, Սինաբու եւ Տիդու քաղաքները։

Ամեդ։ Ասուրնասիրպալ Դամդամուսայէն Ամեդի քաղաքը կը հասնի, որուն համար կ'ըսէ թէ Իլանի ապիլ Զամանիի նստած քաղաքն է. Ամեդիէ Ալլաբրայի Կաշիարիին կիրճերը մտաւ։ Սամսիրաման Դ.՝ զԱմեդի առաւելապէս ասորեստանեայ այն 27 քաղաքներուն ցուցակին մէջ կը յիշէ, ո-

րունք իւր հօրմէն՝ Տաղմանասար Բ.էն — յամենայն դէպս անոր մահուընէն ետքը — ապստամբած էին եւ զօրունք ինքը դարձեալ իւր իշխանութեան տակ նուաճած էր։ Ամեդի՝ Ասորեստանեայց պետութեան այն արտօնեալ քաղաքներէն մէկն էր, որոնց քաղաքապետները կամ իշխանները իրաւունք ունէին՝ տարին պաշտօնապէս իրենց անուամբն անուանելու. այս իրաւունքը կամ արտօնութիւնն ընդունած են՝ ինչպէս կ'ապացուցուի, 800, 762, 726 եւ 705 տարիները։ Ամեդի՝ նոյն է դասականաց (Ամմ. Մարկ. ԺԸ, 9, 1 եւ 2, ԺԹ, 2, 14, որ դիրքը կը նկարագրէ, Պրոկ. վասն Պարսկ. պատ. Ա. 7 եւ Պրոկ. վասն շին. Գ. 1. Փաւստ. Բիւզ. Դ, 24) Ամիդ քաղաքին հետ, որ Հարաւային Հայոց Սոփենէ կամ Սոփանէնէ իշխանութեան մայրաքաղաքն էր։ Ամիդ ի վեր քան զամենայն՝ Կոստանդիանոս կայսեր ատեն ընդարձակուելովն ու ամրացուելովը եւ Հռովմայեցւոց Միջագետք նահանգին մայրաքաղաքն ըլլալովը հռչակ առացաւ։ Այսօր Տաճիկներէն Կարա-Ամիդ, իսկ Արաբացիներէն գրաւուելէն ի վեր սովորաբար Դիար-Բեկր կը կոչուի՝ շինուած ըլլալով Տիգրիսի վրայ՝ սեւ ժայռի մը գագաթը։[1]

"Ամիդ آمد, امر քաղաքին՝ նահանգին անուամբը՝ Դիարբեկր دیار بکر կոչուիլը բոլորովին նոր է։ Չեմ յիշեր Դիարբեկր անունն արաբական գրքի մը մէջ գտած ըլլալս, մինչ امد անունը շատ անգամ կը յիշուի։ دیار بکر իբր նահանգի անուն արաբացի մատենագրաց քով շատ սովորական է։„ Նէօլդէքէ։

Դամդամուսա։ Ասուրնասիրպալ իւր թագաւորութեան երկրորդ տարին Սուբնատի աղբիւրներէն՝ Իշալլայի եւ Կինաբուի վրայէն Դամդամուսա

[1] Հմմտ. Kiepert, Lehrbuch էջ 79. Baumgartner առ Pauly-Wissowa, I, սիւն 1833.

կ՚արշաւէ, ուր քաղաքը մոխիր կը դարձընէ եւ տանջանօք ապաննել կու տայ այս կողմերու ապստամբ Ասրեստանցիներուն Հուլաի անունով առաջնորդն եւ քաղաքապետն, որ այս արքունական քաղաքը նուաճած էր։ Ասուրնասիրպալ երեք տարի ետքը՝ դարձեալ Բիտ-Զամանի եղած միջոցին՝ Նայիրի ժողվուած ցորենեղէնի շտեմարան կ՚ընէ չորս քաղաք, որոնց մէջն է Դամդամուսա. այս քաղաքը՝ մի եւ նոյն ժամանակ՝ Շուպրէի հարկն ալ կ՚առնու։ Վերջապէս Ասրեստանեայց թագաւորն իւր իշխանութեան 18դ տարին՝ Ամիդանի բռուած լեռներուն կրծերէն ու Բարզանիշտուն վրայէն մեր քաղաքը կ՚արշաւէ, որ Իլանի իշխանին ամրոցն էր. այս ամրոցին վրայ յարձակում ըրած ատեն՝ թշնամիներէն 600 հոգի կը մեռնին. 3000 բնակիչ ու 400 զինուոր Ասրեստանեայց ձեռքը գերի կ՚իյնան։

Սինաբու։ Սալմանասար Ա.՝ Նայիրիի իշխաններուն յարձակմանցը դէմ իբր պատնէշ շինած էր Սինաբու եւ Տիդու բերդերն, որոնք յընթացս ժամանակաց դրացի Արամէացւոց ձեռքն ինկած էին. Ասուրնասիրպալ այս բերդերը նորէն ետ առած էր։ Սինաբուի վրայ՝ Բուռամանի տեղ ցեղապետ կարգուեցաւ Արտէանու։ Տարակոյս չկայ որ Սինաբու նոյն է կտրած-կոթող ըռուածին վրայ գտնուող Շինամուի հետ, ուր պատերազմած է Սալմանասար Ա.։ Մեծ տարեգիր - արձանագրութիւն ըռուածն նոյն քաղաքը Կինաբու անուամբ յառաջ կը բերէ, զոր եւ Ասուրնասիրպալ կ՚առնու, վասն զի վերոյիշեալ Հուլաիի ամրոցն էր. այս ամրոցին առման ատեն սրահար կը մեռնին ամրոցը պաշտպանողներէն 600 հոգի եւ 3000 հոգի ալ գերի իյնալով՝ Ասրեստանցիներէն կ՚այրուին։ Սինաբու, Տիդու, Դամդամուսա եւ Տուշհա շտեմարան եղան, ուր կը հաւաքուէին Նայիրիէ առնուած բերքերը։ Asurn. I., 106ին նայելով՝ Սինաբու կաշիարիլերանց մօտերն է։ Թերեւս Կինաբու-Սինաբուի

Հետ համեմատելու է այսօրուան Կիարբին՝ Տիգրիսի վրայ՝ Դիարբեկրի հարաւային կողմը։

Շատ բանաւոր գործ կատարած կ'ըլլանք՝ Բիտ-Զամանիի կցելով Ասորեստանեայց Տուշհա կարեւոր քաղաքը, որ գլխաւոր ամրութիւնն էր՝ Նայիրի բռնուած երկիրները պահելու։ Տուշհա եւ Տուշհան ձեւերուն իրարու հետ ունեցած աղերսին մասին՝ հմմտ. Զաբա եւ Զաբան, Սուսա եւ Շուշան, Շուշուն ձեւերը։ Եղամացիք Պարսկաստանը՝ Պարշա եւ Պարշին կ'անուանէին, հին պարսիկ Ռագայի տեղ Ռակհա եւ Ռակկան կը գործածէին.[1] Նման դէպքերը տես վարը Եղամունի անուան տակ։ Օտար յատուկ անուններուն գրութեան մէջ տեսնուած այս անճշդութեան ոչ այնչափ Ասորեստանցիները պատճառ համարելու է թերեւս, որչափ այն պարագան որ՝ ինչպէս կ'երեւայ, եղամեան լեզուն եւ հիւսիսային կողմերուն ազգաց՝ շատ գլխէ առնեալ եղամերէնի մերձաւոր գաւառաբարբառները (Յէնսէն, անդ էջ 376. "Եգէական-զագրեան„ լեզուաց մէջ) տեղւոյ եւ երկիրներու անուանց վրայ ըստ կամի կրնային Ն (Նա, Նու) մ'աւելցընել։ Տուշհայի սեպագրաց մէջ յիշուելուն գալով՝ միտ դնելու է հետեւեալներուն. Ասուրնասիրպալ թագաւորութեանն երկրորդ տարին Նիրբուէ ճամբայ կ'ելլէ դէպ ի Տուշհա, որ բաւական ինկած էր։ Քաղաքը նորէն ծաղկեցընելու համար՝ պարսպով մը կը պատէ եւ մէջն արքունական դղեակ մը կառուցանել կու տայ, որուն դրսի պատերուն վրայ Ասորեստանցիներուն Նայիրիի մէջ գործած արութիւնները սեպագիր կը քանդակուէին. իսկ դղեկին ներսը՝ թագաւորին դէմ ըռուած սպիտակ քարէ պատրաստուած անդրին դրուեցաւ։ Ինչպէս արդէն ակնարկեցինք, Տուշհայի մէջ շինուեցան մեծամեծ շտեմարաններ՝ շրջակայից ցորենն ընդունելու.

---

1 Հմմտ. Յէնսէն, Zeitschr. f. Assyriologie X, 375.

Աշուրնասիրպալ երկրորդ տարին այստեղ կը կուտէ «Նիրբուի ցորենեղէնն ու յարդը» եւ նմանապէս հինգերորդ տարին «Նայիրի երկրին հունձքը։»[1] Տուշհա այն տեղն ալ է, ուր կը ղրկեն իրենց հարկը մերձաւոր գաւառները. այսպէս՝ Նիրբու, Բիտ-Զամանի, Շուպրիա, Նիրդուն, Ուրումէ։[2] Երկրորդ անգամ Նայիրի արշաւած ատեն՝ Նիրդունի Մադարայէն Տուշհա կը հասնի. ետքը Տուշհայէն՝ Տիգրիսն անցնելով եւ գիշեր մը ասպինջ չու կատարելով՝ Դիռայի Պիտուրան կը հասնի։ Ինչպէս Ամեդիի, նմանապէս Տուշհայի կուսակալներն իրաւունք ունէին՝ իրենց անուամբը պաշտօնապէս տարին կոչելու. վաւերական գրութիւնք կ՚ապացուցանեն որ այսպէս կոչուած են 795, 764, 728 եւ 707 (վերջին թուականս՝ ըստ II R 69) տարիները։ Աշխարհագրական ցանկն ալ Տուշհա(ն) քաղաքը կը յիշէ։ Այնտեղ Տուշհա մէկ կողմանէ Սուդայի եւ մէկալ կողմանէ Գուզանայի, Նասիբինայի (Նիսիբիս = Մծբին) մէջտեղն է։

Բ. Շուպրէա (Ուպրէ)։ Knudtzonի հրատարակած բնագիրներուն մէջ հանդիպած ձայնական գրութիւնն ապահովցուցած է Շուպրէ(ա) ընթերցումն եւ այլ եւս մէկ կողմն թողլու է մինչեւ հիմայ տիրող Ուպրէ ընթերցումը։ Շուպրէ(ի՚)ի եւ Շուպրիայի համար հմմտ. Հուբուշկա եւ Հուբուշկիա, Բիտ-Բառու եւ Բիտ-Բառուա, Արաշտու եւ Արաշտուա, Ասու եւ Սուա (տես վարը՝ Կիրզանի մէջ),

---

[1] III R 6, 47. Asurn. II, 118 կ՚աւելցնէ «ցորենեղէնն ու յարդը՚»

[2] շարրանի շա մատատի-Նաիրի (Asurn. II, 13) յաւելուածն ամենէն լաւն է այսպէս թարգմանել. «4 թագաւորք Նայիրեան երկիրներուն», ուր շա նշանը 4 կը նշանակէ. ատոնց մէջն են յիշեալ 4 տէրութիւններն, որոնք՝ ինչպէս Asurn. II, 1 տեղեկութենէ կը տեսնուի, Նայիրիի մաս կը համարուին։

Հառանա եւ Հառանիա, Հումրի եւ Բիտ-Հումրիա ձեւերը։ Knudtzon (Gebete an den Sonnengott, էջ 152) խնդիր կ'ընէ թէ արդեօք Շուպրիա՝ Շուպրիայի արամէական՞ն հնչումն է։ Վերջինս Բաբելական ժամանակագրութեան (B, col. IV, 20) մէջ կը յիշուի (matŠup-ri-ṣa-ai գրուած)։

Արդէն Սաղմանասար Ա. Շուպրիայի մէջ պատերազմելու առիթ ունեցած է։ Ասուրնասիրպաղայ ատեն՝ Շուպրիայի լեռնադաւառը Բիտ-Զամանիի ապստամբեալ Ասորեստանցիներուն ապաստանարանն եղած է։ Ասուրնասիրպաղ այս ապստամբ Ասորեստանցիները դարձեալ Տուշհա բերած է եւ հոն բաց ի Զամանիի, Նիրդունի եւ Ուրումէի հարկերէն՝ առած է եւ Անհիտէի[1] հարկն (Անհիտէ ընթերցուածն ալ կայ), որ ի Շուպրիա։ Նմանապէս Շուպրիա՝ նոյն թագաւորին իշխանութեան հինգերորդ տարին՝ իւր հարկը տուաւ, որ էր (ըստ III R 6, Rev. 52) “արծաթ, ոսկի, պղինձ.... կապար, երկաթ, —?—, անօթ, արջառ, ոչխար, ձի„...։ Սաղմանասար Բ. ի ժամանակին ալ Շուպրիայի մէջ Ան(կամ Իլու-)հիտէ անունով իշխան մը կ'իշխէր, թերեւս Ասուրնասիրպաղայ ատեն իշխողը։ Սաղմանասար իւր թագաւորութեան հինգերորդ տարին՝ Կաշիարիի լեռները գացած ատեն՝ Անհիտիի ամուր քաղաքները նուաճեց։ Վինքլէր այս արձանագրութեան վրայ գրածին մէջ Ašur-it-ti-še-ru-ri-ai կը կարդայ. եւ “Ասուր՝ Շէրուաիի ամուսինը՝ հովիւս է„ կը թարգմանէ. հոս še նշանի տեղ՝ շատ դիւրաւ mata “երկիր„ նշանը կրնայ դրուիլ, որ առաջինէն շատ քիչ բանով կը տարբերի. այս փոփոխութեամբ վերի, յամենայն դէպս աւելի ընդունելի իմաստը յառաջ կու գայ։ K 4268ի (Knudtzon, Nr. 48) մէջ կը վախցուի Գիմմիրէացւոց Շուպրիայի վրայ ընելի յարձակումէն։

---

1 Կամ՝ Իլուհիտէ։

Եթէ Բաբելական ժամանակագրութեան Շուպրի-
ան՝ Շուպրիայի հետ նոյն է, այն ատեն այսպէս
մտածելու ենք. Ասարհադդոնի ատեն՝ Գիմմիրեա-
ցիք Ասորեստանցւոց ձեռքէն Շուբրիա երկիրն
առին, սակայն Ասորեստանեայց նոյն թագաւորը
դարձեալ ետ առաւ: Շուպրիայի կը վերաբերէին
Ս՚ու-րու-րէ, Բու-մու- (որ Շուպրիայի հետ մէկտեղ կը
յիշուի, զոր եւ Knudtzon Ո-բբու-ու-մմէի հետ նոյն կը
համարի՝ ապահով առանց սխալած ըլլալու վտանգի)
եւ Կուլլամմէրի (Կուլլիմմէրի) քաղաքները: Ասուր-
բանիպալայ ատեն՝ Ասորեստանեայց Ուբբումէ եւ
Կուլլիմմէրի քաղաքներուն վրայ քալեց Անդարիա,
որ Լուբդիի կուսակալն էր: Նոյն քաղաքներուն
բնակիչները զԱնդարիա եւ անոր մարդիկը սպան-
նեցին: Ըստ այսմ Լուբդի՝ Շուպրիայի սահմանակից
երկիր մը պիտի ըլլայ: — "Ռամմանիբարի Ա. կը
պարծի, որ "նուաճած է Լուբդի եւ Ռապիկու
թշնամի երկիրները մինչեւ... (ղ-խ--): Համա-
ժամանակեայ պատմութեան համաձայն՝ Տիգղաթ-
պիղեսեր Ա.՝ Ակատասալլուէ մինչեւ Լուբդի, Սու-
հիէ մինչեւ Ռապիկի եղած երկիրները նուաճած
է: Վերջապէս Սամսիրաման Բ.ի քով՝ գրեթէ
միայն բուն Ասորեստանի մէջ գտնուող քաղաք-
ներու եւ նահանգներու ցուցակին մէջ կը հան-
դիպի Լուբդի՝ Զաբանի եւ Ըռապհայի մէջ: Բայց
որովհետեւ Ռապիկու հարաւային Բաբելաստանի
մէջ է, ուստի եւ յայտնի է որ Լուբդին ընդ-
հականակն հիւսիսային կողմը փնտռելու ենք՝ ան-
միջապէս Ասորեստանի մօտ: Ի սկզբան կը կարծէի
թէ Շուպրիոյ Լուբդիէն տարբեր համանուն եր-
կրորդ երկիր մ'ալ ընդունելու եմ եւ այս պատ-
ճառաւ ալ նոր ի վկայութիւն կոչուած երեք
տեղերը (Zeitschrift für Assyriologie XIII, 78)
նկատողութեան չէի առած. սակայն Լուբդի
անուամբ միայն մէկ երկիր ընդունելով ալ կարելի
է մէջէն ելլել. Սամսիրամանի յիշեալ ցանկին մէջ

ուրիշ արեւմտեան տեղեր ալ կան, զ. օ. Համատ եւ Ամեդի։ Այս ցանկին մէջ աշխարհագրական որոշ կարգ մը չէ տեսնուիր։ Նմանապէս Վինքլէր (Altorient. Forsch. 2. Reihe, Հտ. I, 47) միայն մէկ Լուբդի կ'ընդունի եւ զայն կը դնէ այն երկիրն, որ վերին Տիգրիսի եւ Եփրատայ, Մասիոս լեռան ու անոր արեւմտեան շարունակութեան մէջտեղերը կը տարածի։

"Շուպրիա երկիրը"[1] Վինքլէրի (Altorient. Forsch. 2. Reihe, Հտ. I, 28 եւն) տառադարձութեամբ հրատարակած բնագրին մէջ ալ (K 2852 + K 9662) mat Šup-ri-a գրուած է։ Այս արձանագրութիւնը կը պատմէ թէ ասորեստանցի եւ ուրարտեան հպատակներ Շուպրիա փախան. Շուպրիոյ իշխանն երեք անգամ փախստականները յանձնելը զլացաւ, որուն հետեւութիւնն եղաւ Ասորեստանցւոց Շուպրիոյ վրայ բանակ խաղելը։ Ասարհադդոնի ատեն տեղի ունեցած այս արշաւանքը Վինքլէր (անդ 46) մեծ յաջողակութեամբ կը նոյնացնէ այն արշաւանքին հետ, զոր Բաբելական ժամանակագրութիւնն Ասարհադդոնի թագաւորութեան ութերորդ տարին դէպ ի Շուպրիսաի եղած կը դնէ։ Սուպրիսաին փոխանակ Շուպրիայի արամէական հնչումը համարելու՝ լաւագոյն է Վինքլէրի հետ սխալ գրութիւն կամ ճշդագոյնս գլխաւոր տառին կամ գլխաւոր տառերուն անորոշութենէն յառաջ եկած սխալ ընթերցում համարելը։ Յիշեալ արձանագրութեան մէջ Շուպրիոյ ապստամբ իշխանին անունը չէ յիշուիր. այս իշխանին երկու որդւոցն անունները միայն մնացած են՝ եւ այն աղճատեալ միայն, այս անուններն են

[1] Սաղմանասար Բ.ի արձանագրութեանց Amiaudէ եւ Scheilէ ի լոյս ընծայուած հրատարակութիւնը վերջերս ընդունելով՝ կը տեսնեմ որ հոն ալ Ob. 53ի [cuneiform sign] ը [cuneiform sign] սրբագրուած եւ Ռու-րի-աի կարդացուած է։

Շէ-էր-էօ(?)-? . . . եւ Էն-գէ-տէ-շօ-օ-ք. երկրորդ անուան վերջին մասէն (տէշօ-ք) Վինքլէր ըստ իմ կարծեացս շատ յանդուգն սա եզրակացութիւնը կը հանէ թէ՝ այն ատենուան տիրող ազգաբնակութիւնը ուրարտեան էր։ Իշխանանիստ քաղաքն էր Ո-քք-ո-մե. «իւր արքունական քաղաքն ահագին ժայռի մը վրայ էր՝ նման ամպի։» Ամենէն բանաւոր ընթերցուածն է Ուքքումէ (կայ եւ Քումու), եւ ոչ թէ Ուպպումէ (այսպէս Rost, Untersuch. z. altorient. Gesch. 91)։ Անոր համար դժուարին է Ռոստի (անդ) հետ Ուպպումէ անուան եւ Մարաց Ո-պո-մո իշխանին անուան մէջ այն աղերսը դնել, որ կայ Մարաց Պարտակկա եւ Պարտուկկա երկիրներուն անուանց մէջ, վասն զի այս անունին տարակոյս չկայ որ երանեանէ տարբեր լեզուախմբի մը կը վերաբերի։ Այլուստ ծանօթ Կո-ւլ-մեր քաղաքն ալ կը յիշուի. անկարելի է Վինքլէրի հրատարակած արձանագրութիւնն աչքի առջեւ ունենալէ ետքը՝ Կուլիմէրը Մարաց սահմաններանց մէջ դնել (ինչպէս կ'ընէ Ռոստ, անդ 90)։ Իլիմմէր թերեւս գրութեան սխալ է փոխանակ Կուլլիմէրի։ Ուրիշ տեղ չեն գտնուիր Շուպրիոյ սա երկու քաղաքներուն անունները, զորոնք նոյն արձանագրութիւնը կ'ընծայէ. Մոըչո-հո եւ Կո-լ(?)-քո։» Ո-ղչէյէ+ է- յո-էյէ+։

Գ. Նէրդո-ն։ Ասուրնասիրպալ (թագաւորութեանն երկրորդ ու հինգերորդ տարիները)՝ Նայիրիի դէմ ըրած երկու մեծ արշաւանքներուն ատենը Նիրդունի հարկը կ'առնու, առաջին անգամ Տուշհայի մէջ՝ Բիտ-Զամանիի, Շուպրիայի, Ուրումէի հարկերուն հետ, երկրորդ անգամ դարձեալ Տուշհայի մէջ՝ միայն Նիրդունի հարկը կ'առնու, որ էր «Ձի, ?, պղնձէ անօթ, պղնձէ ?, արջառ, ոչխար, գինի։» Ասուրնասիրպալ իւր երկրորդ արշաւանքին ատենը Կաշարի լեռներէն, այսինքն Հարաւ-

արեւելքէն Նիրդուն մօտաւ։ Կը պարծի 60 քաղաք, ամէնքն ամուրիկ ամրոց՝ "յոտս Կաշիարիի" աւերած ըլլալուն վրայ։ Այս երկրին իշխանն էր Լադտուրի՝ Տուբուսի Հարատութենէն։ Թէ ինչպէս Հարատութեան անունն անխտիր երկրին անուան տեղը կը գործածուէր, ի մասնաւորի յայտնի կը տեսնուի Asurn. III, 110 էն, ուր միայն տղէլ Տօ-Ջօ-օջ բացատրութիւնը կայ։ Ասորեստանցւոց թագաւորը՝ երրորդ անգամ մ'ալ Նիրդուն մօտած է՝ Կաշիարի լերանց կրճերէն գալով։ Կարելի է թէ Նիրդուն անունը մնացած է մինչեւ այսօր Միրդոն ձեւին տակ. Միրդոն փոքրիկ քաղաք մըն է Տիգրիսի Հարաւային եզերքին վրայ՝ Բոտման-սուի Տիգրիս թափուած տեղը. դիրքն ալ շատ կը յարմարի այն տեղւոյն, ուր ենթադրելու ենք Նիրդունը. Մի եւ Նի փոփոխութիւնը չտեսնուած բան չէ. Համմտ. Միկտիարա եւ Նիկդիարա ձեւերը։

Նիրդունի Հետեւեալ տեղերուն վրայ ծանօթութիւն ունինք. Մօդօրօ։ Այս տեղն իբր սաստիկ ամուր, չորեքպատիկ պարսպով շրջապատուած ամրոց կը նկարագրուի։ Թէեւ Ասորեստանեայց թագաւորը նոյնը յարձակմամբ առնլով՝ իրեն Հպատակ կառավարիչ (ա-շ-ա-ա-ա[1]) մը դրաւ վրան։ Թերեւս Մադարա նոյն ըլլայ այսօրուան Մաթրային Հետ, որ Միրդոնի Հարաւային կողմն է։ Նմանապէս Ո-դ-օ ալ ամրութիւն է, որուն առման ատեն քաղաքին պատերազմողներէն 1450 + .... Հոգի մեռան. 580 զինուոր եւ 3000 Հոգի ալ բնակիչներէն գերի իյնալով՝ անլուր տանջանքներով սպաննուեցան։ Այս տեղը Կաշիարի-կրճերուն մօտերն է։ Նիրդունի կը վերաբերի Հաւանականագոյնս Շէ(Նէ)կէշօ քաղաքն ուր մօտաւ Աշուրնասիր-

1 Պաշտօնէից տրուած այս տիտղոսը միայն Աշուրնասիրպալայ արձանագրութեան մէջ կը գտնուի եւ այն ալ՝ յատկապէս Նայիրիի մէջ պաշտօնավարող կառավարիչներուն Համար։

պաղ Կաշիարի լեռներէն անցնելէն ետքը՝ Մադարա չմտած։

Դ. Ու–րու–մ։ Տիգղաթպիլեսեր Ա. կասկեացւոց, Ուրումէացւոց եւ Հատեան զինուորաց[1] յաղթեց, որ Շուբարի ըսուած երկրին քաղաքները գրաւած էին. 120 կառք՝ անոնց կազմածովն ու ձիերովն աւար առաւ. իւր չուն Կումմուհի վրայ ուղղեց։ Ուրումէի եւ անոր նիզակակիցներուն հանդիպելէն յառաջ՝ իւր բանակին մթերանոցներն ու օթեւաններն էին Շուբարի, Ալզի եւ Պուրուկուզզի։ Ասուրնասիրպաղ՝ իւր իշխանութեան երկրորդ տարին՝ Ուրումէի[2] հարկը՝ Բիտ-Զամանիի, Շուպրիայի եւ Նիրդունի հարկերուն հետ մէկտեղ Տուշհայի մէջ առաւ։

Շրադէր (KGF 226) Ուրումէի հետ նոյն կը համարի, թէեւ ոչ հաստատուն կերպով, Պտղոմէոսի (V, 15) *Οὔριμα*՝ հարաւային Եփրատայ վրան, եւ Օր–ւ–մ ամրոցը (Հռոմկլայ) Բիրէճիկի մօտերը (Chesneyի աշխարհացոյց տախտակին վրայ)[3]։ Եէնաէն

---

1 KB I, 23 թարգմանուած է "4000 մարդ կասկեացի եւ Ուրումէացի ի Հատեանց։"

2 Այստեղ Ուրումէ անուան քով գտնուող լա բիտանէ յաւելուածը դեռ գոհացուցիչ կերպով մեկնաբանուած չէ. հմմտ. նաեւ Asurn. I, 59; II, 13; 112; 122; 129 Salm. Balaw. II, 2.

3 Ո–ղլէլէ+ի եւ յա–եւլլէ+ի մէջ կը կարդանք. Նէօլդէքէ. "Շատ աւելի հաւանական է Ուրումէն Շրադէրի հետ *Οὔριμα* մեկնելը. այս տեղը շատ անգամ կը հանդիպի յունական, նմանապէս ܐܘܪܝܡ եւ أُورم (Եակուտ եւն) ձեւերով։ Բնականաբար Հռոմկլան ասոր հետ առնչութիւն չունի. վասն զի Հռոմկլան է = قلعة الروم (կղյատ էր-րում), ասորերէն ܩܠܥܐ ܕܪܗܘܡܝܐ եւ նման՝ դեռ այսօր տաճկերէն է قلعه روم կամ روم قلعه‌سی։" — Վինքլէր (անդ I, 548) Kaskâia Urumâiaէ ետքը դրուած sabê hattêն չուզեր իբր յատուկ անուն առնուլ, այլ իբր հասարակ

ալ Տարկուտիմմէ ըսուած կնքոյն գրութեան մէջ (Հմմտ. ZDMG 48, 260 եւն) գտնուած Էրմէ կամ Ուրմէ երկիրն տարբերաձեւայ արձանագրութեանց Ուրումէին կը նոյնացընէ (WZKM X, 8). ենթադրութիւն մը, որուն դէմ ծանրակշիռ առարկութիւն մ՚ընել կարելի չէ։ Ես կը կարծեմ թէ Ուրումէացիք ապահովապէս Արամէացւոց հետ նոյն են եւ կը ներկայացընեն '' Եփրատայ ու Տիգրիսի երկայնութեամբն Եղամացւոց սահմաններուն վրայ ու բուն Միջագետքի ներսերը բնակող վաչկատուն Արամէացւոց ամէնէն հարաւային մէկ ցեղը։ Կարաճա-դաղի եւ Տուր-Աբդինի լեռնաշղթաներն առնց սահմանը կը կազմէին հիւսիսային կողմանէ՝ Նայիրիի դէմ։ Ուրումէ Եփրատայ արեւելեան կողմն է, գրեթէ Ամդայ հիւսիս-արեւմուտքը՝ լաւ պատըսպարեալ դաշտի մը վրայ, ուր ապահով արամէացի գաղթականք բնակութիւն հաստատած են. սեպագիրները չեն գիտեր Եփրատայ արեւմտեան կողմն՝ Արամէացի ըլլալը։ Գալով Ուրումէ, Արումու, Արիմու, Արամու ձեւերուն՝ յարմար նմանութիւն մը կ՚ընծայէ Արաբացւոց Ուրբի եւ Արաբի, Արիբու, եւ Արուբու անուան ձեւը։[2]

Հոս կցելու ենք Արիմէ երկիրն ալ — Արամէացւոց երկիրը՝ Կաշիարի լերանց եւ Տիգրիսի քով՝ Տիգրիսէն անդին դէպ ի հիւսիս ձգուելով (Հմմտ. "Տիգրիսէն վեր պատերազմեցաւ„)։ Սաղմանասար Ա. շատ անգամ այս երկիրն արշաւեց։ Թերեւս Արիմէ ձեւը Սաղմանասարի ժամանակ

---

անուն կ՚առնու "աւազակաց խումբ„ նշանակութեամբ. ինքը այս թարգմանութիւնը հաւանական կ՚ընէ միջնորդութեամբ քանի մ՚ուրիշ տեղերու, ուր hattû կը գտնուի։

1 Սեպագրաց Արամէացւոց մասին Հմմտ. Delitsch, Par. 257—59.

2 Տարակոյս չկայ որ յատկապէս Ուրբի արաբացի Բեդուիններէն է, ուր բուն Արաբիայէն դուրս վաչկատուն կը շրջէին. Delitsch, Par. 305.

գործածուած սովորական ձեւն է յետսագոյն Ուրումէի. տարակոյս չկայ որ այս երկիրներն իրարու շատ մօտ էին։ Սամսիրամանի վերոյիշեալ ցանկին մէջ (էջ 309) Արիմէ անունը կը հանդիպի։ Արիմէի քաղաքներն էին alNa-bu-la-..., al....-ti-bu-a ša eli nārIdiḳlat, alLi-šu-te-ši, alIs!-ú-za ša šêp Ḳu-ia-ri. Կուխուրքի տեղ Կուշխուրէ կարդալու է։ Անոր համար կարելի չէ Կուխուրէն Կուլլուրի նրբացած մէկ ձեւը համարիլ, վասն զի Կուլլուր երկիրը շատ վերերը՝ արեւելք (Զամուայի քովերը) փնտռելու ենք։[2]

Մանր նկատողութեան առնելով այլ եւ այլ տեղերը՝ ուր կը յիշուին արամէական տէրութիւնք, որոնց վրայ դեռ հիմայ խօսք եղաւ, նոյն տէրութեանց դիրքին վրայ հետեւեալ արդիւնքը կը ստանանք։ Ասորեստանեայց տեսն՝ Եփրատայ արեւելեան կողմը գտնուող երկիրը մինչեւ Տուր-Աբդին կամ Կորոս-լերինքը կը բռնէին Ուրումէ, Բիտ-Զամանի, Շուպրիա եւ Նիրդուն նահանգները։ Ճշդիւ կ'որոշուի Բիտ-Զամանի՝ Ասորեստանեայց Ամէդին Ամդայ (= Դիարբեկր) հետ նոյն ըլլալովը. արեւելքէն սոր կից էր Նիրդուն, որուն քաղաքները Կաշիարի լերանց (= Mons Masius) տակն էին։ Հիւսիսային կողմը սահմանաբաշխ գետն էր

---

1 Hommel (Gesch. 505) կը կարդայ Պատուշու. ըստ Rawl.ի սակայն՝ առաջին նշանը յայտնապէս is է։

2 Ուգլէրի Խու յուխլէրի մէջ կը կարդանք. Հիմայ կ'ուզեմ դասականաց Ἄριμαι կամ Ἄριμοι (Եդէսեան, Բ. 783) յարաբերութեան մէջ դնել Արիմէի հետ, որուն դիրքը հիներն ալ որոշ չէին գիտեր. վստահելի վկայութիւնք Արիմէն Կիլիկիոյ կամ հիւսիսային Ասորիքի, ըստ այսմ այնպիսի երկրի մը մէջ կը դնեն, որ սեպագրաց Արիմէին յարմարած տեղէն շատ հեռու չէ։ Համեմատեցի բանաստեղծներու քով (Հ. Օ. Վիրգ. Էնէական, Թ. 716 ։ Ովիդիոս վասն կերպարանափ. ԺԴ. 89) կը տեսնուի Inarime — ἐν Ἀρίμῃ. (Համմ. Pauly-Wissowa, II, սիւն 825։)

Տիգրիս՝ Դիաւ երկրին հանդէպ: Դիւայի մէկ քաղաքն էր Պիտուրա, որ գիշերուան մը ճամբայ հեռու էր Տուշհայէ, զոր Տիգրիսի հարաւային կողմը գտնելու ենք: Ուրչափ ալ չենք կրնար ամենայն ճշդութեամբ որոշել Տուշհայի դիրքը, սակայն հաւանականագոյնս Դիարբեկրի արեւելեան կողմը ճիշդ Տիգրիսի եզերքն գտնելու ենք: Արձանագրութեանց նայելով՝ Բիտ-Զամանի հարթ ու դաշտային երկիր մըն է՝ հարաւ-արեւմտեան եւ արեւմտեան կողմանց յարաբերութեամբ աւելի ցած: Բիտ-Զամանիի դիմացը՝ արեւմտեան լեռնագաւառին մէջ փնտռելու ենք Շուպրիան, ուր փախստեայ Ասորեստանցիք Բիտ-Զամանիէ հասան՝ բարձր ելլելով: Դէպ ի Եփրատ՝ աւելի արեւմուտք գտնելու ենք Ուրումէն՝ Արամէացւոց ամէնէն հիւսիս-արեւմտեան երկիրը, սակայն ի վիճակի չենք որոշելու Ուրումէի սահմանները հարաւէն եւ հիւսիսէն:

Իբր յաւելուած յիշենք հոս Սուխմու երկիրը: Սուխմու Բիտ-Զամանիէ աւելի բարձր ըլլալով՝ այն լեռնագաւառին մէջն ըլլալու է, որ զԴիարբեկր արեւմուտքէն եւ հարաւէն կը պատէ: Սաղմանասար Բ. այս կողմերն եկաւ Կար-Շուլմանաշարիտէ (Բիրեջիկէ):

## 2. Կաշիարի եւ Նիրբու:

Առաջին անգամ Կաշիարի անուան կը հանդիպինք Սաղմանասար Առաջնոյ տիրապետութեան ատեն: Սաղմանասար այս լեռնոտ երկրին մէջ ճակատներ մղած է[1]: Տիգղաթպիղեսեր Ա., որ Ասորեստանէն Կումմուհ-Կոմմագենէ արշաւած ատեն Կաշիարիէ կ'անցնի եւ Կաշիարի անունն այս մէկ

1 Սաղմանասար Ա. Թագաւորին հետ առնչութիւն ունեցող դէպքն՝ իւր յաջորդներէն մէկուն արձանագրութեանը մէջ, այս ինքն Ասուրնասիրպալայ կոտրած-կոթող ըսուած արձանագրութեանը մէջ կը տեսնուի:

անգամ է միայն որ Հոս յառաջ կը բերէ, այս երկրին նկարագիրը կու տայ “դժուարին երկիր„ անուանելով։ Ասուրնասիրպալայ արձանագրութեանց մէջ այս երկրին վրայ շատ ատէպ խօսք կ'ըլլայ։ Ասուրնասիրպալ իւր թագաւորութեան երկրորդ տարին Սուբնադի աղբիւրէն Կաշիարի արշաւեց՝ Խալլայի վրայէն անցնելով. այս արշաւանքի ատեն Կինաբուն, Դամդամուսան եւ Մարիրուն շօշափեց։ Մարիրուէ՝ լերանց սիրտը՝ Նիրբու ըսուած երկիրը մտաւ։ Անկէ վերջը դարձեալ Կինաբու քաշուեցաւ, ուրկէս զի Տելայի դէմ յաջող յարձակում մ'ընէ։ Այս արշաւանքին արդիւնքն եղաւ Նիրբուի քաղաքաց կործանումը՝ ինչպէս բնական է ամէն բանէ յառաջ՝ ամուր պարիսպներու քանդմամբը։ Երբ Ասուրնասիրպալ վերջէն Տուշհա արշաւեց եւ քիչ մը ժամանակ այնտեղ մնաց, Նիրբուի մէջ դարձեալ ապստամբութեան դրօշը պարզուեցաւ։ Ասորեստանեայց թագաւորն անմիջապէս այս երկրին վրայ քալեց եւ ապստամբները սաստիկ պատժելով՝ Բուլիանիի կրճերէն մեկնեցաւ, որ զինքը Կիրհու եւ Լուկիա գետը հանեցին։ Թագաւորութեանը հինգերորդ տարին Ասուրնասիրպալ Կումմուհէն Կաշիարի եկաւ։ Թագաւորին կեցած տեղերուն ճշդապատում ցուցակը (Asurn. II, 87—95) Կաշիարիէ յառաջ կը դնէ Զազաբուհա եւ Իրսիա։ Անկէ ետքն երբ լեռներն ամբողջապէս խաչաձեւ կտրեց — մինչեւ Հուլիա-(անապատ?) — Շինիգիշա ելաւ ու Նիրդունի Մադարան իջաւ։ Թագաւորութեանը 18ր տարին՝ Ամեդիէն եկած ատեն՝ Ալլաբրայի Կաշիարիի կրճերը մտաւ եւ հասաւ Նիրդունի Ուդան։ Վերջապէս Ասուրնասիրպալայ արձանագրութեանց մէջ Նիրբու դեռ երեք անգամ ալ կը յիշուի՝ ուրիշ երկիրներու հետ մէկտեղ. (Asurn. III. 120) Նայիրի, Կիրհի, Շուբարէ, Նիրբի. (Stand. I. 7) Նայիրի, Կիրհի, Շուբարէ, Նիրիբ. (III R 6, Rev. 49) Նիրդուն, Լուլուտա, Դիռա, Ագգունու,

Ուլլիբա, Արբակի, Նիրբէ: Հմմտ. նաեւ Asurn. II. 129; III, 122 ištu rîš êni Subnat adî Nîrib ša bitâni.

Սաղմանասար Բ. ալ Կաշիարիի լեռնցի ժողովրդեան դէմ արշաւանք մ'ըրաւ՝ թագաւորութեանը 5ր տարին: "Վեր ելաւ„ եւ հոնտեղուան ամուր քաղաքները նուաճեց: Տեղւոյս վայրագ ու լեռնային նկարագիրը կը ցուցընէ մասնաւորապէս Asurn. II, 95—96 բերուածը. "Կաշիարի ահեղ լերանց՝ դժուարին երկրի մը մէջէն, որ անյարմար էր կառաց ու բանակներու յառաջանալուն — երկաթէ տապարներով լեռը խրամատեցի, պղնձէ բրիչներով լեռը վար առի — քալեցուցի կառքերն ու բանակները:„ Հմմտ. նաեւ Asurn. II, 17—18. "Լերանց սրածայր գագաթներն ընկճեցի նուաճեցի ես, ահեղ լերանց մէջ անոնց պատերազմողները մեռուցի. անոնց արեամբը լեռը ներկեցի իբրեւ զկարմիր բուրդ, անոնց մնացորդները լերանց վիհերէն կլլուեցան:„

Ցանուանէ միայն Ո-(Շամ)-Սի(պի)-շա լեռը կը յիշուի (Asurn. I, 112), որուն ստորոտն էր Նիրբու: Կաշիարի-Նիրբուի քաղաքներն են. Իշպիլիպրիա, ամրոց մը, ուր փախան Ասուրնասիրպալ թագաւորին երեսէն Նիրբուի ինն քաղաքներուն բնակիչները: — Մարիրա. այս քաղաքին թշնամիներէն առնուած ատենը՝ քաղաքը պաշտպանողներէն 50 հոգի պատերազմի դաշտին վրայ մեռած մնացին. 200 հոգի գերի ինկան: Անոնցմէ զատ Նիրբուցի 332 այր ալ մերձաւոր դաշտին վրայ իրենց մահը գտան: Աւարն էր արջառ ու ոչխար: — Տէլա: Ասուրնասիրպալ Կինաբուէն այս քաղաքը հասաւ. ստատիկ ամրացուած քաղաք մըն էր, ի մասնաւորի երեքպատիկ պարսպով. այս քաղաքին առմանն ատեն՝ 3000 մարդ ինկան. աւարը նմանապէս արջառ ու ոչխար էր: Մինչ մէկ կողմանէ արձանագրութեան մէկ տեղը (I, 113) յայտնի կը ցուցընէ որ

Տելա Նիրբուի կը վերաբերէր, մէկալ կողմանէ մէկ ուրիշ տեղն (I, 60) իբր Կիրհուի քաղաքներէն կ'երեւցընէ: Բայց տարակոյս չկայ որ այս երկու տեղերուն հասկցընել ուզածը մի եւ նոյն քաղաքն է: Ցամենայն դէպս Տելա Կիրհուի ամէնէն հարաւային կողմը Կաշիարիի սարոտը կամ անոր կողմնական լեռներուն մէջն էր, այնպէս որ Ասորեստանեայ տեղեկութեան մէջ տեսնուած անճշդութիւնը զարմանալի չէ: Հոմմէլ (Gesch. 560, ծան. 1) Տելայի հետ կը համեմատէ դասականաց Tela Antoninopolisը, որ սակայն այնպիսի հարաւ-արեւմտեան դիրք մ'ունի որ հոս չի կրնար նկատողութեան առնուիլ: Հոմմէլ Տելա անուամբ երկու տարբեր տարբեր տեղեր կ'ընդունի՝ մին Կիրհուի, երկրորդը Նիրբուի մէջ: Այսօր Տէլ, Տիլ անունը կրող տեղերուն յաճախութեանը պատճառաւ դժուարին է ապահով կերպով որոշել թէ որուն հետ նոյն է Տելա. թերեւս Ասորեստանեայց Տելային հետ կարելի ըլլայ յարաբերութեան մէջ դնել Տէլը՝ Բիտլիս-չայի Տիգրիս թափուած տեղը: Այս պարագայի մէջ Տելայի թէ Կիրհուի եւ թէ Նիրբուի մէջ դրուիլն անըմբռնելի չէ: — Մուզուրանզու. առաջին կայարանն դէպի Կիրհուի Իրսիան, եւ Կաշիարիի մէջ: Իրեն վերաբերեալ երկու քաղաքներով մէկտեղ կը նուաճուի: — Կաշիարիի լերանց սահմաններուն մէջն է Ալլաբրա երկիրն ալ: Ասուրնասիրպալ Ամեդիէ Նիրդունի Ուսսա անուն տեղն արշաւած ատեն՝ Ալլաբրայի Կաշիարիի կրճերէն անցաւ: Ռամմանիրարի Գ.՝ Ալլաբրիան իւր գրաւած երկիրներուն մէջ կը յիշէ հետեւեալ կարգաւ. Մուննա, Պարսուա, Ալլաբրիա, Աբդադանա, Նայիրի: Սարգոնի արձանագրութեանց մէջ ստէպ Ալլաբրայի իշխան մը կ'երեւայ իբրեւ դաշնակից Մանի, Կարալլայի եւ Ուրարտուի՝ Իտտի (գրուած Իտտիի) անունով: Սարգոն այս իշխանը նուաճեց եւ ընտանիքովը մէկտեղ Ասորիքի Համատ անունով տեղը

գաղթեցուց։ Սարգոնի ողոցածոյին մէջ (B, f₁,) շատ կարեւոր տեղեկութիւն մը կայ, որ կ'ըսէ թէ Մանի թագաւորն իւր Իզիրտու մայրաքաղաքէն 6 կրկնամղոն հեռու գտնուող Ալլաբրիոյ Բա(Ջու?)-ճրու քաղաքը հասաւ։ Լընորման՝ Ալլաբրիան Էլ-բբուզ անուան "տուրաննեան„ մէկ ձեւը համարելով՝ այս երկիրը Ռագաիի (Ռաի) հիւսիսային կողմը կը փնտռէ. այն աղերսին հետ, որով մեր առջեւը կ'ելլէ Ալլաբրիա, չմիաբանող այս տեսութեան միակ կռուանն՝ անուանց հեռաւոր նմանահնչութիւնն է. տե՛ս ընդհակառակը Շրադէր (KGF 148) եւ Տիլէ (Gesch. էջ 263, ծան. 2)։

Յիշելու ենք դեռ ղինջիուհա՝ Կաշխարիի սառո-րատն, եւ Գուլղուզիխի՝ (Կաշխա?)արիի մէջ, զորոնք կ'ըսուի թէ Սաղմանասար Ա. գրաւած ըլլայ։ Հոս քանի մը խօսք ալ Հուլլիսի վրայ ըսելու ենք. Հուլլիա ամայի դաշտավայր մ'ըլլալու է՝ մասամբ Կաշխարի-լեռներն եզր ունենալով։ Հետեւեալ տեղերը կը հանդիպի Հուլլիա անունը. Hu-li-a: Asurn. II, 96; III, 102; III R 6, Ov. 30; Rev. 13. Hu-li-ia(?): Lay. 48, 25։ Ասուրնասիրպալ Հուլլիայի "կից„ քաղաքներուն մէջ հարկ առաւ "արջառ, ոչխար, գինի, պղնձէ անօթ, պղնձէ գոռղխոխ։„ Թագաւորութեանը 18ր տարին՝ Արկանիա-լեռներուն մէջ գտնուող Մուլլանոսէն ճամբայ ելլելով՝ կը շօշափէ Զամբուի քաղաքները (ša šiddi Hullia) եւ զանոնք մոխիր դարձնելէն ետքը կ'անցնի նախ Սուաի եւ յետոյ Տիգրիսի[1] վրայէն։ Ըստ այսմ Զամբուն ալ Կաշխարիի սահմաններուն մէջ դնելու

---

[1] Այստեղ յիշուած Հուլլիան՝ ուրիշ տեղեր յիշուած եւ ša ina libbi Kašiari յաւելուածն ունեցող Հուլլիայէն տարբեր կամ զատ համարիլը — ինչպէս Հոմմէլ կ'ընէ (Gesch. 585) — արդարացի չէ. վասն զի երկու տեղեաց աղերսը՝ դիրքը մի եւ նոյն տեղ — անմիջապէս Դիրհուի քովը ու Կաշխարիի մէջ կամ քովը — դնելէ աւելի բան կը ցուցընէ։

ենք։ Դելիչ (Par. 259) շատ յարմար կերպով Հուլիան — = "աւազուտ երկիր„ը — յարաբերութեան մէջ դրած է Ծննդոց (Ժ 23 եւ I. Chron. Ա 17) חול ին հետ, որ արամէական նահանգ մըն է։ (Հուլ՝ ազգահամարին տախտակին մէջ իբր Արամայ որդին կը ներկայանայ)։ Սակայն այս ամէն տեղերու մէջ Հուլիա իբր հասարակ անուն ալ կրնայ առնուիլ՝ պարզապէս "անապատ„ իմաստով։

Սեպագրերու Կաշիարի-լեռներն ընդհանրապէս կը համապատասխանեն այսօրուան Տուր-Աբդինի[1], որ լեռնադաշտ կամ հարթաստան մըն է՝ հիւսիսէն ու արեւելքէն Տիգրիսը սահման ունենալով. հարաւէն կը հասնի մինչեւ Միջագետքի դաշտն եւ արեւմուտքէն կ'երկարի մինչեւ Կորոս-լերանց մէջ։ Կիպերտ իրաւամբ Տուր-Աբդինը հնոց mons Masius ին (= τὸ Μάσιον ὄρος) հետ կը նոյնացընէ։ Մասիոս լեռան հետ ալ արդէն Բոխարտ յարաբերութեան մէջ դրած է[2] Ս. Գրոց ազգահամարին Մաշը (מַשׁ)։ Սեպագիրք Կաշիարիի մէկ մասը կը ճանչնան իբր Նիրբու երկիրը = "Երկիր կրճից„ (Նէրբու- յապաւմամբ՝ = Նէրէբու)[3]։ Կրճերը՝ յատուկ մոզք Կաշիարիէ՝ Ալլաբրիա կը տանէին, զոր Նիրդունի մօտերը Կորոս-լերանց կամ առոնց արեւելեան կողմը Տիգրիսի երկու եզերաց վրայ ձգուած լեռնադաշտին մէջ փնտռելու ենք. Հոմմէլ (Gesch. 564) Նիրբու երկիրը հարաւային կողմերը՝ Դիարբեքիրէ մինչեւ Մերդին երկարող Կարաճա-դաղի մէջ կը դնէ, զոր սակայն պէտք է Տուր-Աբդինէ (= Masius) լաւ զանազանել. Նմանապէս

1 Հմմտ. A. Socin, ZDMG 35, 237 եւն. „Zur Geographie des Tûr-Abdîn."

2 Delitsch, Par. 259.

3 Նիրբուի դրից նկատմամբ տ. Հիմայ Թեւքի հետեւեալ յօդուածն ալ. „Hanigalbat und Melitene": ZDMG 51, էջ 561, ծան. 3։

Տելուն, որ Նիրդունի մէկ քաղաքն է, Tela Antoninopolisի մէջ դտած էր։ Բայց որովհետեւ որոշ կ'ըսուի թէ Նիրբու կաշիարիի "մէջտեղերն" է եւ կաշիարի չի կրնար հարաւային կողմանէ Մերդինէ անդին տարածուած մտածուիլ, ուստի եւ ստիպուած ենք ըսել թէ Նիրդուն է Տուր-Աբդինի բերրի սարահարթը։ Ասորեստանեայց աղբիւրներուն այս Նիրբուին հետ՝ յայտնապէս նոյն է — ինչպէս արդէն Սէյս ճանչցած է — վաննեան սեպագրաց Նիւրիքուն (Sayce No. XXXVIII, 12; 13; 15; 16)։ Թուլք ալ այս ենթադրութեան կողմն է։[1]

### 3. Կիրհու եւ Կուրհի (Կուրփի ?)։

Կէրը կրնայ Աէլ ալ կարդացուիլ։ Մտադրութեան արժանի է Եէնսէնի կարծիքը (Zeitschrift für Assyriologie, VIII, 228), որուն համաձայն Սիպպարի տակաւին չհրատարակուած պատմական մէկ արձանագրութեանը մէջ Անշանի եւ Կուրհումի թագաւոր մը կը յիշուի։ Ցառաջ Կէրփի ալ կը կարդացուէր եւ Կուրփիները (= Քրդերը) կը համարուէին. բայց Կէրփի ընթերցուածն այլ եւս ընդունելի չէ՝ Կիրհու գրութեան պատճառաւ։ Ինչպէս կ'ապացուցուի առաջին անգամ Սաղմանասար Ա. Կիրհու մտած է։ Ամենէն աւելի այս երկրին վրայ խօսողն Ասուրնասիրպալայ արձանագրութիւններն են։ Թագաւորութեանն առաջին տարին այս թագաւորը Հուլունի կիրճէն Կիրհու կը մտնէ եւ այլեւայլ տեղեր կը նուաճէ. իւր չուն շարունակած ատեն՝ Նպատակն է Նիպուր եւ Պա-

---

[1] Ուղղէլէթի եւ յաւնէլէթի մէջ կը կարդանք. "Ներքաք անունը շատ ստէպ կը հանդիպի իբր տեղւոյ անուն, ցորչափ արամէարէն կը խօսուէր։ Տարակոյս չկայ որ սկզբնաբար Ասորեստանցիներէ փ ․ի առնուած բառ մըն էր։" Նիւուլէթէ։ — ܠܒܝܠ ի համար հմմտ. Hoffmann, Syr. Acten pers. Märtyrer, ծան. թ. 1794։

սատի լեռները հասնիլ: Յաջորդ տարին Բուլիա-նիի կրճերէն անցնելով յառաջացաւ եւ այնտեղ գտնուող Կիրքեան քաղաքները նուաճեց: Անկէ մեկնած ատենն Արդուպայի մէջ շրջակայ տէրու-թեանց — որոնց մէջն են Հատտի եւ Հանիգալբատ — հարկն առաւ: Ասորեստանեայց թագաւորը թագաւորութեանը հինգերորդ տարին Կիրհուի մէկ մեծ մասը շրջեցաւ. Նոյն տարին՝ կեցած այլ-եւայլ տեղերուն յիշուելովը որոշ գծուած ճամբէ մը Կաշիարի-լեռները գնաց. Զազաբուհա քաղաքը՝ Կիրհուի հարկն առաւ, որ էր "արջառ, ոչխար, գինի, պղնձէ աման, պղնձէ ցուլ մը (rêmu, եթէ այսպէս կարդալու է), պղնձէ գուրդիէ:„ Ասուր-նասիրպալ դարձեալ նոյն տարին Պիտուրայէ գալով՝ Կիրհի շա Բիթանի իջաւ եւ Մատնի-լերանց մէջ քանի մ'ամրոց առաւ յարձակմամբ, որ երկրին բնակչացը պատսպարաններն էին: Թագաւորու-թեանը 18ᵉ տարին անգամ մ'ալ Ասուրնասիրպալ Կումմուհի սահմանէն գալով եւ Եփրատն ու Կուբ-բու երկիրն անցնելով՝ Աշշայի եւ Կիրհիի քաղաք-ներն իջաւ, "որ Հատտիի առջեւ„ էին: Ամադանիի կիրճը զինքը Կարանիայէ Դիռա երկիրը բերաւ, զոր Կիրհուի մաս համարելու ենք: Միտ դնելու ենք որ Asurn. II, 117 ի հակառակ՝ թէ Stand.-I եւ թէ տարեգիր մեծ արձանագրութիւնը (III, 120) զՆայի-րի եւ զԿիրհու իրարմէ կը բաժնեն. Նայիրի, Կիրհի, Շուբարէ, Նիրիբ (Նիրբէ): Սեւ կոթողին արձանա-գրութեան համաձայն՝ Սալմանասար Բ. մէկ ան-գամ միայն ապստամբութեան մ'ատեն Կիրհու եկած է: Տիգղաթպիղեսեր Գ. իւր կուածոյ-ար-ձանագրութեանց մէջ համառօտիւ կը յիշէ՝ Ու-լուբան ու Կիրհան (II, 41 ša šêp Nala յաւե-լուածով) ամբողջ տարածութեամբը նուաճելն ու Ասորեստանեացւոց նահանգ դարձընելը: Նմանապէս համառօտ կը խօսի Սարգոն (Cyl. 22), "որ Կիրհին ջախջախեց:„ Սարգոնի սղոցածոյին (B) մէջ Կիրհուն

կը յիշուի․ բայց բնագրին սաստիկ կրճատեալ ըլլալուն՝ կարելի չէ կապակցութիւնը երեւան հանել։

Հետեւեալ երկիրներն ու քաղաքները Կիրհուի կը վերաբերէին․ Սուգի՝ շրջակայ Հիմէ, Լուհի — զոր Ասուրնասիրպալ կը ճանչնայ իբրեւ $^{al}$ḫal-si Lu'-ḫa = «Լուհա ամրոց», ուր եւ Սաղմանասար Ա․ Ասորեստանցիներ գաղթեցուցած էր․ Լուհի Գամդամմուայի մօտերն էր — Արիրգի, Ալամուն եւ Նիմնի գաւառներով։ Սուգի յիշեալ հինգ գաւառներուն հետ՝ Տիգղաթպիղեսեր Ա․ թագաւորին մօտեցած ատենն անոր դէմ 6000 հոգի պատերազմող հանեց, որ սակայն ջախջախիչ պարտութիւն մը կրեցին․ բնականապէս այս պարտութեան հետեւութիւնն եղաւ ամբողջ երկրին աւերումն ու պատշաճաւոր հարկի մը դրուիլը։ Կ'ըսուի թէ ճակատը տրուեցաւ Հիրինի լեռը, որ սղոցածոյ-արձանագրութեան համաձայն «դժուարին երկիր մըն էր՝ դաշոյնի մը սայրին նման դէպ ի երկինք ցցուած։» — Asurn I, 59 եւ յաջորդք Կիրհուի 8 քաղաքներուն մէկ ցուցակը կ'ընծայէ․ Հատու, Հատարու, Նիշտուն։ Այս քաղաքին տէրը՝ Բուբու որդիլ Բուբաու (այլ ընթերց.՝ Բուբաու) Արբեղայի մէջ մորթազերծ եղաւ։ Իրբիդի, Միտկիա․ Բելք մէտ է այս անունը (Բաղիշու վիլայէթին) այժմեան Մոտկի անուն գաւառակին անուան մէջ տեսնելու։ Արզանիա․ այս անուան համար հետեւեալ անունները կրնանք նկատողութեան առնուլ․ 1․ Ἀρζανηνή (Ἀρζάνη ալ), որ Մեծ Հայոց մէջ նահանգ մըն է․ 2․ Ἀρσηνή, Ստրաբոն ԺԱ, էջ 529 (Ἄρσισσα Պտղոմ․ Ե․ 13, 13), այսօր Արճիշու լիճ, Վանայ լճին ամէնէն հիւսիս-արեւելեան մասը․ 3․ Ἀρσανίας, երկու գետերու անուն․ մէյ մը Մուրատ-չայի եւ մէյ մ'ալ Եփրատայ մէկ փոքրիկ բազկին, որ արեւելքէն գալով Մելիտէ վար Ե–

1 KB I, 68 կարդացուած է՝ Ḫalzi-dip-ḫa։

փրատ կը վազէ, այսօր Արզն կամ Արճիս։ Ասորեստանեայց Արզանիան միայն Ἀρζανηνήն (Ἀρσανή) կրնայ ըլլալ․ Թերեւս այս տեղը Մուրադ-չայի (Արսանիայի) վրան էր[1]։ Տես․ Շատ հաւանական է որ Նիրբուի Տելային հետ նոյն ըլլայ (Հմմտ․ էջ 33)։ Հալլու։ Asurn. I,* 59 եւ յաջորդներուն ստորագրութեանը նայելով՝ շատ լեռնոտ էր այն երկիրն, որուն մէջ կը գտնուէին այս ութ քաղաքները։ Ասորեստանեայց թագաւորը զատոնք արիւնահեղ կոտորածներով առնելէն ետքը՝ ընդդիմադիրներուն վերջին ապաստանարանին վրայ քալեց, որ էր “Նիշտունի հանդէպ ժայռի մը դուրս ցցուած մէկ սայրը՝ որ ամպի նման երկինքը կը ծօծար։„ Դարձեալ այս կենդանի ու այլաշրջիկ նկարագրութեան մէջ կ՚ըսուի․ “Հոն, ուր թագաւորներէն, իմ հայրերէս ոչ ոք համարձակած էր, անոնց դէմ իմ զինուորներս փութացին, անոնց պատերազմողներէն 260 հոգի զէնքովս սպաննեցի, անոնց գլուխները կտրեցի բրգաձեւ շարեցի․ Մնացածները թռչնոյ պէս լերան ժայռերուն վրայ բունած էին։„ Այն գլխաւոր լեռներն, որոնց մէջն էին վերոյիշեալ 8 քաղաքները, ատոնք են․ Ո–––, Ար–––։ Հոմմէլ այս վերջինը Տիգլաթպիլեսեր Առաջնէն յիշուած Արումանին հետ (Ատաուշի եւ Ուիշտիշի քով) կը նոյնացընէ։ Արարդի․ Սէյս (JRAS XIV, 390) mâtâte dannûte

1 Նեօլդէքէ ինձ կը գրէ․ “Ապահովապէս իրաւունք ունիք, երբ Արզանիայի համար Ἀρζανηνήն միայն նկատողութեան կ՚առնուք։ Յունարէն գրութիւնը, որ ζ եւ ξ տառերուն յաճախ զիրար փոխանակելովն ալ դժուարութեանց կը բախի, դիւրաւ կրնայ շատ մը խառնաշփոթութեանց պատճառ ըլլալ։ Պէտք է զանազանել՝ նախ հարաւային ارزن եւ երկրորդ՝ հիւսիսային. երրորդ․ ارزن الروم կամ ارض الروم ալ (Ἄρζαμον եւ ուրիշ ձեւեր՝ Տուր Աբդինի մէջ) եւ չորրորդ՝ Ἄρσισσα, ارجيش։ Դժբախտաբար չեմ կրնար հայ աղբիւրները նկատողութեան առնուլ։ (Ո–ղդէքէ Ի– Յ––Իլլէ։)

կարդալով՝ Ուսուն, Արուան եւ Արարդին “երկիր„ կը համարի. բայց քերականական տեսակէտէ բոլորովին անկարելի է այսպէս կարդալը։ Սէյսի՝ Արարդին Արարատ-Ուրարտուի հետ նոյն համարելու համար ըրած առաջարկութիւնն ալ ուրիշ ցրման պէտք չունի։

Կիրհուի կը վերաբերէր դարձեալ Եշէ քաղաքը, ուր Սալմանասար Ա. մտաւ. նմանապէս նախ քան զամենայն՝ Իշ—— կամ Էնզի (Էնզիտէ), Ալզէ երկիրը։ Նորերս Բելքի Իշուա = Իսուա ըլլալու մասին ըրած առաջարկութեան վրայօք տես վարը։ Արդէն Տիգղաթպիղեսեր Առաջինէն յառաջ Ալզի եւ Բուրուկուզզի նահանգներն Ասորեստանեայց հարկատու էին. բայց ասկէ ետքը 50 տարի Մուշկիի (Մոսկացւոց երկրին) իշխանութեան տակ էին, որմէ կ'երեւայ թէ Տիգղաթպիղեսեր իւր թագաւորութեանը սկիզբն ըրած արշաւանքին առենը զիրենք ազատեց. երբ այս նահանգները յաջորդ տարին հարկ տալ չուզեցին, զէնու զօրութեամբ դարձեալ հնազանդութեան բերուեցան։ Կոթողին (42) համաձայն՝ Սալմանասար Բ. թագաւորութեանն երրորդ տարին Ալզիի կրճերէն ներս խուժելէն ետքն Ալզին, Սու—Հնին, Դախաենին եւն նուաճեց։ Կոթողը նոյն տեղը Էնզիտէ անունը կ'ընծայէ, որ ապացոյց մըն է Ալզի — Էնզի — Էնզիտէ[1] անուններուն նոյն ըլլալուն՝ այն աղերսով ալ հաստատուած, որով Ալզի եւ Էնզի — Էնզիտէ մեր առջեւը կ'ելլեն։ Կոթողն որոշ կերպով մատնանիշ կ'ընէ Սալմանասար Բ.ի բռնած ճամբան։ Այս թագաւորը Բիտ-Զամանիէ ճամբայ ելլելով՝ եւ Նամդանու եւ Միրհիսու լեռնադաւառներէն անցնելով Էնզիտէ “իջաւ„ Իշուայի մէջ. այստեղ ըստ սովորականին կողոպտեց ու մոխիր դարձուց. ասկէ

---

[1] Լ եւ Ն տառերուն յաճախադէպ փոփոխութեանը պատճառաւ։

ետքն Արսամիասի վրայէն ճամբան շարունակեց՝ Սուհմէ եւ Դախաենի հասնելու համար։ Salm. Mo II, 65, 66ի մէջ "Էնզիտէի կիրճերը մտայ. Արբեղայէն վեր՝ Կիռուրիի կրճերէն դուրս ելայ„ ըսուածը բնականաբար կ'ակնարկէ Սաղմանասար Բ.ի Էնզիտէէ սկսեալ՝ Սուհմէի, Դախաենէի, Ուրարտուի, Կիրզանի, Հուբուշկիայի, Կիռուրիի վրայէն չուելը։ Հմմտ. նաեւ Salm. Balaw. II, 5. "լայնածաւալ երկիրը՝ Էնզիէն մինչեւ Սուհնի, Սուհնիէն մինչեւ Մելիդ, Մելիդէն մինչեւ Դախաենի կորեց անցաւ։„ Վերջապէս սա՛ ալ ըսելու ենք որ Սամսիրաման իւր իշխանութեան տարածութեանը համար կ'ըսէ թէ Ակկադիոյ Զագդի քաղքէն մինչեւ Էնզի երկիրը կը հասնի. Տիգղաթպիղեսեր Գ.ալ կռածոյ-արձանագրութեան մը մէկ հատակոտորին մէջ՝ Ուրարտուի եւ Էնզիի մէջ նուաճած քաղաքներուն մէկ համառօտութիւնը կ'ընէ. ի հարկէ կարելի չէ ճշդիւ որոշել թէ ո՛ր քաղաքն ո՛ր երկրին կը վերաբերէր։

Էնզի երկրին մէջն էր Սուբնատի ակնաղբիւրը։ Սուբնատ նշանաւոր եղած է ասորեստանցի թագաւորներէն չորսին այս գետին վրայ կանգնած անդրիներովն ու արձանագրութիւններովը։ Ասուրնասիրպալ ինք զինքը "Սուբնատի ակնաղբիւրէն մինչեւ Նիրիբ շա բիտանի„ երկիրը եւ "Սուբնատի ակնաղբիւրէն մինչեւ Ուրարտու„ եղած երկիրը նուաճող կ'անուանէ։ Տեսնուեցաւ որ Սուբնատ այսօրուան Սեբէնէ-սուն է (Հմմտ. Ritter, Erdkunde X, 98). H. Rawlinson՝ Sebeneh, Taylor՝ Tsebeneh եւ J. Brandt՝ Zibeneh կը գրեն։ Տիգրիսի աղբիւրէն վար՝ առաջին յիշատակուելու արժանի ճիւղն է Սուբնատ որ՝ Դիարբեկրի հիւսիսային կողմը՝ Էկիլի քով Տիգրիս կը թափի. այսօրս Սեբէնէ անունը յիշեալ ճիւղին հարաւային գլխաւոր բազկին կը տրուի. այնտեղ է միանգամայն այս անուամբ քաղաք մը՝ Կիպերտի Carte générale ին համաձայն՝ Սեբէնէ-սուի արեւելեան ու Հինիի

Հարաւ-արեւմտեան կողմը՝ մերձաւորապէս արեւելեան երկայնութեան 57° 16'ին (Գրինվիչէ) եւ Հիւսիսային լայնութեան 38° 34'ին վրայ։ Ասորեստանցիք թէ Բալու-Լիճէ-Ներճկիի վրայէն՝ Ուրարտու, եւ թէ Հինիի վրայէն ու Սեբէնէ-սուի երկայնութեամբն Ամիդ — Դիարբեկիր արշաւած ատեն՝ ստիպուած էին Սուբնատի ակնաղբեր քարայրին առջեւէն անցնիլ. ասով կը մեկնուի թէ Ասորեստանցւոց թագաւորներն — Տիգղաթպիղեսեր Ա., Տուկուլտինինիբ Բ., Աշուրնասիրպալ եւ Սաղմանասար Բ. — ինչո՞ւ այնտեղ իրենց անդրիները կը կանգնէին ու անոնց վրայ արձանագրութիւններ գրել կու տային։ Rawlinson եւ Taylor ակնաղբեր քարայրն ու անոր մէջն անդրի մը գտան. Սէստէր, որ աւելի ուշ նոյն տեղը գացած է, երկու արձանի խօսք կ՚ընէ, որոնց միայն մէկը՝ զՏիգղաթպիղեսեր ներկայացընողը՝ ծանօթացուած է կաղապարով. արձանագրութիւններէն միայն Տիգղաթպիղեսեր Առաջնոյնը լաւ պահուած է, իսկ Տուկուլտինինիբ Բ.ի եւ Սաղմանասար Բ.ի արձանագրութիւնները բաւական շատ վնասուած են (Հմմտ. Շրադերի Die Keilinschriften am Eingange der Quellgrotte des Sebeneh-Suh մենագրութիւնը՝ հանդերձ Տիգղաթպիղեսերի բարձրաքանդակին նկարովն, հրատարակուած Abh. d. Berl. Akad. d. Wiss. 1885, էջ 1—31 եւ Դէլլ, Par. 185։) Ակնաղբեր տեղը — տարակոյս չկայ որ Սուբնատի ակնաղբիւրն է ըսուածը — եւ այն՝ Էկկի լերան վրայ Աշուրնասիրպալ իւր անուամբը քաղաք մը կառուցանել տուաւ եւ այնտեղ ի նշան իւր զօրութեան՝ իւր արձանը կանգնեց։ Նոյնը կը պատմէ Սաղմանասար Բ. Էնզիի մէկ ուրիշ քաղաքին՝ Սալուրիի[1] վրայ. այստեղուան

---

1 Craig, The Monolith Inscription of Salmanassar II, New-Haven 1887, Sa-lu-ri-a KI-TA (= šaplu) šad (?) Ki-ri-e-ki կը կարդայ։ Peiser (KB I, 164) Sa-lu-ri a-šar(?) me-ti-ḳi ri-e-ki կը կարդայ = "(ի) Սալուրի՝ տեղ

արձանին վրայ արձանագրութիւն մ'ալ աւելցուեցաւ, որ Ասորեստանցւոց թագաւորին արութիւնները կը պատմէր։ Իշուա — Ալզի — Ինզի երկրին տեղն որոշելու համար արձանագրութիւններէն հետեւեալ յեցակէտերը կը ստանանք։ Այս երկիրը Մուշկիէ (Եփրատայ մէկալ կողմը՝ Արաբկիրի մօտ) շատ հեռու չէր. հիւսիսէն մինչեւ Արսանիաս կը համնէր եւ կը կցէր Սուհմէի, որ Արսանիասի մէկալ կողմն է։ Արեւելքէն սահմանակից էր Ուրարտու. հարաւէն սահմանակից էին Նամդանու եւ Միրհիսու, որ Բիտ-Զամանիի հիւսիսային կողմը բարձրադիր երկիրներ էին։ Ասով ակամայ կը մղուինք այսօրուան Հանձիթի կողմերը՝ Բալուի եւ Արղնի մէջերը, եւ արեւելքէն մինչեւ Հինի։ Հանձիթ՝ որ արդէն Ἀνζητα ձեւով Պտղոմէոսի քով (Ե 13. 19) կը գտնուի, Մեծ Հայոց մէկ քաղաքն է Տիգրիսի աղբերաց սահմաններուն մէջ. Նմանապէս Պտղոմէոսի քով միեւնոյն տեղը (§ 19) կը յիշուի իբր գաւառ մը, ուր էր Ἄνζητα։ Կիպերտ իւր Atlas antiquusին pl. IV) մէջ Անզիտենէն ճշդօրէն այն տեղ դրած է, ուր է այժմեան Հանձիթը։ Ինզիտէ եւ Անզիտա — Անզետենէ անուանց նոյնութիւնը յայտնի է եւ արդէն Շրադեր գտած էր։ Հաւանական է որ Ասորեստանեայց Ինզիտէն աւելի դէպ ի արեւելք տարածուած էր քան այսօրուան Հանձիթը՝ դէթ Կիպերտի աշխարհացոյցին վրայ նշանակուածէն դատելով։ Ինզիտէն Վանեան սեպագրաց Ալզի-ն է. Ալզիան ալ ասորեստանեայ Ալզու-ի մէկ նման ձեւն է (Sayce No. XXXII, 8)։ Սէյս (JRAS XIV, 398) այսպէս կը սահմանէ այս տեղւոյն դիրքը. Ալզու Բալուի եւ Հինիի մէջտեղը գաւառ մըն է։ Ալզիի հետ մէկտեղ յիշուած Բու-րու-խու-ղղի Ալզիի քովերն էր, թերեւս հիւսիս-արեւմտեան կողմերը՝ դէպ ի Քարբերդ։

---

մը հեռաւոր գնացքով (?)։„ Rawlinsonի ընագրին համաձայն՝ վերջնականապէս բան մ'որոշել անկարելի է։

Կումմուհի եւ Կաշիարիի մէջ եղած կայաններուն ցանկէն Կիրհուի¹ վերաբերող շատ մը տեղեր հանելով՝ այստեղ այն կարգաւ յառաջ կը բերենք, ինչ կարգաւ որ արձանագրութեան մէջ կը յիշուին. Իշփուրափէ. ասկէ Կումմուհ տանող կրճեր կան: Իշտարատէ առաջին նշանակալից տեղն է՝ Կումմուհէ եկողներուն համար: Կիբակի. այս քաղաքին տուած հարկն է արջառ, ոչխար, գինի եւ պղնձէ անօթ: Մատիատու². Ասուրնասիրպալ այս քաղաքն՝ աւոր վերաբերող գերեզմանաքաղաքին հետ մէկտեղ նուաճեց եւ 2800 այր սպաննեց. ...րոտ (պաշտօնեայ) մ'այստեղ հաստատեց իւր աթոռն անոր անուամբը: Թագաւորութեան հինգերորդ տարին ինկող այս արշաւանքին վրայ տրուած տեղեկութեան մէջ կը պատմուի թէ այս քաղքին մէջ արքունի արձան մը միայն կանգնուեցաւ. ասով հաւանական կ'ըլլայ Հոմմէլի (Gesch. 572, ծան. 5) այն կարծիքը թէ Մատիատու այն տեղը միայն կրնայ ըլլալ, ուր գտնուեցաւ կուրքեան բաւած կոթողը, որ այս արշաւանքին վրայ միայն կը խօսի: Նոյն գիտնականը (Gesch. 572) մտադրութեան արժանի ենթադրութիւն մ'ընելով կ'ըսէ թէ այս Մատիատու անունն, որ ալ Իտու ալ կրնայ գրուիլ, Սաղմանասար Բ.ի ալ Իտուտէին հետ կրնայ յարաբերութիւն ունենալ: Վերջին երկիրն տարակոյս չկայ որ Սուբնատի ակնաղբեր եւ Եփրատայ մօտերն էր: ալ Իտուէ(է, ու) ընթերցուածոյն դէմ միակ դժուարութիւնն այն է որ Մատիատէ ընթերցուածն ալ կայ: Նորերս Սախաւ³ Ասորեստանեայց Մատիատէին այսօրեան Միդիատին հետ (Տուր-Աբդինի հիւսիսակողմն՝ գրեթէ Մերդինի եւ Ջեզիրէտ

---

1 Թէեւ Կիրհուի հարկը Զազաբուհա կը հասնի, սակայն կանխաւ յիշուած քանի մը քաղաքները կարելի է Կիրհուի քաղաքներ համարիլ:

2 Տարբ. [illegible]-տէ. Թերեւս Մատիատու կարդալու է:

3 Zeitschrift f. Assyriol. XII, 51.

իբն Օմարի մէջտեղերը) նոյն ըլլալը հնարաւոր համարած է։ Կոթող արձանագրութիւնը Մատիատէի եւ յաջորդ Զազաբուհա քաղաքին միջեւ Մազամուըն կը դնէ։ Ինչպէս արդէն յիշեցինք Ասուրնասիրպալ այստեղ Կիրհուի հարկը կ'առնու։ Սախաւ (անդ 51)՝ Մատիատէի Միդիադի հետ նոյն ըլլալն ենթադրելէ ետքը՝ կարելի կը համարի Զազաբուհայի այժմեան Զագ անունով մեծ գիւղին հետ նոյն ըլլալը։ Ասկէ կը հետեւի թէ Ասուրնասիրպալ Մատիատէ[1] դարձեալ հիւսիս-արեւելք դարձաւ։ Իրխա. այստեղ կը ղրկուի մերձաւոր Սուրա[2] քաղաքին հարկը, որ էր "արջառ, ոչխար գինի եւ պղնձէ անօթ։"

Կիրհուին՝ ընդարձակ մասը առնլով՝ կը վերաբերէին Դիրրա եւ Արբակի երկիրներն ու Նիպուր-Պասատե լեռնադաւառը։ Դիրրայի վրայ միայն Ասուրնասիրպալայ արձանագրութիւնները

1 Ռոստ (Untersuch. 40) կը համարի թէ Մատիատու անուններուն առնչութիւն չունի Միդիադի հետ, վասն զի վերջինս շատ արեւելք կ'իյնայ։ Ընդհակառակը՝ Սուրան Գումաթէնէի Սուրային հետ կը նոյնացընէ, իսկ Սաւրան ալ՝ Հանիգալբատի Շուբրին հետ, թէեւ հարցական մ'աւելցընելով. առոր հետեւութեամբը՝ յատուկ մասք Կաշիարի կը համարի զԿարաջա-դաղ։ Բայց որովհետեւ Եփրատայ արեւելեան եզերքէն հաշուելով՝ Սուրայէ առաջ վեց կայարան կայ եւ մէկալ կողմանէ ալ չունի՝ մի անգամ բռնուած ուղղութեամբ յառաջացած պիտի ըլլայ, ուստի Սաւրա շատ արեւմուտք պիտի ըլլայ եւ չի կրնար այս պատճառաւ Ասորեստանեայց Սուրային հետ նոյն համարուիլ։ Այսու ամենայնիւ այս երկու տեղերուն նոյն ըլլալուն հնարաւորութիւնը բոլորովին անկարելի չեմ համարիր։ (Տանէլլէ եւ Ոսղջէլէ)։

2 Տարբեր՝ Բիտ-Հալու(դիպ)պէի մէջ եղած Սուրայէ (Asurn. I, 75; 79 եւն), նմանապէս տարբեր Šu-u-ra ša mât Ha-ma-nuյէ (Asurn. III R 6, Rev. 52). Հոմմէլ մէտ է այս վերջինը մերինին հետ նոյնացընելու։ Կիրհուի Սուրան հարկ է որ բոլորովին մօտ ըլլայ Կաշիարի լերանց։

կը խօսին։ Թագաւորը Տուշհայէն գալով եւ գիշեր մ'ամբողջ լաւ քալելէ ու լաստով Տիգրիսն անցնելէ ետքը՝ Դիռայի Պիտուրա քաղաքը հասաւ։ Դիռայի քաղաքներէն 50ը կը նուաճէ ու կը կործանէ եւ 50 հոգի գերելով հեռն առած կ'երթայ։ Ասուրնասիրպալ իր արշաւանքը շարունակելով՝ Պիտուրայէն Արբակի կ'իջնայ։ Կոթողն, որ նմանապէս Դիռայի նուաճումն ալ կը պատմէ, յաջորդ կերպով կը դասաւորէ այս երկիրը. “Նիրդուն, Լուլուտա, Դիռա, Ագգունու, Ուլլիբա, Արբակի, Նիրբէ։„ Թագաւորութեանը 18ր տարին դարձեալ Դիռա իջաւ, բայց այս անգամ Ամադանի լեռնէն. տարր ու Արկանիա-լերանց մէջ եղած քաղաքները յարձակմամբ առնուեցան։ Իւր չուն՝ Սուա գետին ու Տիգրիսի վրայէն դէպ ի Ջամբա եւ անկէ ալ դէպ ի Բիտ-Զամանի շարունակեց։ Վերոյիշեալ Պիտուրա քաղաքը շատ ամուր ու անմատչելի բերդ մ'էր. “Կրկին պարիսպ զինքը կը պատէր. ամրոցը լերան սարի նման բարձր էր։„ Ասուրնասիրպալ այս քաղաքը յամառ ճակատէ մ'ետքն առաւ. քաղաքը պաշտպանողներէն 800 հոգի ինկան. Թագաւորն ալ 700 հոգի ցցամահ սպաննեց։

Ըստ երեւութին այս սաստիկ անդնդաշատ ու լեռնային երկրին մէջ երեք լեռնագօտի ծանօթ են յականէ, այսինք Մանդու, Ամադանի եւ Արկանիա։ Կ–կ–Ն– քաղաքը Մ–Նդ– լեռնաշըղթային մէջ էր. Ասուրնասիրպալ Պիտուրան գրաւելէն ետքը՝ այս շղթան կտրեց անցաւ։ Կուկունուի առման ատեն 700 հոգի ինկան։ Մանդու հարկ է որ Դիռայի եւ Արբակիի մէջտեղն ըլլայ, վասն զի Դիռայի սահմանակից Արբակիի բնակիչները Մատ-նի “ահեղ լերանց ծերպերն ապաւինեցան։„ Ասորեստանեայց բանակը Կարանիայէ՝ Ամադանի լերանց կրճերէն անցնելով Դիռա հասաւ։ Տարակոյս չկայ որ Ասուրնասիրպալայ արձանագրութեան Ամադանին նոյն է Տիգլաթպիլեսեր Ա.նոյ սեպա-

գրութեան Ամոզոնային հետ։ Ամազանի-լերանց կրծին բերանը, Դամղամուայի մօտ էր Բօզղանիշտօամ։ Ամազանիի[1] գիծից եւ այն՝ Տիգրիսի երկու կողմը կը բարձրանար Արչանիա։ Այս լերան մէջն էր Մոլլանօ փոքրիկ գաւառը, զոր Ասուրնասիրպալ գրաւելէ ետքը Զամբա մտաւ։ Համմէլ իրաւամբ Արկանիա լերան անունը նոյն կը համարի այսօրուան Արղն-Մադէն անուան հետ, որ Բալուի (Մուրադչայի վրայ) եւ Դիարբեկրի գրեթէ մէջտեղն է. Արղն անունով ուրիշ տեղ մ'ալ կայ՝ Արղն-Մադէնի հարաւային կողմը։ Առաջիկայ տողերով Դիռայի վրայ տրուած տեղեկութիւնները հիմ բռնելով կրնանք ըսել որ Դիռան փնտռելու ենք այսօրուան Սուպհանի մէջ որ Դիարբեկրի հիւսիսային կողմը դէպ ի Հազրու տարածուող երկիր մըն է. Արղնի = Արկանայի քովերն գտնուող լեռնադաւառն ալ Դիռայի. մասն էր։ Բելքի (ZDMG 51 էջ 559) Դիռայի Դաիրայի հետ նոյն ըլլալուն նկատմամբ ըրած խնդրոյն վրայ՝ տես վարը։

Աչբանի։ Ասուրնասիրպալ այստեղ հասաւ Պիտուրայէն. 1000 փախստականք "անկոխելի լերանց" մէջ սպաննուեցան. 2200 հոգի ալ Ասրեստանեայց ձեռքը գերի ինկան։ Այս երկրէն առնուած աւարն էր "արջառ ու ոչխար անհամար բազմութեամբ։" Ասկէ ետքը թագաւորն երկրին երկու ամրոցները զԻշխա եւ զՍալանիբա առաւ։ Արբակի "Կիրհիի մէջ" կը նշանակուի։ Մատնեան լերանց զանգուածն տար քովն կամ նոյն իսկ տար մէկ մասին մէջն էր։ Կոթողը կ'ըսէ թէ Արբակի՝ Ուլլիբայի ու Նիրբուի մէջտեղն է։ Դիռայի արեւմտեան կամ հիւսիս-արեւմտեան կողմը տեղաւորելու ենք Նիպուր-Պազատա լեռնադաւառը։

---

1 Սեպագիրները՝ Արկան-այի (= Արղն Մադէն) հանդէպ կը դնեն Ամազանու լեռը. արդ Մէհրաբ-դաղ կրնայ այս լեռն ըլլալ, ինչպէս Ռոսս (անդ, 37) ալ կ'ընդունի։ (Ողչէլէ+ Ե- յ--Եւլէ+)։

Նիպուր-Պազատու: Ասուրնասիրպալ թագաւորութեանն առաջին տարին այն քաղաքներուն վրայ քալեց, որոնք Նիպուր եւ Պազատա լերանց մէջտեղն էին. այս քաղաքներուն 20ն առաւ: Ասկէ ետքը Տիգրիսն անցնելով՝ Կումմուհի մտեցաւ: Սանհերիբ, որ թագաւորութեանը 5ր տարին այս կողմանց բազմաթիւ քաղաքները նուաճեց, միայն Նիպուր լեռը կը յիշէ: Ասուրնասիրպալայ յիշած քաղաքներն են. Ատկուն, Ուշհու, Պիլազի [1]: Սանհերիբի սեպագրութիւնները կը յիշեն. Տումուր-(ռուր?)րի, Շարում, Եզամա, Կիպշու, Հալբուդա, Կուա, Կանա: Պատմական արձանագրութեանց սովորական ստէրէոտիպ ու չոր ոճին հակառակ՝ այս լեռնագաւառին որպիսութիւնը ցուցընող տեղեկութիւնն այնպիսի կենդանի գոյներով է Սանհերիբի լեռնական թափառմանց ստորագրութեան մէջ, որ ակամայ Ալպեանց այց ելլող նորագոյն զբօսաշրջիկներու պատմութիւնները կը յիշեցընէ. "Այդ քաղաքաց . . ., որոնց բնակութիւնը թաչնոց թագաւորին՝ արծուին բունին պէս անմերձենալի Նիպուր լերանց գագաթն էր, լուծիս տակ չնուաճեցան:„ Յետոյ այսպէս կը շարունակուի. "Նիպուր լերանց ստորոտը վրանս հաստատեցի: Թիկնապահացս ընտիր գնդովն ու անխնայ բանակովս անոնց վրայ յարձակեցայ իբրեւ հզօր ցուլ վայրի. լերանց վիհերէն, արագասահ վտակներէն ու ցից լեռներէն դեսպակի մէջ նստած անցայ. ոտքով մագլցելով ելայ այն տեղերն, ուր դեսպակով ելլելն դժուարին էր. ուրմուի (տեսակ մ'այծեամ) մը նման երկնաբերձ սայրերն ելայ. հոն՝ ուր ծնկուըներս կռուան մը գտան հանգչելու, ժայռերու վրայ

---

[1] Հոմմէլ (Gesch. 436) սոսր հետ կը համեմատէ ժամանակակցական պատմութեան mâtPilaski (I, 29). բայց այս վերջինս հարկ է որ շատ աւելի դէպ ի արեւելք՝ փէպ բուն Ասորեստան դրուի. եւ հաւանականագոյնս mât Pi-la-as-ki կարդացուելու է:

նստայ․ Ծարաւիս դէմ ակն պաղ ջուր խմեցի․ լերանց սայրերուն վրայ զանոնք հալածեցի ու զանոնք պարտութեան մատնեցի։„ Եփրատայ արեւելեան եւ Ամդայ հիւսիսային կողմը գտնուող լերանց՝ գրեթէ այսօրուան Մեհրաբ-դաղի ու Ալընջըկ-դաղի տեղն է Նիպուր ու Պազատա. Եփրատայ մէկալ կողմը սահմանակից էր Կումմուհ — Կոմագենէ։ Դըլատր [1] Նիպուրը Ստրաբոնի (XI, էջ 142) Νίβαροσը կը համարի․ միայն թէ Νίβαρος Արարատի արեւելեան մէկ ճիւղն է՝ դէպ ի Մարաստան, եւ այս պատճառաւ ալ այստեղ չի կրնար նկատողութեան առնուիլ. Նմանապէս չի կրնար նկատողութեան առնուիլ Տոպեան արձանագրութեանց Նիպ---ին (Սէյս, No. LVI, 1; 4; 7; 8,) բուական որ Սէյսի այստեղն "Ռուանդիզի քով„ է ըսելն ուզիր ըլլայ։ Վերջապէս այստեղ Կիրհուի վրայ խօսուած ատեն՝ Բո-լխ-նէ քաղքէն եռքը յիշուած Իշդէնէբէ- (Նիրբուի մէջ) կիրճն ալ նկատողութեան առնելու է, ուր Կիրըքեան քաղաքներ կային։ Այս կրճին մէջէն կը հոսէր Լո-կի- գետը, որմէ առած է յայտնապէս Լուկիա քաղաքն իւր անունը։ Բուլխանին զմեզ Տուր-Աբդինի կողմերը կը բերէ, եւ Լուկիա ալ այն բազմաթիւ գետակներէն մէկը պիտի ըլլայ, որ հիւսիսէն գալով Տիգրիս կը վազեն։ Չկայ ամենեւին պատճառ մը՝ որ զմեզ արդարացընէ եթէ Հոմմէլի (Gesch. 563) հետ Լուկիան Արամնիոյ հիւսիսային կողմը փնտռենք եւ եթէ Լուկիայի մէջ տեսնել ուզենք Արամնիոյ մէկ բազուկը, որ Քորզենէ գաւառ կ'ոռոգէ եւ Պտղոմէոսի քով Լիւկոս կը կոչուի։ Բոլորովին սխալ է Լուկիա գետակին հաւասար դնել զՎերին-Զաբ, յուն. Լիւկոսը։ Այս կարծիքին դէմ առս Տիլէ (Gesch. 181։) Բուլխանիի կրճին հիւսիսային բերանն էր Արդ---դ---։

---

[1] Delattre, Le peuple et l'empire des Mèdes Bruxelles 1883, էջ 71.

Բելք (անդ. 561) կ'ըսէ թէ գրեթէ հաստատուն է Արդուպայի՝ Նիրբուի արեւմտեան կողմը՝ Եփրատայ մօտերն ըլլալը, "ապա թէ ոչ անըմբռնելի կը մնար թէ ինչպէս, կրնար Ասուրնասիրպալ Արդուպայի մէջ Հատեանց թագաւորին հարկն առնուլ, որ Եփրատայ արեւմտեան եզերքը կը բնակէր։"

Վինքլէր՝ (Altorientalische Forschungen, 2. Reihe, Bd. I, 122) իւր այն կարծիքը թէ Տումուր, Նիպուր եւ Ուկկու Կապպադովկիոյ մէջ՝ Հիլակու գաւառն ըլլան, ետ առած է (Untersuch., 192). սակայն յամենայն դէպս այս տեղերը Կապպադովկիոյ մօտերն էին, այս պատճառաւ ալ՝ (Sanh. Const. 16 եւն) Տումուրէ ետքն անմիջապէս Ուկկու, Հիլակկի եւ Տուլգարիմմու կը յիշուին։ Վինքլէր (անդ., 192) Ջէբէլ Ջուդին Նիպուր լեռը կը համարի։ Այս կերպով աւելի լաւ կը հասկցուի Տիգրիսէն անցնիլը, որ անմիջապէս ասոնց կը յաջորդէ։

Առաջիկայով յառաջ բերինք Կիրհուի վրայ եղած ամէն նիւթ՝ սեպագրութիւններէն հաւաքելով. այս նիւթին վրայ յենլով՝ Կիրհուի եւ Նիպուր-Պազատա լեռնագաւառին դրից նկատմամբ հետեւեալ եզրակացութեանց կը յանգինք։ Տիգրիսի հիւսիսային կողմը տարածուող լայնածաւալ դաշտն եւ Դիարբեկրի արեւմտեան կողմէն մինչեւ Եփրատ ձգուող լեռնագաւառն ընդհանրապէս կը ներկայացընեն Ասորեստանցւոց Կիրհուն ու Նիպուր-Պազատան։ Հարաւէն սահմանն էին Արամայեցւոց Բիտ-Զամանի, Շուպրիա, Նիրդուն եւ Նիրբու-կաշիարի տէրութիւնները. Վանայ լճին եւ Ուրարտուի կողմէն այն վայրենի լերանց շղթան, որ ընդհանրապէս Նող անուամբ ծանօթ է. արեւելքէն՝ Ուլլուբա. հիւսիսային կողմանէ՝ Արմանիաս. հիւսիս-արեւմտեան կողմը գտնուող Անզիտենէ-Հանձիթ նահանգը Կիրհուի մաս համարելու ենք։ Կիրհու անունը պահուած է Καρχαρωμάνի մէջ

(Ritter, Erdkunde XI, 151) եւ այսօրուան Կարճ (անգղ. Կուրճ) անուամբ տեղւոյն անուանը մէջ։ Կարճ այն տեղն է, ուր գտնուած է Ասուրնասիրպալայ կոթողը։ Համեմատելու ալ է קרדוי, որ Տալմուդի[1] մէջ կը գտնուի եւ դիրքն անծանօթ տեղ մըն է[2]։

Իբր յաւելուած հարկ է մանրամասն խօսիլ այստեղ Տիգլաթպիղեսեր Առաջնոյ արձանագրութեանց Կուրհիին (Կուրտի?) վրայ։ Տիգլաթպիղեսեր Առաջնոյ թագաւորութեան սկիզբները Կուրհեցիք իբր դաշնակից Կումմուհի Ասորեստա-

---

1 Neubauer, La géographie du Talmud, Paris 1868, p. 397.

2 Տալմուտի קרדוי — զոր Նէօյբաուէր արձանագրած է — համեմատելու նկատմամբ Նէօլդէքէ ինձ կը գրէ. «Դժուարին է թէ קרדוי Տալմուդի մէջ գտնուի։ Տալմուդ Նիսբէ קרדינאי ձեւն ունի, ուստի տեղւոյն անունը קרדין կամ קרדינא եղած պիտի ըլլայ։ Վերջին ձեւն ապահով է արաբերէն كرخينى (ասկէ ասորերէն ܟܪܟܐ)։ Այս տեղն Տաւուկայի եւ Արբէլայի մէջտեղն էր. Եակուտ իսկ կ՚ըսէ թէ ինքը նոյն տեղը՝ բարձր բլրան մը վրայ տեսած է։ Ուստի չի կրնար ըսուիլ թէ — Ասորեստանեայց Կիրհուին է։ Այս ալ կայ որ յետասորեստանեայ ժամանակները Կարհ ձեւը պատճառ կ՚ըլլայ միշտ ܟܪܟ = «քաղաքը, աչքի առջեւ ունենալու, որ շատ անգամ՝ սեռականով մը կամ առանց սեռականի իբրեւ տեղւոյ անուն (արաբացած՝ كرخ) կը գործածուի։» Ռոստ (Untersuch. 95) Զագրոս լերանց Κάρχοι ըսուած ցեղը՝ հին ժամանակներն դէպ ի հիւսիս տարածուած Կուրհիներու մնացորդը կը համարի։ Ասով կ՚ենթադրուի թէ ճիշդ է Κάρχοι — Կուրհիներու նոյն ըլլալն եւ վերջնականապէս կը մերժուի Կուրտի մոլորեցուցիչ ընթերցուածը կամ ասոնց Քրդերու հետ նոյն ըլլալը։ Հմմտ. վերջնոյս նկատմամբ Marquart: Philologus 55, 231 ծան. եւ M. Hartmann: Bothan 90–96։ — Rawlinson Նակշ-ի-Ռուստամի արձանագրութեան Կարկան՝ Պոլիբիոսի Κάρχοιին հետ համեմատած է. Հմմտ. Spiegel, Die altpers. Keilinschriften. ([illegible])

նեայց բանակներուն դէմ պատերազմեցան, բայց յաջողութիւն չունեցան։ Ասորեստանի թագաւորը՝ վերջէն Հարիա երկրին դէմ քալած ատենը՝ առիպուեցաւ նախ “բազմաթիւ Կուրհեցւոց„ բանակները նորէն նուաճել. որոշիչ ճակատն Ազուտարգիշ լերան վրայ տրուեցաւ։ Քիչ մ'ետքն անգամ մ'ալ Կուրհեցիներն Ասորեստանեայց թշնամիներուն շարքին մէջ՝ այսինքն Կիրհուի եւ քանի մը սահմանակից գաւառներուն հետ կը տեսնենք։ Քանի որ այս երկրին կամ ժողովրդեան անուան ընթերցման վրայ տիրող տարակոյսը փարատող ձայնական գրութիւն մը մէջտեղ չ'ելլեր, ամէնէն բանաւորն է Կու-րհի ընթերցուածն ընտրել, վասն զի ասորեստանեայ բազմաձայն նշանին սովորական եւ այս պատճառաւ ալ ամէնէն ընդունելի ձայնը հի է եւ ոչ թէ դի։ Ասորեստանի լեզուին հմուտներէն ոմանց Կու-րդի ընթերցումը նախամեծար համարելուն գլխաւոր պատճառն այն է որ իրենք Կու-րդիները նոյն կը դնեն Քրդաց աւազակ ու լեռնային ցեղին հետ. ցեղ մը՝ որ ամենահին ատեններէ ի վեր — դասականաց քով այս ցեղին անուանն այլեւայլ փոփոխութիւններ կրած է — սեպագրաց Կուրտիներուն վերագրելի գաւառին¹ մէջ բնիկ է՝ այսինքն Բոհտանի մէջ՝ Վանայ ծովուն հարաւային կողմէն մինչեւ Միջագետքի անապատին եզերքները. բայց ատի Քրդերը վաչկատուն վրանաբնակ կը բնակին Տիգրիսի եւ Մուրատ-չայի մէջերն եղած դաշտերն ու լեռները։ Ինչպէս սեպագրերէն կը տեսնուի՝ կէտի

---

¹ Այստեղ կը բնակին արեւմտեան Քրդերն. արեւելեանները Զագրոս լերանց մէջ կը բնակին եւ տարածուած են — թէեւ քանի մը տասնեակ տարիներէ ի վեր — մինչեւ Խորասան։ Հմմտ. Spiegel, Eranische Alterthumskunde I, 356 եւն. Kiepert, Lehrb. der alten Geogr. էջ 80, եւ նորերս Sachau, Zeitschr. f. Assyriol. XII, էջ 52 (“Տիգլաթպիլեսերայ Կու-րդիները բնականաբար *Γορδυαῖοι* են„)։

մը մէջ ալ Կօ—րճէ(տէ)ք եւ Քրդերն իրարու նման են. երկուքն ալ վաչկատուն պատերազմասէր ժողովրդեան պէս կ'ապրէին, որ սիրով կը մասնակցի դրացեաց արշաւանքներուն՝ իրեն իյնալի աւարին յոյսէն մղեալ։ Ճիշդ ալ Կօ—րճէ(տէ)ք վաչկատուն ըլլալուն հաստատուն բնակութիւն եւ պետական կազմակերպութիւն չունէին։ Այս տեսակէտէննայելով բոլորովին անընդունելի կ'երեւայ ինծի Տիլէի (Gesch. 162) սա խօսքը "եւ ոչ տեղէ մը յայտնի է Տիգղաթպիղեսերայ անոնց (Կուրհեցւոց) երկիրը հասած կամ անոնց քաղաքներէն մէկն առած ըլլալը։" Նմանապէս հարկ է մերժել Տիլէի իբր ենթադրութիւն ըսածը թէ Կուրտի (կամ Կուրհի) Կողքիսի հետ նոյն ըլլայ։ Քանի որ նորագոյն ձայնական դրութիւնք չեն ծանօթանար, Կօ—րդին Քրդերու հաւասար դնելը միայն նկատողութեան արժանի ենթադրութեան մ'արժէքն ունի. Կուրհի եւ Կուրտի ընթերցուածներն իրարու հետ կապող կամուրջ մը կրնայ ըլլալ սա ենթադրութիւնը թէ Կուրհի, Կուրտի եւ Կիրհի մի եւ նոյն անուան երկրորդական ձեւերն ըլլան[1]. բայց թէ հնութեան առեն՝ այն գաւառը տիրող ոչ-սեմական բարբառին մէջ կարելի՞ էր ձայնից այնպիսի փոփոխութիւն մը, դէթ մինչեւ հիմայ շատ դժուարին է ապացուցանել։ Բայց թէ Կիրհու եւ Կուրհի անուանց մէջ աղերս մը կար՝ կրնանք բաւական ստուգութեամբ ընդունիլ, նամանաւանդ որ ընդունելու ենք Կուրհեցւոց մասամբ Կիրհուի դետնոյն վրայ բնակիլը։ Թերեւս Կուրհեցիք առանձին ցեղ մ'են, որմէ առած է Կիրհու երկիրն իւր անունը[2]։

---

[1] Հոմմէլ (Gesch. 524) հարցական մ'աւելցնելով կ'ըսէ "Կուրքիացիք" (ըստ արտաբերութեան վերջին ժամանակաց՝ Քրդեր՞։)

[2] ZDMGի (Bd. 51, էջ 559) դեռ հիմայ լոյս տեսած չորրորդ տետրին մէջն Բելք կը գրէ. "Հազիւ կարելի է տարակուսիլ՝ Տիգղաթպիղեսեր Առաջնոյ քով (Col. II, 19)

## 4. Իզալա, Աշշա, Կաթթա, Կէդանէ, Դալ ու Չըձաճայէք, Նամդանա եւ Միրհէսա, Սահձէ, Դոխաէնէ, Տաւնաթէ, Ամադաթէ։

Արամեացւոց տէրութեանց եւ Կիրհուի կցելով՝ նկատողութեան առնունք հոս ուրիշ քանի մ'երկիրներ ալ, որ անոնց մօտերն են՝ հիւսիսային, հիւսիս-արեւելեան, արեւմտեան, հիւսիս-արեւմտեան եւ հարաւ-արեւմտեան կողմանէ։

Իզալա։ Ասուրնասիրպալ Սիւբնատի ակնաղբեր տեղն այս երկրին հարկն "արջառ, ոչխար եւ գինի" առնելէն ետքը՝ Կաշիարի գնաց։ Իզալայի գինին յայտնապէս կ'երեւայ թէ Ասորեստանեայց ու Բաբելացւոց առջեւ մեծ անուն ունէր, արդէն Նաբուքոդոնոսոր Բ. ի ատեն՝ ուրիշ երկիրներու գինիներուն քով՝ այս գինին Բաբելոնի Եսագիլ տաճարին տրուած նուէր մը կը ներկայանայ։ Ամենայն ապահովութեամբ Իզալան կրնանք Ամմիանոս Մարկելղինոսի (ԺԹ. 9) Իզալային հետ նոյն համարել։ Սովորաբար Իզալա կամ արաբ. Ջաբալ Էլ-Իզալ ըսելով կը հասկընային այսօրուան Տուր-Աբդինը (= Կաշիարի) ամբողջ տարածութեամբ։[1] Բայց արդէն Սոցին[2] այս կարծիքը տարակուսական համարելով՝ մտադիր ըրած էր որ Ասեմանիի ծաղկաքաղ հրատարակած մատենագիրներն Իզալան սովորաբար Մծբնայ մօտերը կը դնեն եւ Բարհեբրէոս ալ (Եկղ. պատմ. Ա, 83) Իզլա ըսելով կը հասկընայ Մերդինի չոր լեռը։ Ասորեստանեայ սեպագրութիւնք ալ կը սորվեցընեն որ Իզալա եւ

---

յիշուած Կարհէ(դէ)էին Կէրհէի հետ նոյն ըլլալուն վրայ"։ Շատ հաւանական է որ Կուրհի անունը Կիրհիի մէկ երկրորդական ձեւն է. միայն թէ Կուրհի երկիրն ու Կիրհի երկիրը մասամբ միայն զիրար կը ծածկեն։

1 Այսպէս՝ Hoffmann, Syrische Akten persischer Märtyrer էջ 167 եւ Ritter, Erdkunde, XI, 150.

2 ZDMG. XXXV, 238.

Տուր-Աբդին մի եւ նոյն բաները չեն. ինչու որ Ասուրնասիրպաղ Իզալայէն կը մեկնի, որպէս զի Կաշիարի հասնի։ Ուստի սեպագրերու Իզալան կըրնանք Մերդինի կողմերը հասկընալ. ամենեւին զարմանալի բան չէ այս երկրին՝ Հարկին՝ Տիգրիսի հիւսիսային կողմը Սուբնադի ակնաղբեր տեղը՝ Ասորեստանեայց Թագաւորին յանձնուիլը, վասն զի շատ սովորական է որ հեռաւոր երկիրներն որոշ տեղ մը կը բերէին իրենց հարկը, ուր Թագաւորն աւելի երկայն ատեն դադար կ՚առնուր. Հմմտ. Նմանօրինակ երեւոյթներ Զամուայի, Կիռուրիի եւն մէջ։

Աշշա։ Հուզիրինայի մէջ Ասուրնասիրպաղ Աշշայի հարկն առաւ, որուն իշխանն էր Գիրիդատի։ Ասկէ ետքն Հուզիրինայէ ճամբայ ելլելով գնաց "առաւ Եփրատայ եզերքները՝ դէտն ի վեր"[1], Թափառեցաւ Կուբբուի մէջ եւ Հատտէի առջեւ՝ Աշշայի եւ Կիրհուի քաղաքներն իջաւ։ Հաւանականագոյնս "Եփրատայ եզերքներ" ըսուածն Եփրատայ արեւելեան կողմը գնելու ենք՝ Մեհրաբդաղի հարաւակողմը։ Աշշա՝ Կուբբուի արեւելակողմն ու Արղնի հարաւակողմն էր, նմանապէս սահմանակից էր Կիրհուի եւ դէպ ի հարաւ մինչեւ Բիտ-Զամանի կը հասնէր. շատ ընդհանուր է եւ անորոշ "Հատտէի առջեւ" բացատրութիւնը՝ ի մասնաւորի Կիրհուի համար։ Աշշայի արեւմտեան կողմը, Եփրատայ արեւելակողմը՝ այսօրուան Կիրվանշիմէն-դաղ ըսուած տեղերն է Կ——ք——։ Սէյս[2] ասոր հետ կը համեմատէ Տոսպեան ար-

1 Այսպէս թարգմանած է ամէնէն լաւ՝ Delitsch, Handwörterbuch էջ 64. աշխարհագրական տեսակէտէ ընդունելի չէ այն մեկնութիւնն, որ կը տրուի այս տեղւոյն՝ ի KB I, 111։

2 JRAS XIV, 396։ "Գ——պ— ընթերցուածը բոլորովին ապահով չէ։ Կարելի է առաջին նշանը ——— համարելով Ս——պ— կարդալ։ Հմմտ. D. H. Müller, Denkschr. d. W. Akad. d. Wiss. 36, 1888, II. Abt. էջ 14։

ձանագրութեանց (No. XXXIII, 4; 10) Գուդդուն։ Քիչ մ՚աւելի դէպ ի հարաւ՝ Հալդեան տէրութեանց սահմաններուն կից՝ փնտռելու ենք Հուպըշքիան, ուր՝ բաց ի Աշշուրի վերոյիշեալ Գիրիդդատի իշխանէն, Սալլայի Խանի եւ Կումմուհի Կատազիլի իշխաններն իրենց հարկը յանձնեցին։ Հուպըշքիա Կիրուրի երկրին մէջն էր[1]։ Լեման (Zeitschr. f. Assyr. IX. 88) տար հետ կը նոյնացընէ Պլինիոսի (VI, 26; 41) Cepheniaն, Ստեփանոս Բիւզանդացւոյ *Κηφῆνεσ*ը։ Խաղդիք իրենց իշխանութիւնը դէպ ի հարաւ-արեւմուտք տարածած ատեն Կիպանի երկիրը նուաճեցին. սա կ՚ակնարկէ Ստեփանոս Բիւզանդացւոյ սա խօսքը. *Χαλδαῖοι* (հոս՝ Խաղդիք) *οἱ πρότερον Κηφῆνες.* Հարաւ-արեւմուտքէն սահմանակից էին Հալդեանց[2] բազմաթիւ լայնածաւալ տէրութիւնները. հարաւ-արեւելքէն՝ Արամէացւոց երկիրները, որ գաղթած կը բնակէին Կարաջադաղի կողերը եւ ի Տուր-Աբդին, Միջագետաց ամայի դաշտագետնոյն եզերքներուն վրայ, բայց ամէնէն աւելի Հաբուրի ու անոր բազուկներուն ջրարբի տեղերը։ Արամէացիք Հալդեանց երկիրներէն մինչեւ Սիջար լեռները տարածուած էին. սեպագրաց ծանօթ է այսպիսի արամէացի նահանգներու բազմութիւն մը, ինչպէս Բիթ-Հալուպե(ու)ն, Գարդիկաննու, Շադու, Սիրկի, Սուդդի, Հինդանի, Սուհի,

---

[1] Սա ալ յիշելու է որ Marquart (Philologus 55, 236) *Κηφῆνες* բառածները կը տեսնէ Եգիպտական արձանագրութեանց Կեփթօ կամ Կեֆթ բառածներուն մէջ, զորոնք Վ. Մ. Միւլլէր (Asien und Europa nach altägyp. Denkm. 338 եւն) Կիլիկիա կը փոխադրէ. Նոյն տեղը կը պարզաբանէ *Κηφῆνες* բառածներուն եւ Պերսէոսի անբրին՝ Կեփէոսի մէջ եղած աղերսը։ (Յա—Եպք ե Ո—ղդլիք։)

[2] Հմմտ. տար վրայ Դելիչի քով (Par. 263 եւն) գտնուած հատուածը, որ շատ աւելի կրնար ընդարձակուիլ՝ այն ատենէ ի վեր՝ սեպագրաց հիւսիսային Ասորւոց այն նահանգներուն վրայ մատակարարած նորագոյն նիւթերով։

Լաֆէ, որոնց վրայ մանրամասն խօսելու գիտաւորու-
թիւն չունիմ։

Նա-ւ ա-ա ըլՋա-կա-յ+ը։ Մէկ կողմանէ Կիրհու եւ Ուլլուբա Նալի "սորոտն„ էին, մէկալ կողմանէ Նալի երկայնութեանը կամ անոր երկրորդական ճիւղերուն վրայ էին ուրարտեան ամրութիւնք։ Անուանագիր ցանկը Տիգղաթպիղեսեր Գ.ի Նալ լեռներն բրած արշաւանքը 736ին կը դնէ։ Ասորեստանցիք Նալ ըսելով կը հասկընային¹ Վանայ ծովուն հարաւ-արեւմտեան կողմը գտնուող լեռնադաւառը, որ Ուրարտուն Կիրհուի դաշտէն կը բաժնէր։

Ո-ւլլ-ու-բ-ան դնելու ենք Նալի սահմաններուն մէջ կամ աւելի ճիշդ Նալի հարաւ-արեւմտեան կողին վրայ՝ Կիրհուի արեւելակողմը, Կաշիարիի հիւսիսային կողմը, գրեթէ Եէզիջանէ-սու եւ Բիտլիս-չայ գետերուն մէջտեղը։ Արդէն Ասուրնասիրպալ կը պատմէ, որ ինքը Աքգունուն, Ուլլիբան, Արբակին եւ Նիրբէն առած ու աւերած է։ Սաղմանասար Բ.ի ժամանակ ալ՝ 829ին արշաւանք մ'եղած է Ուլլուբայի վրայ։ Անուանագիր ցանկին վրայ հիմնուելով՝ 739ին դնելու ենք Տիգղաթպիղեսեր Գ.ի արշաւանքը, որուն մէջոցին, ինչպէս խեցետախտակ արձանագրութիւնը կ'ըսէ, Ուլլուբա երկիրն ու Կիրհու՝ ամբողջ տարածութեամբ նուաճուեցան։ Մտադիր ըլլալու է որ Tig. Pl.-I Iի մէջ Ուլլուբա Ուրարտուի քովն է եւ Pl.-I IIի մէջ կ'ըսուի թէ "Ուլլուբա եւ Կիրհու Նալի սորոտն„ էն։ Տիգղաթպիղեսեր Գ. Ուլլուբայի մէջ Աշ-ա-րէհլ-շ-ա(շ-ա) քաղաքը հիմնեց եւ պատերազմի ատեն բռնած գերիները հոս բնակեցուց։ Քիչ մը յառաջ յիշուած Աքքուննու բնականաբար Կիրհուի (կամ Արբակիի), Կաշիարի-Նիրբուի եւ Ուլլուբայի մօ-

1 Հմմտ. Rost, Die Keilschrifttexte Tiglath-Pilesers III, p. XXVII.

տեղն ըլլալու է. Նմանապէս այս տեղերն ըլլալու է Իւմմէր, զոր Տիգղաթպիղեսեր Գ. Նալի եւ Ուլլուբայի մէջտեղը կը յիշէ։ Ասորեստանեայց թագաւորն Իլխմիրի մէջ իւր արքունի արձանը կանգնել տուաւ։ Նալ լերանց մէկ մասին մէջ փնտռելու ենք Գոջէ երկիրն ու Ո–ձձ–– նահանգը։ Գաւիէ շատ լեռնոտ կը ստորագրուի։ "Անհարթ արահետներէն, դժուարին լեռնուղիներէն, որ ամէնի լերանց առջեւ ձգուած էին, իմ արքունական նախնիքներէս ոչ ոք անցած էր, կ'ըսէ Սանհերիբ։ Ասորեստանեայց այս թագաւորին ետ դարձած տեղը՝ Մանիաէ իշխանն իւր գլխաւոր քաղաքէն՝ Ուկկուէն փախաւ։ Ուկկու եւ ուրիշ 33 քաղաք պաշարուելէ ետքն առնուեցան։ Ասորեստանցւոց բանակն արքունի գանձն աւար առաւ, երկրին բնակիչները գերեց եւ էշ, արջառ ու ոչխար առաւ տարաւ։ Սանհերիբի արձանագրութիւններն անուամբ յառաջ կը բերեն Գաւիէի լեռներէն երկուքը՝ Ո–դ–– եւ Ա–ր––։ Ասորեստանցւոց բանակը քիչ մ'ատեն այս երկու "ահեղ լերանց" ստորոտը մնաց։ Ինչպէս ըսինք, երկրին գլխաւոր քաղաքն էր Ո–ձձ––։ Նամակներու մէջ շատ ստէպ կը յիշուի այն նահանգը, որուն մէջն է այս քաղաքը։ Ուրարտուի մէջ եւ Ուրարտուի քով կատարուող դէպքերուն վրայ տեղեկութիւն տուող այս նամակներուն մէջ կը դրուի Ո–ձ–, Ուրարտու, Ման, Գամիր ու Մուզասիր։ Այս երկիրներուն անմիջապէս քովն ըլլալու են Գաւիէ եւ Ուկկու, ըսենք՝ Վանայ լճին արեւմտեան կողմը՝ Բաղէշու, Խանդոշ ու Նիմրուդ լերանց մէջ. ասով շատ լաւ կը միաբանի՝ Սանհերիբի Գաւիէ յարձակելէ յառաջ՝ Նիբուր երկիրը (Մեհրաբ-դաղ) դադար առնուլը։ Սանհերիբ վերջին տեղը պատերազմը լմնցընելէն ետքը՝ Աիրհուի դաշտը կտրած ու Գաւիէ հասած ըլլալու է։

Հարաւէն Բիտ-Զամանիի եւ հիւսիսէն Էնզիի մէջտեղերը՝ Էգիլի լեռնոտ շրջակայքը դնելու ենք

Նամդրանոս եւ Միրճիոս նահանգներն, որ իբր վայ-րենի լեռնաշխարհ կը նկարագրուին։ Հիւսիսային կողմանէ Էնզիի կը կցէր Սու-ընձ կամ Սունի եր-կիրը։ Հմմտ. Տ եւ Ն տառերու փոփոխութեան համար՝ Միկտիարա եւ Նիկտիարա։ Սաղմանասար Բ. Էնզիէն մեկնելէն եւ Արսանիան անցնելէն ետքը՝ այնտեղ հասաւ։ Բոլոր երկիրն ամբողջապէս աւ-երելէն ետքը՝ Դախաենի "իջաւ"։ Սեւ կոթողը Սուհնիին Ալզիի եւ Դախաենիի միջատեղը կը դնէ։ Lay. 12, 19 Էնզիի եւ Մելիդի միջատեղ։ Այս եր-կրին ամէնէն կարեւոր քաղաքն էր Ուաշտալ, որ ամրութիւնն էր Սուսուա[1] "իշխանին"։ Սուհմէ Էն-զիի հիւսիսային ու Դախաենիի հարաւային կողմն էր՝ ուստի Արսանիոյ հիւսիսակողմը՝ Բալուի եւ Քարբերդի միջատեղերը՝ այսօրուան Ճենհարի կամ Դերսիմի մէջ. — Ամէնէն աւելի յարմար տեղն հոս է Դախաենիի վրայ խօսելու։

Դախաենի։ Այս երկիրը Նայիրիի 23 երկիրնե-րուն ցանկին մէջ ամէնէն վերջինն է։ Նայիրիի իշ-խաններուն Տիգղաթպիղեսեր Առաջնոյն հպատա-կելէն ետքը՝ հարկ եղաւ մասնաւոր կերպով Դախ-աենիի Սենի անուն թագաւորը նուաճել։ Սաղմա-նասար Բ. թագաւորութեան երրորդ տարին Սուհմէէ Դախաենի իջաւ եւ Դախաենին առնելէն ետքը Ուրարտու (Արզաշկու) գնաց, թագաւորու-թեանը 15ր տարին ընդհակառակն Ուրարտուէն՝ Եփրատայ աղբերականքէն՝ Դախաենի եկաւ, որուն Ասիա[2] անուն իշխանը հարկ տուաւ՝ ձի։ Շատ յարգի են հետեւեալ տեղեկութիւնները՝ Ultu Enzite adî Daiaëni, ultu Daiaëni adî... Ištu Melidi, adî Daiaëni, ištu Daiaëni adî Arzaškun, եւ "Նայ-իրիի ընդարձակ երկիրները՝ Նիմմէ մինչեւ Դախա-

[1] Նոյն անունն ունէր Սաղմանասար Բ.ի ատեն Կիր-զանի մէջ տիրող իշխանը։

[2] Հմմտ. A-sa-a-u, որ Կիրզանի իշխաններէն մէկուն անունն է։

ենի եւ վերին ծով։» Դախաենի Ասորեստանեայց առջեւ Նայիրիի երկիրներուն ամենէն հիւսիսայինն ու ամենէն հիւսիս-արեւմտեանն է եւ այս պատճառաւ ալ կը հակադրի Նիմմէի, որ ամենէն արեւելեանն է։ Տիգղաթպիղեսեր Առաջնոյն երկիրներու մեծ ցանկին մէջ ամենէն ետքը կը յիշուի։ Դարձեալ արձանագրութեանց ի վկայութիւն կոչուած տեղերէն կը տեսնուի որ Դախաենին փնտռելու ենք Արածանի-Մուրատ-չայի հիւսիսային, Ուրարտուի արեւմտեան կամ հիւսիս-արեւմտեան, Մելիտի արեւելեան կամ հիւսիս-արեւելեան, Ծուհմէի հիւսիսային կողմը։ Ուստի կը մղուինք Երզնկայի ու Կարնոյ մէջ եղած դաշտը, ուր եւ Վանեան սեպագրաց մէջ ստէպ յիշուած Դիաունին գտնելու ենք։ Արդէն Սէյս (JRAS XIV, 399) այս Դիաունին ասորեստանեայ Դախաենիի հետ նոյնացուցած է։ Կարելի է թէ այս երկիրն արեւելեան կողմանէ Կարնէն քիչ մ՚ալ անդին տարածուած ըլլայ, ինչպէս Բելք (ZDMG 51, 560) կը հաստեցնէ ժայռի արձանագրութենէն (Սէյս N<sup></sup>o. XXX), զոր Մենուաս իր «Դախաուս երկրին մէջ» կատարած յաղթութիւնները գովաբանելու համար կանգնել տուած էր՝ Դելիբաբայի (Կարնէն օրուան մը ճամբայ՝ դէպ ի արեւելք) մօտերը՝ Տիգրիսի վերին կողմը։ Սէյս[1] Դիաունեցւոց բնակավայրը քիչ մ՚աւելի դէպ ի հարաւ՝ Մանազկերտի մօտերը կը դնէ։[2]

---

1 Անդ, նմանապէս Հոմմէլ, Gesch. էջ 636, ծան. 3։

2 Թէ Τάοχοι (Հյ. Տայք) ըսուածներն Ասորեստանեայց եւ Նախահայոց արձանագրութեանց Դախա(ենի) = Դիա(ունի) ըսուածներուն հետ առնչութիւն մ՚ունին, ինչպէս Բելք (Belck und Lehmann, Chald. Forsch. Nr. 5: Verhandl. der Berl. Anthrop. Gesell. 1896, p. 320) կ՚ընդունի, նկատողութեան չեմ առնուր։ Քսենոփոն (Արշ. Դ. Է. 1) գիտէ թէ Τάοχοι ըսուածները՝ Բուն Հայաստանի հիւսիս-արեւմտեան սահմաններուն վրայ՝ Պոնտոսի ժողո-

Դախանի, Սուհմէ, եւ Էնզի նահանգներուն, որոնց վրայ խօսեցանք արդէն, նմանապէս եւ Ուրարտուի մօտերը գնելու ենք Տօ-նօ-բէն: Տիգղաթպիղեսեր Ա. այս երկիրը կը յիշէ իւր Նայիրեան երկիրներու ցանկին մէջ՝ Նիմմէի եւ Տուալիի մէջտեղը: Սաղմանասար Բ. Սուբնատի աղբիւրներէն գալով Տունիբունիի կրճերէն Ուրարտու կը մտնէ: Հաւանականագոյնս այս կրճերը Ներքին Հիւսիսակողմն էին եւ այսօրուան Գուլպ լեռնային երկրէն Ուրարտու (Տարոնոյ դաշտը) կը հանէին. առով մերձաւորապէս կ'որոշուի Տունուբէ-Տունիբունիի դիրքը: Եգիպտական բնագիրներուն մէջ հանդիպած Նահարինայի Տունեպը՝ Հալէպի մօտերը՝ անկարելի է մեր Տունուբէին հետ յարաբերութեան մէջ դնել[1], քանի որ Տունուբէ եւ Տունիբունի նոյն են. եթէ այս պարագան ալ չըլլար՝ դարձեալ այնու անկարելի է, որ ուրիշ դժուարութիւններ ալ կան: Նայիրիի մէջ Ուրարտուի սահմանին վրայ քաղաք մըն է Ամմաշտու-բէ՝ կրճով մը, զոր գործածած է Սաղմանասար Բ. Արսանիայէ անցնելէն ետքն՝ Ուրարտու արշաւած ատեն: Հաւանականօրէն այս կիրճը Տունուբէի կրճէն աւելի հիւսիսային էր՝ թերեւս այսօրուան Գինդ լեռնանահանգին մէջ՝ Գուլպի հիւսիս-արեւմտակողմը:

---

վուրդ մըն են, ուր այսօր ալ Տաւաս(Տաւս)կերտ մը կայ, որ "Տաւսի քաղաք,, ըսել է: Ուստի Դախանեցիք մէկալ ժողովրդոց (Տիբարացւոց, Մուքացւոց) պէս՝ յընթացս ժամանակաց նորանոր ազգերու գալովը՝ դէպ ի հիւսիս մղուած են:

1 Tiele, Gesch. 163.

## Գ.

## Վանայ եւ Ուրմիա լճերու մէջտեղն եւ այս լճերուն հիւսիսային կողմը գտնուող երկիրներ:

### 1. Ուրարտու, Մաննայեր եւ քանի մը շրջակայ գաւառներ:

Ա. Ուրարտու: Սեպագիր արձանագրութիւններու Ուրարտուի նկատմամբ մատակարարած նիւթը մերձաւորապէս հետեւեալն է:

Ուրարտու անունն առաջին անգամ Ասուրնասիրպալայ քով կը յիշուի, որ ինք զինքը "Սուբնատի աղբիւրէն մինչեւ Ուրարտու գտնուող երկիրները նուաճող" կ'անուանէ: Սաղմանասար Բ. շատ անգամ Ուրարտուի վրայ արշաւած է: Թագաւոր ըլլալուն պէս՝ Հուբուշկիայէն Ուրարտու անցաւ եւ՝ բաց ի երկրին Արամէ իշխանին Սուգունիա ամրոցէն՝ շրջակայ 14 քաղաք առնելէն ետքը "Նայիրիի ծովն" իջաւ: Դարձին՝ վերջին տեղէն Գուզան (Կիրզան) եկաւ: Թագաւորութեանն երրորդ տարին Սաղմանասար Գաիաենիէ Ուրարտու մտաւ: Արամէ թագաւորն Ադդուրի բռուած լեռներու մէջ՝ արիւնահեղ ճակատ մը մէջ յաղթուեցաւ եւ իւր մարդիկներէն 3400 հոգի կորանցուց: Ասորեստանցւոց բանակին բռած աւարն էր մեծաւ մասամբ "պատերազմի կառք, ձի, նժոյգ, ջորի եւ ցուլ:" Արամէ անմատչելի լեռները փախաւ, իսկ Սաղմանասար "վայրի ցուլի պէս" անոր երկիրը "կոխկռտեց" ու "աւերակ դարձուց:" Այս արշաւանքին ատենն էր, որ Ասորեստանցւոց թագաւորը կարգաւ Արզաշկուն, Երիտիա լեռն եւ Արամալէ ու Զանզիուհա քաղաքները շօշափեց: Կոթող-արձանագրութիւնը (I, 57) բաց մ'ունի, որմէ սանչափը միայն կ'իմացուի թէ Սաղմանասար

Ջանգլուենայէն ուրիշ ուրարտեան քաղաք մը մնաց, որուն անունը[1] կտրած ինկած է. այս քաղաքին իշխանը «կառքի ձի, արջառ եւ ոչխար» հարկ տուաւ: Ճամբուն շարունակութիւնը դէպ ի Նայիրեան ծով եւ Կիրզան՝ կը նոյնանայ Սաղմանասարի՝ թագաւորութեանը սկիզբն ըրած արշաւանքին ատեն բռնած ճամբուն հետ: Այստեղ նշանակելու ենք դեռ երեք արշաւանք ալ՝ Արամէի դէմ՝ իր թագաւորութեանը տասներորդ եւ մետասաներորդ տարիները: Վերջին արշաւանքին ատեն Ասորեստանցւոց բանակն ուրարտեան 100 քաղաք առաւ: Արամէ իր լեռնագաւառին թագըստոցներուն մէջ ամուր ապաստանարան մը փնտռեց ու գտաւ: Սաղմանասար թագաւորութեանը 15ր տարին Տունիբունիի կրճէն Ուրարտու մտաւ: Արամէի քաղաքները նուաճուեցան, որոնք անկէ մինչեւ Եփրատայ աղբիւրը կը գտնուէին: Կոթողը համառօտիւ իբրեւ նոյն տարուան մէկ դէպքը կ'արձանագրէ արշաւանք մը դէպ ի Տիգրիսի եւ Եփրատայ աղբիւրը. ինչպէս յառաջ ապացուցած եմ (էջ 12), այս արշաւանքով հասկցուածն է Նայիրի եւ Ուրարտու: Երբ Սաղմանասարի թագաւորութեան վերջերը՝ դարձեալ Ուրարտուի դէմ մղուած պատերազմներ կը յիշուին, այս միջոցին Արամէի գահին վրայ նստողն է Սեդուրի: Սեդուրիին յաջորդեց Տուրտան Դայեան-Աշուր, որ Բիտ-Զամանիէ գալով եւ Արսանիան անցնելով՝ Ամմաշտուբիի կրճէն Ուրարտու մտած էր: Չորս տարի վերջը՝ (13ր տարւոյն) Ասորեստանցւոց նոյն զօրապետը Հուբուշկիայէն ու Մուզասիրէն անցնելով՝ Ուրարտուի ամրոցներուն վրայ արշաւեց եւ 50 քաղաք կողոպտելէն ետքը մոխիր դարձուց: Անուանագիր ցանկն ալ կը յիշէ այս արշաւանքը: Տարակոյս չկայ որ Ուրարտուի դէմ եղած այս բազմաթիւ

1 . . . տուփա . . . միայն կը կարդացուի:

արշաւանքներուն արդիւնքն էր լոկ Ուրարտեան իշխանութեան առժամանակեայ ակարացումն եւ այս երկրին վերաբերեալ այլեւայլ գաւառներու ի հիմանց աւերումը. ոչ Սալմանասարի եւ ոչ ալ անոր անմիջնորդական յաջորդին ատեն կը նշմարուի Ասորեստանեայց "յաղթութեանց" մնայուն եւ որոշիչ արդիւնք մը. — մեր աղբիւրներուն միակողմանիութեան պատճառաւն ալ անկարելի է՝ այս յաղթութեանց որչափ արժէք ու տեւողութիւն ունենալը հաստատել: Անկէ սկսեալ մինչեւ Տիգղաթպիղեսեր Գ. եւ Սարգոն՝ անդադար աճելու վրայ է Ուրարտուի զօրութիւնը: Ուրարտուն է որ կ'ըլլայ Ասորեստանեայց ամէնէն վտանգաւոր ախոյեանը:

Սամսիրամման Բ.ի սպարապետը՝ Թագաւորին արշաւանքին երկրորդ տարին դէպ ի "արեւմտից ծովը" (Վանայ լիճ) արշաւեց եւ այն տեղ ի մէջ այլոց Ուշպինայի 11 ամրոցներն ու 200 քաղաքները նուաճեց, "անոնց պատերազմողները մեռցուց, անոնց աւարը, ստացուածքն ու ինչքը, անոնց աստուածները, որդիքը, աղջիկները վարեց տարաւ, անոնց քաղաքները կործանեց, աւերեց ու այրեց:" Բելք[1] իրաւամբ Ուշպինան Ուրարտեանց Իսպուինիս թագաւորը — Սարդուր Բ.ի որդին — կը համարի. կարծիք մը, որ մեծապէս կը համաձայնի ասորեստանցի ու վանեան իշխաններուն ժամանակագրութեան:

Ժամանակակից աղբիւրներու պակասութեան պատճառաւ՝ Սամսիրաման Բ.է մինչեւ Տիգղաթպիղեսեր Գ. եղած միջոցին համար ստիպուած ենք մի միայն անուանագիր ցանկին անբաւական տեղեկութեանցը դիմել: Անուանագիր ցանկը Սալմանասար Գ.ին (783—873) կարճատեւ թագաւորու-

1 Verhandl. d. Berl. Anthrop. Gesellschaft, 1894, S. 485.

թեան առեն վեց արշաւանք կը դնէ դէպ ի Ուրարտու՝ 781, 780, 779, 778, 776 եւ 774 տարիներուն եղած. տարակոյս չկայ որ այս արշաւանքներն աւազակ խմբերու ասպատակութիւններ են լոկ, անոր համար Ասորեստանցիներուն կողմանէ սարքուած, ինչպէս բանաւորապէս կրնանք ենթադրել, վասն զի Սաղմանասարի մահուընէն ի վեր Ուրարտու իւր գլխաւոր ախոյեանը տկարացընելու ամենէն յարմար միջոցը համարած էր՝ Ասորեստանի դէմ ուղղուած ամէն ապստամբական շարժման յայտնի կամ գաղտնի օգնել: Տարակոյս չկայ որ արեւելեան կողմն Ուրարտուի իշխանները ձեռնտու էին սահմանակից երկիրներուն՝ Հուբուշկիոյ, Մանի եւն ապստամբութեանց մեծագոյն մասին: Բայց ի մասնաւորի իրենց մտադրութիւնն ուղղած էին արեւմուտք, ուր մէկ կողմանէ Ասորեստանի նախկին թագաւորներուն Նայիրիի երկիրներուն մէջ հաստատած ասորեստանեայ գաղթականութեանց կարելի եղածին չափ վնասելու կ'աշխատէին եւ մէկալ կողմանէ Ասորեստանի դէմ բաւական յաջողութեամբ դաւ կը նիւթէին Հիւսիսային Ասորիքի եւ Փոքր Ասիոյ այն տէրութեանց մէջ, որոնք Ասորեստանի իշխանութեան տակ էին: Քաղաքական պայմաններն ու դիրքն արտաքոյ կարգի վտանգաւոր կերպարանք մ'առած էին Տիգղաթպիղեսեր Գ.ի առեն: Ասորեստան եւ Ուրարտու իրարու դէմ սաստիկ կռուեցան՝ երկու արշաւանքով (743 եւ 735). այս արշաւանքներով որոշիչ յաջողութիւն ունեցաւ Ասորեստան, բայց Վանայ, երկրին սրտին անառիկ ամրոցը արգելեց՝ ուրարտեան իշխանութեան վերջնական նուաճումը: Տիգղաթպիղեսեր Գ. 743ին Հիւսիսային Ասորիքի Արպադ ապստամբ քաղաքը պաշարելով զբաղած էր, երբ լուր առաւ թէ Ուրարտուի Սարդուրի իշխանը Նայիրիի կամ թերեւս նոյն իսկ բուն Ասորեստան ասպատակել կը սպառնայ: Այս լուրը պատճառ

եղաւ պաշարումը վերցնելու։ Անմիջապէս դէպ ի Հիւսիս յառաջացաւ եւ յաղթեցաւ՝ Հատեանց (Մելիդ, Կումմուհ, Գուրգում եւն) բանակներուն ստուարացած ուրարտեան զօրութիւնը ջախջախել՝ Կումմուհի մօտը կողմող Եփրատին ու Հալպի երկիրներուն մէջ։ Ասորեստանցւոց՝ այս յաղթութենէն ուրիշ օգուտներ քաղած ըլլալուն վրայ տեղեկութիւն չենք գտներ։ 743—38 ժամանակամիջոցը գրեթէ ամբողջապէս Ասորիքի եւ Փիւնիկէի դէմ ձեռք առնուած պատերազմական գործողութիւններով (պաշարումն եւ առումն Արպադայ եւն) լեցուած է։ Կրնանք հաստատապէս ընդունիլ թէ "արեւմտեան երկրին" ապստամբական շարժումներն Ուրարտուէն օգնութիւն կը գտնէին ու կ'արծարծուէին։ Տիգղաթպիլեսեր Գ. մարտկան ապստամբ գաւառները նուաճելէն (737) ետքը միայն ժամանակ գտաւ՝ Ուրարտուի դէմ մեծ արշաւանք մ'ընելու (735), որուն համարձակած չէր իր առաջին արշաւանքով (743) տարած յաղթութենէն ետքը, անշուշտ նկատելով որ իր բանակներն ալ ակարացած էին այն ատեն։ Հայոց անդընդաշատ լեռնաշխարհին դէմ ձեռնարկուած այս արշաւանքը տարակոյս չկայ որ Ասորեստանի պատերազմաց պատմութեան ընծայած ամէնէն նշանաւոր գործառնութիւններէն մէկն է, նկատելով որ այս արշաւանքին ատեն թագաւորն Ուրարտուն "վերէն մինչեւ վար" կամ "60 կրկնաժամ ցամաք" թափառեցաւ։ Սարդուրի՝ Տիգղաթպիլեսերայ պաշարած Տուրուշպա քաղաքը փախաւ։ "Անոր բազմաթիւ մարդիկները — այսպէս կը խօսին կաւածոյ երկու արձանագրութիւնները — անոնց դռներուն առջեւ սպաննեցի." անշուշտ ասով քաղաքին պարիսպներուն առջեւը տրուած ճակատ մը եւ կամ՝ պաշարուած ուրարտացի բանակներուն դուրս ելլելու փորձ ըրած ատենը տեղի ունեցած այլեւայլ խառնուրդները կ'ակնարկուին։ Արձանագրութիւն-

ները կ'ըսեն թէ այս արշաւանքին արդիւնքն եղաւ՝ Էնզիի եւ Ուրարտուի շատ մը քաղաքներուն Ասորեստանցւոց անցնիլը։ Մեծապէս նպաստած է Լէմանի Tiglathpileser III. und Sardur von Urartu (Chaldische Forschungen, Nr. 6 ի Verh. d. Berl. Anthrop. Gesellsch. 1896, S. 321—27) ուսումնասիրութիւնն ամբողջապէս ըմբռնելու՝ Հայաստանի Տիգղաթպիղեսեր Գ.ի հետ ունեցած յարաբերութիւնը ցուցընող սեպագիր տեղեկութիւնները, որոնց ժամանակագրական հաստատութիւնը՝ տարեգիր արձանագրութեանց աղճատ վիճակին ու գոյատանաց արձանագրութիւններուն անորոշութեան բերմամբ՝ կրնար մասամբ միայն անուանագիր ցանկէն առնուիլ։

Ուրարտուի Տիգղաթպիղեսեր Գ.է կրած պարտութիւններն որչափ ալ ծանր էին, սակայն, ինչպէս յայտնի կը տեսնուի, շուտով վրայ եկաւ եւ այնպէս ծաղկեցաւ որ Սարգոնի թագաւորութեան սկիզբներն Ուրարտու իւր զօրութեան զենիթն էր հասած։ Այս երկու պետութեանց մէջ ծագած վերջին ու մեծ որոշիչ պատերազմին մէջ Ուրարտու այնպէս չարաչար յաղթուեցաւ, որ ալ այնուհետեւ երկրորդ կարգի տէրութեանց շարքն անցնելով՝ չէր կրնար Ասորեստանի վտանգ սպառնալ։ Սարգոնի ատեն տեղի ունեցած պատահարներու վրայ հետեւեալ տեղեկութիւնները կը ստանանք՝ տարեգիր սեպագրութիւններէն եւ Խորսաբադի արձանագրութենէն. Ասորեստանցւոց թագաւորն իշխանութեանն երրորդ տարին՝ գերեվարութեամբ պատժեց Սուկկա, Բալա եւ Աբիտիկնա քաղաքները, վասն զի ասոնք Ուրարտուի Ուրսա իշխանին հետ դաշնակցութեան մէջ էին մտած։ Սարգոնի իշխանութեան վեցերորդ տարին՝ Ուրսա Ասորեստանի դէմ ուղղուած մեծ դաշնակցութիւն մը կազմեց Կարալլուի, Զիկկիրտուի եւ Մանի հետ (այսպէս տարեգիր արձանագրութիւն-

ները), նմանապէս Ուիշդիշի, Միսիանդիի, Տաբալի եւ Մուշկացւոց հետ (ըստ Խորսաբադի արձանագրութեան)։ Ման քիչ ատենէն ստիպուեցաւ Սարգոնի հպատակիլ. այս պատճառաւ Ուրսա՝ Մանէն դաւաճանութեանը համար վրէժ լուծելու դիտմամբ՝ Ասորեստանի թագաւորին իշխանութեանն եօթներորդ տարին մանեան 22 քաղաք առնելով թագաւորութեանը միացուց։ Յաջորդ տարին՝ Հիւսիսային եւ Հարաւային երկու ախոյեան պետութեանց մէջ որոշիչ մեծ ճակատ մը տեղի ունեցաւ Ուաուշ լեռը։ Ուրսա բոլորովին ջախջախեցաւ, Սարգոն գերեց 260 (Խորսաբադի արձանագրութեան համաձայն՝ "250„) զէր շ—–—–փիշ—– ամէլ—– շ– Բ–Ն–ԼԼԷՄշ–, "200 հոգի անոր ազգականներէն ու անոր հեծելազօրքը.„ իսկ ճակատէն ետքն Ասորեստանցւոց բանակը Ուրսայի պետութեան մասը կազմող 8 գաւառներուն 55 պատնիշապատ քաղաքներն ու 11 ամուր բերդ առաւ։ Ուրսա այս ձախող ճակատամարտէն ետքը միաձի փախաւ եւ՝ լսելով որ Սարգոն Մուզասիրն ալ նուաճեր է, որ իւր դաշնակիցն էր, յուսահատած ինկաւ իւր դաշոյն վրայ։ Ուրսայի յաջորդը՝ Արգիստիս, ինչպէս Խորսաբադի արձանագրութիւնը կ'ըսէ (113), Ասորեստանի ու Կումմուհի մէջ ծագած պատերազմին ատեն՝ վերջնոյն կողմն էր։ Սղոցածոյ արձանագրութիւնը (B, c, 12—26) պահած է մեզ Սարգոնի Ուրարտուէն հարկ առած առարկաներուն մէկ երկայն ցանկը, թէեւ քիչ մը վնասուած. այս ցանկին մէջ հանդիպող ականց եւ անուններուն մեծագոյն մասը դեռ մեզի անծանօթ է։

Սարգոնի ժամանակէն են այն պաշտօնական լուրերը (K. 194, 1080 եւ 5464,) զոր գրած են Սանհերիբ թագաժառանգն, որ Ուրարտուի սահմաններուն վրայ զօրապետ ըլլալով՝ այն տեղերը հաստատած էր իւր բնակութիւնը, եւ ուրիշ բար-

ձրաստիճան պաշտօնակալ մը։ Հաւանականագոյնս նմանապէս Սարգոնի ժամանակէն են Knudtz. Nr. 48 եւ 49 եւ Rm 2, 2. — Որոշ չենք կրնար ըսել թէ 705ին գրուած Պաշիբբելի գրութիւնը (Sm. 760) Սարգոնի վերջին օրերէ՞ն են թէ Սանհերիբի թագաւորութեան սկիզբներէն։ Թերեւս վերջին թագաւորին[1] ժամանակէն է K. 574 գրութիւնը, որուն մէջ Գաբբուանա Աշուր անունով մարդ մ՚Ասորեստանի թագաւորին տեղեկութիւն կու տայ հայկական յարաբերութեանց վրայ. Նմանապէս այս գրութեան մէջ կը խօսուի Ուրարտուի դէմ դրուած պահապան զօրաց վրայ։

Արձանագրութեանց մէջ ամենեւին տեղեկութիւն չենք գտներ Սանհերիբի Ուրարտու արշաւած ըլլալուն վրայ, թէեւ տարակոյս չկայ որ Ուրարտու բարեկամութեամբ չէր Ասորեստանի հետ, ինչու որ ինչպէս Ս. Գիրքը (Բ. Թագաւ. ԺԷ. 19) կը յիշատակէ, Սանհերիբը սպանողները Արարատ = Ուրարտու փախան։ Ընդհակառակն Ասարհադդոնի եւ Ասուրբանիպաղայ ատեն կ՚երեւայ թէ բարեկամական յարաբերութիւն կար այն երկու պետութեանց մէջ, ինչպէս պաշտօնական պատուիրակութիւններէ ալ կ՚ուզեն հետեւցընել։ Բարեկամութիւնը մատնանիշ ցուցընող իրողութիւն մըն է՝ Ասարհադդոնի Ուրարտուի Ուրսա իշխանին համաձայնութեամբը Շուպրիոյ ընդդամադիր իշխանին դէմ ըրած ձեռնարկութիւնը, երբ Շուպրիոյ իշխանն ասորեստանցի եւ ուրարտացի փախստական հպատակները չուզեց յանձնել՝ երեք անգամ ասոնց պահանջուելէն ետքն ալ։ Ասուրբանիպաղայ թագաւորութեան ատեն՝ Ուրարտուի նոյն ատենուան Սարդուրի թագաւորն՝ Ասորեստանեայց թագաւորին իր հպատակութիւնն անով կը ցուցընէ որ իր ողջոյնները կը խաւրէ անոր եւ

---

1 Հմմտ. Hommel, Gesch, 721, Ծան. 1։

ողջոյններուն ալ “Թանկագին պարգեւներ„ կ՚ընկերացընէ։

Հիմայ կ՚անցնիմ Ուրարտուի այն քաղաքներուն ու լեռներուն, որոնց կը հանդիպինք արձանագրութեանց մէջ։ Բայց որովհետեւ ասոնք կամ ամենեւին չեն կրնար նոյնացուիլ այսօրուան Հայաստանի քաղաքներուն կամ լեռներուն հետ եւ կամ մեծ դժուարութեամբ միայն կրնան նոյնացուիլ, ուստի կարելի չէ նոյն քաղաքները կամ լեռները աշխարհագրական տեսակէտէ խմբերու վերածել, այլ բաւականանալու ենք զանոնք ամէն մէկ թագաւորին արձանագրութեանցը համաձայն դասաւորելով։

Սաղմանասար Բ.ի առեն՝ Ուրարտուի Արամէ թագաւորին մայրաքաղաքն էր Արզաշկու-(նու-)։ Սաղմանասար Դախանենէ գալով՝ այս քաղաքը հասաւ։ Դիրքն որոշելու համար օգնութեան առնելու ենք սա տեղեկութիւնները. “Դիախանենէ մինչեւ Արզաշկուն, Արզաշկունէ մինչեւ Կիրզան„ (Lay. 13, 5; 6) եւ “Արզաշկունէ մինչեւ Կիրզան. Կիրզանէ մինչեւ Հուբուշկիա„ (Salm. Balaw. III, 2)։ Քաղաքին մօտերը կը բարձրանային Ադդուրի եւ Երիտիա լեռները։ Ադդուրիի կիրճերուն մէջ Արամու Սաղմանասար Բ.է յաղթուեցաւ։ Բելք[1] Ադդուրի անուան՝ Արարատայ հիւսիսային կողին վրայի Ակոռի գիւղին անուան հետ ունեցած նմանութեան մտադիր ընելով հետեւեալ եզրակացութեան կը յանգի. “Ասորեստանցին հարաւէն[2] կու գայ, ուստի Արամու կրնար միայն հիւսիսային լեռներու մէջ ապաւինիլ. իսկ հիւսիսային լեռներն արեւելեան կողմանէ “անմերձենալի„ Արարատով կը պատուին։„ Արդ՝ չե՞նք կրնար, ինչպէս կ՚ընէ Բելք, Ակոռի կամ Ադդուրի անուամբ մեր առ-

1 Verhandl. d. Berl. Anthrop. Gesellsch. 1893, S. 71.

2 Լաւագոյն՝ “հարաւային արեւմուտքէն„։

ջեւն ունենալ՝ Արարատի կամ ամբողջ լեռնաշղթային Ուրարտեանց քով սովորական եղած այս անուանակոչութիւնք։ Վերոյիշեալ տեղեկութիւնք ալ (Lay. 13, 5; 6 եւ Salm. Balaw. III, 2) տուանց դժուարութեան կրնան միաբանիլ այս տեսութեան հետ. Նմանապէս մեծ ծանրակշռութիւն չի կրնար ունենալ Ակոռի եւ Ադոռի անուան մէջ նի եւ դի գիրեր փոխանակելը, գիտնալով որ Ասորեստանցիք ճշդութեամբ չէին ներկայացըներ օտար ազգերու տեղեաց անունները։[1]

Սաղմանասար Երիտխա լերան վրայ իւր մէկ արձանը կանգնեց արձանագրութեամբ մը, որ իւր Ուրարտուի մէջ կատարած քաջութիւնները կ'անմահացըներ։ Բելք (Zeitschr. f. Assyriol. IX, 351) Երիտխան Վանայ ծովուն հիւսիսային կողմը գտնուող Սիփան-դաղը լերան հաւասար կը դնէ, թէեւ հարցական նշան մ'աւելցընելով։ Եթէ Ադդուրին Արարատն է, այն ատեն թերեւս Երիտխան է Արարատայ մօտերը գտնուող լեռներէն մէկը, ինչպէս Ալա-դաղ, Խորի-դաղ եւ կամ Պերլի-դաղ։ — Նմանապէս Արամուի մէկ թագաւորանիստ քաղաքն ալ էր Առնէ, զոր Սաղմանասար թագաւորութեանը 10ր տարին՝ ուրիշ շրջակայ 100 քաղաքներով մէկտեղ առաւ։ Հաւանականագոյնս Առնէն է այսօրուան Առնիսը՝ Վանայ լճին հիւսիսային-ա-

---

1 Ուսումնասիրութեանս շարունակութիւնը խմբագրութեան խաւրելէն քանի մ'օր յառաջ՝ յարմար առենին Պր. Ցիմմերն զիս մտադիր ըրաւ Ա. Բիլլէրբէքի Das Sandschak Suleimania und dessen persische Nachbarlandschaften zur babylonischen und assyrischen Zeit (Leipzig 1898) նոր լոյս տեսած գրքին։ Այսուհետեւ այս գիրքը վկայութեան կը կոչեմ համառօտիւ "Բիլլէրբէք" նշանակելով։ Բիլլէրբէք (էջ 152) Արզաշկուն Բինգէօլ-դաղի հարաւային-արեւելեան զառիթափին կամ կողին վրայ կը դնէ, եւ ըստ հետեւորդի Բինգէօլ-դաղի մէջ կը փնտռէ Ադդուրի կամ Երիտխա լեռները։

րեւելեան ծայրը՝ արեւելեան երկայնութեան 38° 58′ 20″ եւ հիւսիսային լայնութեան 43° 28′ 50″ աստիճաններուն վրայ։ Այս Առնիս անունը կը տեսնենք Սիմէոն եպիսկոպոսի կազմած 1653 տարւոյ քաղդէական եպիսկոպոսութեանց ցանկին մէջ, եւ այն՝ Վանէն ետքն երկրորդ տեղը բռնած[1]։ — Երիտիս լերանց մօտերն էր Արտամէտ քաղաքն, որ թերեւս իր անունն Արամէ թագաւորէն առած ըլլայ. այս պարագայի մէջ լէ (լէ) Վաննեանց ածանցիչ մէկ մասնիկը կ՚ըլլայ։ Սաղմանասար Արամալէէն Զանզիունա եւ Արամուի Արզաշկուն քաղաքը հասաւ, զոր թագաւորութեանը 11ր տարին առաւ։ — Սուգունիա, Արամուի մէկ բերդը, ուր մտաւ Սաղմանասար Հուբուշկիայէն գալով եւ ասկէ Նայիրեան ծովն "իջաւ[2]"։

Արձանագրութիւնք առաջին անգամ Տիգղաթպիղեսեր Գ.ի ատեն կը յիշեն Տուրուշպա քաղաքը, որ վերջէն Վանեան իշխանաց գլխաւոր քաղաքն եղաւ։

Շատ հաւանական է որ Տուրուշպան Վանեան արձանագրութեանց Տուսպան է։ Դասականաց քով Վանայ լիճը Θωσπῖτις λίμνη (Պտղոմ. Ե. 13, 7. Ը. 19, 22), ή Θωπῖτις (Ստրաբոն, ԺԱ. էջ 529. ԺԶ. էջ 746), Thospites Lacus (Պլին. Զ. 7, 31) կը կոչուի[3] եւ այս անուններուն մէջ Տուսպան ճանչնալը դժուար չէ. ըստ այսմ տարակոյս չկայ որ Տուրուշպա-Տուսպան այսօրուան Վան քաղաքին երկրին վրայ փնտռելու ենք։ Հայք

---

1 Հմմտ. Hoffmann, Syrische Akten persischer Märtyrer, S. 204. — Բիլլէրբէք (էջ 152) Առնէն Պէրիչայի Մուրադ-չայ (Արսանիա) թափուած տեղւոյն մօտերը կը դնէ՝ առանց բանաւոր պատճառ մը յառաջ բերելու։

2 Բիլլէրբէք (էջ 152). "Սուգունիա՝ հաւանականագոյնս Բոհտանի աղբիւրներուն սահմանին մէջ։"

3 Այս լճին վրայի քաղաքը Պտղոմէոսէն (Ե. 13, 19, Ը. 19, 12) ἣ Θωσπία կը կոչուի։

այսօր ալ Վանայ լիճը "Ծով Տոսպայ" կ'անուանեն. տոր կը համապատասխանէ Տալմուդի[1] תוספאת։ Ասորեստանի թագաւորներուն մէջէն միայն Տիգղաթպիղեսեր Գ. մինչեւ Տուրուշպա յառաջացած է։ Տիգղաթպիղեսեր քաղաքը յարձակմամբ առած ու մէջն իւր արքայական անդրին կանգնած է։ — Բելք, որ այն կողմերը լաւ կը ճանչնայ, կ'ըսէ[2] թէ Ասորեստանցւոց բանակ մը միայն հիւսիսէն՝ Սիփան-դաղի եւ Վանայ լճին երկայնութեամբը գալով կրնար Վան հասնիլ։ Բայց որովհետեւ հիւսիսէն գալով ուղղակի յարձակում ընելու համար՝ անհրաժեշտ հարկ էր նախ Վանը պաշտպանող բերդերուն ահագին շղթայ մ'ամբողջապէս նուաճել, ուստի Բելքի հետ ընդունելու ենք որ հաւանականագոյնս Ասորեստանցւոց բանակը մեծ շրջան մ'ընելով նոյն բերդերուն սահմանէն հեռացաւ եւ անցաւ ամրոցին արեւելեան կողմէն ու Վարագայ լերան արեւելեան կողին երկայնութեամբը Հայոց Ձորը մտաւ, որպէս զի այնուհետեւ հարաւային կողմանէ յարձակմամբ առնու՝ այս կողմանէ բոլորովին անպաշտպան Տոսպ քաղաքը։ Որչափ ալ համոզեցուցիչ են Բելքի այս մանրամասն տեղեկութիւնները, սակայն Ասորեստանցւոց ուղղակի հարաւէն Տոսպայ վրայ քալած ըլլալը բոլորովին անկարելի չէ, ինչու որ գէթ երկու ճամբայ ծանօթ են, որ Հակկիարի լեռնաշխարհին վրայէն հոս կը հանեն։ Մեծ Զաբի վրայի ճալի կողմերէն երկու պողոտայ մինչեւ Ջուլամերկ կը հանեն. այս պողոտաներէն մէկը Ջուլամերկէն Վան կը տանի Բաշկալէի վրայէն, իսկ երկրորդը՝ Մոկսոստանի վրայէն։ Ճիշդ ու մանրամասն տեղեկութիւն կու տայ այս երկու պողոտաներուն վրայ Մ.

1 Neubauer, La géographie du Talmud, p. 370.

2 Zeitschr. f. Assyriol. IX, 350 ff.; Հմմտ. Lehmann, Verhandl. d. Berl. Anthrop. Gesellsch. 1896, S. 327.

Հոփման (Bohtan: Mittheilungen d. Vorderasiat. Gesellsch. 1897, I, S. 80—81), ուր յառաջ կը բերուի Բիլլերբեքի մէկ կարծիքն ալ, որ Հոփմանի բանծներուն հետ կը միաբանի: Հարաւէն եղած արշաւանք մը հնարաւոր համարելով, որուն վրայ հիմնուած է Տուրուշպայի արշաւանքին նկատմամբ Ռոստի ունեցած տեսութիւնը (Rost, Tiglath-pileser III. p. XXVIII), կը ցրին յեականս Լեհմանի (Verh. d. Berl. Anthrop. Gesellsch. 1896, S. 327) Ռոստի դէմ յառաջ բերած պայքարական դիտողութիւնները: Տիգղաթպիղեսերի կործանած հին քաղաքը հին բերդին, այսօրուան միջնաբերդին ճիշտ ոտքը չէր, այլ անկէ իբր 5 կիլոմետր հեռու՝ դէպ ի հարաւ: «Հին ատեններն անկարելի էր որեւիցէ կողմէ մը Տոսպայ ժայռաբերդին մօտենալ: Եթէ կարելի էր այս բերդն առնուլ, միայն սովով հնարաւոր էր անձնատուր ըլլալու ստիպել. բայց այս ալ շատ դժուարին էր, վասն զի բերդին ժայռերը մինչեւ Վանայ ծովն հասնելով՝ բերդը պաշտպանողները դիւրաւ կրնային հաղորդակցութիւն ունենալ ծովեզերեայ մէկալ գաւառներուն հետ» (Բելք, անդ էջ 353): Ուստի կրնանք որոշ ըսել թէ Ասորեստանցւոց թագաւորն յաջողած չէ միջնաբերդը նուաճել: Երիմենասի որդին Ռուսաս Ա., ինչպէս բնիկ (հին-հայկական) արձանագրութիւններէն կը տեսնուի, ձեռնարկեց կործանած իշխանանիստ քաղաքն երկրորդ անգամ շինելու. բայց քաղաքը նախկին տեղը չշինեց, այլ Թոփրաքկալէ ժայռին ստորոտը[1] (նախկին տեղէն 4 կիլոմ. դէպ ի արեւելք):

Տիգղաթպիղեսեր Գ. բաց ի Տուրուշպայէ Ուրարտուի հետեւեալ քաղաքներն ալ առած է եւ, ինչպէս ինքը կ'ըսէ, Ասորեստանեայց քաղաք ըրած,

---

[1] Այսպէս՝ Բելքի քննութեանց համաձայն. անդ էջ 353:

Թէեւ քիչ մը ժամանակուան համար. Բի(կաշ)-տիաաա, Պարիշա[1], Տաշտահա, Մանդա, Սարփաստի. հաւանականագոյնս այս քաղաքը կառուցած է հին Հայոց Թագաւորներէն մէկը՝ Սարտաւուր անուանով —, Դիաալլանալ, Սիկիբաա[2], Աշուրզալի, Բաբաադդա, Լաաախա, ասոր հետ նոյն ըլլալու է ասորեան արձանագրութեանց Ուլլաախան եւ Լաասաան կամ Լաասաէն —, Կաա(Բի)ախա, Անդանաա, եթէ Իլ(ու)դանաա կարդանք, կրնայ վանեան արձանագրութեանց Ալզանիին հետ առնչութիւն ունենալ —, Բենդաա: Կ'ըսուի թէ այս ամէն տեղերը "Ուրարտուի բերդեր" են:

Կցելու ենք հոս քաղաքաց այն ցանկերը, զորոնք Տիգղաթպիղեսեր Գ.ի կուածոյ Ա. արձանագրութիւնն եւ ուրիշ կուածոյ արձանագրութեան մը (III R 10, Nr. 3) մէկ հատակտորը կ'ընծայեն. Թէեւ այս արձանագրութեանց մէջ Էնզիի վերաբերեալ տեղեր ալ կան, սակայն զասոնք իրարմէ զանազանել անկարելի է: Կուածոյ Ա. արձանագրութիւնը հետեւեալ ցանկը կ'ընծայէ. Ենաա, Սաաաա, Լուբզա, Լուկիա, Տիգղաթպիղեսերայ արձանագրութիւնն Ելուկիա ունի: Նմանութիւնները տես վարը: Տիգղաթպիղեսերայ տարեգրութեանց մէջ այս տեղը Ուլլուի եւ Աբրանիա քաղաքներուն մէջտեղն է: Համեմատէ համանուն Լուկիա գետը (էջ 49): Շիխիաա, Ուշուանաա, Ուշաաաա, Աշիբի, Կիդբուլա՝ "մինչեւ Բիրդաշա լեռը" յաւելուածով: Ռոստ (Die Inschriften Tiglathpilesers III. S.XXVII) կը կարծէ թէ այս լեռը Վանայ լճին հիւսիս-արեւմտեան կողմը բարձրացող Ջեբել-Նիմրուդ լերան հետ նոյն է. բայց հաստատուն կռուան չըլլալով՝ նոյն իրաւամբ կրնանք ըսել թէ Վանայ լճին մօտերը գտնուող ուրիշ լերան մը հետ ալ կրնայ նոյն

[1] Knudtzon ի BA II, 306ff. [illegible]:

[2] Նոյն, անդ կ'ըսէ թէ աա խնդրական է:

ըլլալ Բիրդաշու: — Կուտա, որ Տիգղ. տարեգրու-թեանց մէջ՝ Լուկադանշայի եւ Ելուգիայի մէջտե-ղերն է: — Ուրա, Արմա, Տաբա, Ուալլիա՝ "ադի Պուրատ" յաւելուածով, Կիլաաա, Դիօաքիլ, Աք-բինիր, Հարբիլաինա — այս անունով տեղ մ'ալ կայ Մարաց մէջ —, Տոնիր, Իդլիդա:

Ուրարտուի կը վերաբերէին Տիգղաթպիղե-սերայ տարեգրութեանց մէջ (180—181) յիշուած հետեւեալ քաղաքները. Դոխնանշու, Սոկկա, Իդդա, Ելխանշու, ասոնց կը յաջորդէ վերյիշեալ Կուտա, եւ ապա Ելուգիա, Դանիա, Դանդխան, Ուլլուի: Ասոնց կը յաջորդեն վերյիշեալ Լուսկիա եւ Աքբա-նիա անունով երկու տեղերը, ի վերջոյ Եւաա: Տիգ-ղաթպիղեսեր Գ. այս ամէն քաղաքները (Դախ-կանշուէ սկսեալ ...) առաւ եւ "900 գերի, 150 արջառ, 1000 ոչխար, ձի, ջորի եւ էշ" ձեռք ձգեց:

Վերջապէս Kl. I. II. մեծապէս վնասուած արձանագրութենէն (1—21) յառաջ բերելու ենք ուրարտեան քաղաքաց հետեւեալ անունները. Կուխուասանշու, Ուրմիաշէ, Տուարբիդու, Լոգուսա: Ամենեւին կասկած չունինք թէ ուր փնտռելու ենք Կուլլիմա գետը, որ որոշ կերպով "իւր (այսինքն՝ Ուրարտուի) գետը" կը կոչուի: Ուրարտուի կը վե-րաբերէր կամ գէթ անոր մօտերն էր Մուսասնիա՝ Ուրա քաղաքով:

Սարգոնի արձանագրութիւնները, բայց ի մանաւորի տարեգրութիւնները հետեւեալ նիւթը կը մատակարարեն. Ուաուշ, այս անմերձենալի լեռն-աշխարհը նետուեցաւ Մանի Ասա իշխանին մար-մինը. Նմանապէս այստեղ չարաչար յաղթուեցաւ Ուրարտուի Ուրսա իշխանը: Սարգոն իւր թագա-ւորութեանը 8ր տարին ըրած արշաւանքին առեն այս լերանց 5 ամրոցներն եւ ուրիշ 30 քաղաքներն առաւ: Այս լեռն Ուրարտուի եւ Մանի մէջ սահ-մանաբաշխ լեռ էր եւ երկու երկիրներուն մէջ ալ կ'երկննար: — Կիշղուլ, այս լերան ստորոտն էր

Ուշնու քաղաքը։ — Արշաբիա. Բելքեն (ZDMG. 48, S. 268, ծան. 2.) իրաւամբ կը մերժէ Վինքլէրի այն առաջարկութիւնը, որ Արշաբի(ա)ն Էլ-Ամառնայի բնագրին Ար(շ)ապխին հետ կ'ուզէ նոյնացընել։ Նորէն Բելքեն (WZKM X, 11 ff.) կը պաշտպանէ Ար(շ)ա, Ար(շ)աի ընթերցուածը՝ Ար(շ)աբի ընթերցուածին տեղ։ — Արմարիլի, Ուբիանդա, Արսի, Արշանի (?), Արաիդ՝ որ "նահանգ մըն է ծովուն եզերքը" այսինքն՝ Վանայ լճին։ Հմմտ. Արմաւիր վարը։ — Կադուլանի, այս քաղաքն եւ ուրիշ քաղաք մըն ալ, որուն անունէն Ար . . . . . . ու միայն մնացած է, Արսի . . . եւ Արզաւնիա (?) լերանց վրայ էին։ Սարգոնի արձանագրութեանց 111—112 տեղը. յիշուած քաղաքները Մանի՞ թէ Ուրարտուի կը վերաբերէին, կարելի չէ որոշել. այնտեղ յիշուած անուններն են. Ուշկայա՝ Զարան . . . ի կիրճին մէջ ամրութիւն մը։ Անընթեռնլի եղած [. . . բիր(?)նա] անունէ մ'եւաքը կու գան Մուլլա եւ Դիրբիգիլիրախադա։

Հոս կը սպառի ասորեստանեայ արձանագրութեանց Ուրարտուի վրայ տուած նիւթը։ Յաջորդ տողերը համառօտիւ պիտի լուսաբանեն թէ այս նիւթէն ինչ արդիւնքներ հանելու է՝ գլխաւորաբար աշխարհագրական տեսակէտէ։

Պատմութեան լոյսը նախ եւ յառաջ կը ծագի Վանայ լճին շրջակայից վրայ, որ մասն է այն լայնածաւալ լեռնաշխարհին՝ որ ինչպէս վերին Եփրատայ ու Տիգրիսի, նմանապէս Երասխայ երկու կողմերը տարածուելով՝ այսօր Հայաստան անունը կը կրէ։ Վանայ ծովուն եզերքներուն վրայ է որ կը գտնենք նշանաւոր պետութեան մը կեդրոնը, որուն վրայ բաց ի ցարդ յիշուած ասորեստանեայ տեպագրերէն՝ բնիկ բեւեռագիրներն ալ տեղեկութիւն կու տան։ Հին ժամանակները, այսպէս Տիգլաթպիլեսեր Առաջնոյ ատենները, Ասորեստանցիք Նայիրի ըսելով Վանայ շրջականերն ալ կը հասկը-

նային։ Ասսուրնասիրպաղայ ատեններէն սկսեալ, կամ կարելի է թէ նախահայկական ըսուած պետութեան այս ժամանակները հաստատուելովն է, որ երբեւան կ'ելլէ Ուրարտու անունը, որ ալ այնուհետեւ Նայիրի անուան հետ չի շփոթուիր։ Հին կտակարանն Ուրարտուի համազօր կը դնէ אֲרָרָט (Ծնն. ը. 4, Ես. լէ. 38, Բ. Թագ. ժթ. 37,) եւ այն, ինչպէս արդէն Կիպերտ շեշտած է, միշտ իբրեւ երկրի մ'անուն եւ ոչ իբրեւ լերան անուն, ինչպէս յառաջ הָרֵי אֲרָרָט ին անորոշ թարգմանութենէն („Արարատ լեռ„ փոխանակ՝ „Արարատայ լեռներէն մէկը„) կը հետեւցընէին։ Ս. Գիրքն ուրիշ տեղեր ալ Արարատն երկիր կը նկատէ, այսպէս Բ. Թագ. ժթ. 37 եւ Ես. լէ. 38 (אֶרֶץ։) Երեմիայի մէջ (ծա. 27) Արարատը թագաւորութիւն (מַמְלְכוֹת) է, ինչպէս եւ Միննի եւ Աշքանազ։ Այս մեր բանին ապացոյց է Վուլգատայի եւ Յովսեպոսի (Հնութ. Հր. Ա. 3, 5) Արարատը Հայք կամ Հայաստան թարգմանելը։ Նոյնպէս Մ. Խորենացի (Ա. ժե), Եւսեբիոս (Պատր. աւետ. Թ. ժբ, 19) եւ Ս. Հերոնիմոս (ի Մեկն. Ես. լէ. 36.) „Արարատը Հայաստանի մէջ դաշտային գաւառ մըն է, որմէ կ'անցնի Երասխը։„ Իրապէս ալ շատ հաւանական է որ Արարատ = Ուրարտու անունը նախնաբար Վանայ լճին արեւելակողմը՝ Հայաստանի մէկ մասին անունն էր, մերձաւորապէս այն երկրին, որ միջին Երասխայ վրայ է եւ այսօր ալ Այրարատ կը կոչուի. ըստ այսմ Վանայ ծովուն եզերքները բնակողներն եկան՝ հիւսիսարեւելքէն Ուրարտացւոց յառաջանալովը։ Շատոնց եւ իրաւամբ Արարատ-Ուրարտուի հաւասար դրած են Հերոդոտոսի (Գ. 94, Է. 79) Ἀλαρόδιοι անուանածները։ Բայց որովհետեւ Հերոդոտոս կ'ըսէ թէ սոնք պոնտացի ժողովուրդ մըն են, որ

Մատանացւոց եւ Սասպիրացւոց հետ՝ Պարսից պետութեան հարկատու 18ր շրջանակը կը կազմէին, ուստի բնելու ենք թէ ասոնք հին Ուրարտացւոց Թագորդներն են՝ հնդիկ-եւրոպացի Հայոց խուժելովը՝ դէպ ի հիւսիս մղուած։ Հին-պարսկական սեպագրերու բաբելական թարգմանութեան մէջ, ինչպէս կը սպասուէր, Ուրարտու կը համապատասխանէ պարսիկ բնագրին Արմինային կամ Արմանիյային։ Այստեղ առաջին անգամ իբրեւ երկիր յիշուած Հայաստանը սկզբնաբար իւր մէջը կ'ամփոփէր միայն Ուրարտուի արեւմտեան կողմը գտնուող երկիրը կամ գաստականաց (Հերոդ. Ա. 72; 104. Գ. 93. Ե. 52) Փոքր-Հայքը[1]։ Հոմմէլ Gesch. 601) Արմէնիա անունը հին Ուրարտացւոց Արամէ իշխանին անունէն կը հանէ (որ սղմամբն ու նի մասնկան յաւելմամբը)։ Կրնանք ընդունիլ թէ Արամէ քաջ ու բազմարդիւն իշխանին՝ ժողովրդեան մէջ տակաւին կենդանի յիշատակն առիթ եղած է աւանդութեան գեղազարդուելուն. աւանդութիւն մը, որ ըստ պատշաճի գնահատուելով՝ հին-հայկական քաղաքակրթութեան սկզբնաւորութիւնը սեմեանց հնութեան, բայց ի մասնաւորի ասորեստանեայ ու հրէական պատմութեան հետ կը կապէ եւ կը յիշէ թէ երկրին ամէնէն հին իշխաններէն մէկն է Արամէ, որ բազմայաղթ արշաւանքներով իր երկիրն ընդարձակած ըլլայ դէպ ի Մարաստան եւ Կապպադովկիա եւ իւր ճոխութեամբն իր անունը տուած երկրին։ Հնոց՝ Արմէնիա անունն *Հար-մէնիա ենթադրելով՝ "Մինիի լեռ կամ լեռնագաւառ„ մեկնելը ժողովրդական ստուգաբանութիւն է հրէական-քրիստոնէական ազդեցութեամբ յառաջ եկած[2]։ Թերեւս Արմէնիա

---

1 Համմ. E. Meyer, Gesch. d. Altert. I, 296.

2 Ասոր դէմ արդէն Սէյս խօսած է ի Zeitschr. f. Assyriol. IV, 384.

անուան գիտնականներէն կազմուած ըլլալովն է որ այս անունն երբեք ազգային եղած չէ[1]։ Ինչպէս յայտնի է, Հայք իրենց երկիրը Հայաստան[2] կ՚անուանեն՝ իրենց նախահօր Հայկայ անուամբը, որուն որդին է կ՚ըսուի Արմենակ, Այրարատայ առաջին թագաւորը։ Բնիկ հին-հայկական արձանագրութեանց մէջ Վանեան պետութեան անունն է Բիաինա, որուն մէջ ուզած են տեսնել Պտղոմէոսի (Ե. 12, 21) *Βουάνα*ն՝ ենթադրելով թէ այս վերջինս այսօրուան Վանին կը համապատասխանէ. բայց անոր համար տարակուսական եղած է Բիաինա = *Βουάνα* = Վան անուններուն նոյն ըլլալը, վասն զի Պտղոմէոս այսօրուան Վանը *Θωσπία* (տես էջ 72) կ՚անուանէ։ Ընդհակառակն ինծի բաւական ապահով կ՚երեւայ թէ Կեդրենոսի Բ. 774 (Migne, Patrol. հտ. 122, § 580) Մայրաքաղաք Վասպուրականի (*μητρόπολις τοῦ Βασπαρακάν*) անուանած *Ἴβαν*ին հետ նոյն է Նախահայոց Բիաինան կամ այսօրուան Վանը, վասն զի *Βασπαρακάν*ը, Վասպուրականն եւ հաւանականագոյնս Ստրաբոնի (ԺԱ, 528) *Βασοροπέδα*ն կը նշանակէ Վանայ լճին հիւսիսային արեւելեան կողմը գտնուող նահանգը, որուն մէջն է Վան։ Բիաինա = *Ἴβαν* = Վան ձեւին վրայ աւելցընելու ենք թերեւս միեւնոյն աշխարհագրական գաղափարը յայտնող ասորեստանեայ ձեւն ալ, որ է Նայիրիի երկիրներէն Աբաէնի գաւառին անունը (հմմտ. էջ 309)։ Նախահայկական արձանագրութեանց մէջ երկիրը Խաղդէ+ ու ժողովուրդը Խաղդէացէ+ կը կոչուին։ Միտ դնելու է որ Խաղդիք ոչ թէ միայն երկրին անունն է, այլ նաեւ Ուրարտացւոց գլխաւոր աստուածին անունն նման Աս-

[1] Հմմտ. Baumgartner, առ Pauly-Wissowa II, Sp. 1182.

[2] Մ. Խորենացի Ա. Ժ։ — Հմմտ. Kiepert, Monatsber. d. Berl. Akad. 1869, S. 216 ff.

բեւեռանցեւոց լեզուին, որուն մէջ թէ աստուածը թէ քաղաքն եւ թէ երկիրը Աշուր կը կոչուին անխտիր։ Թէ Խաղդիք եւ թէ Աշուր անուանց պատմական զարգացման մէջ մթին կը մնայ այն խնդիրը թէ երկի՞րն իւր անունը դից անունէն առած է թէ դիք՝ երկրէն։ Աշուրի համար կրնանք ըսել թէ թերեւս ստուգաբանօրէն երկու տարբեր անուններ վերջէն նոյն ձեւն առած են։ Լէման եւ Բելք ապացուցած են թէ Խաղդիք եւ Խաղդէացիք անունները գործածուած են դասականաց ու Հայ մատենագրաց այլեւայլ տեղերը, որոնց միտ դրուած չէր[1]։ Աւելորդ չէ այս երկու գիտնականաց հետազօտութեանց գլխաւոր արդիւնքները հոս համառօտիւ յառաջ բերել, որ վարը յիշուած յօդուածոց մէջ հոս հոն ցրուած կը գտնուին։

Խաղդէացիք մեր առջեւ կ'ելլեն իբրեւ պոնտացի ժողովուրդ մը Սոփոկլէսի (Ստեփ. Բիւզանդ. էջ 680), Քսենոփոնի (Արշաւ. Դ. գ, դ., Ե. ե, ժէ) եւ Ստրաբոնի (ԺԲ. էջ 549) Χαλδαῖοι անուանածներով, զորոնք պէտք չէ Բաբելոնի Քաղդէացիներուն հետ շփոթել, որոնց նախնական անունն էր Կաշդու։ Ստեփանոս Բիւզանդացի (էջ 680) Χαλδίαն (Խաղդիքը) կ'անուանէ "Հայաստանի մէկ գաւառը", որուն բնակիչները Χάλδοι (Խաղդէացիք) կը կոչուին. Χαλδίη յոնիական ձեւին գոյութեանն ալ կը վկայէ, որ ճշդիւ համաձայն է բնիկ Խաղդիա (Խաղդիք) ձեւին. Նոյնն ըսելու ենք Ռավեննայի Անանունին (II, 17) Խալդիէ ձեւին համար։ Նմանապէս Սուիդասի Χαλδίνηն իւր ձեւովն ամենայն մասամբ կը համապատասխանէ բնիկ արձանագրութեանց Խաղդինա (Խաղդիք) ձեւին։ Բիւզանդացւոց պետութեան ժամանակն

1 Համմ. Verhandl. d. Berl. Anthrop. Gesells. 1892, S. 487; 1893, S. 64 եւ ծան. 1; 1895, S. 578 ff. – Zeitschr. f. Assyriol. VII, 257; IX, 84 ff; 358 ff.

իսկ Խաղդիք պետութեան ութերորդ բանակաշրջանը („Թեմ") կը կազմէին։ Այս բանակաշրջանն Արարատցւոց ալ անծանօթ չէր. De Goeje (Zeitschr. f. Assyriol. X, 100) մատնանիշ կ'ընէ արաբական աշխարհագրական մատենագրութեան քանի մը տեղերն, ուր այս անունը կը հանդիպի։ Etymologicum magnumի Χάλδις ձեւն ալ հեռաքրքրական է, որ սխալմամբ այնտեղ իբր նուազական Χαλδαῖοςի կը մեկնուի։ Հայ մատենագրաց քով ալ շատ սովորական է Խաղդիք անունը. այսպէս Մ. Խորենացի (Բ. գ.) Խաղտիք անունով երկիր մը գիտէ, որ սակայն վերջէն Լազաստան ըսուած երկրին հետ նոյն է աշխարհագրօրէն։ Հայ աղբիւրներու համաձայն Խաղտեաց երկիրն է Պոնտոսի այն մասը, որ Տրապիզոնէ մինչեւ Բաթում կը ձգի, ուստի ընդհանրապէս այն տեղը, զոր Հերոդոտոս Ալարոդեանց կու տայ։ Դեռ այսօր ալ Խաղդիք իւր Արգիւրուպոլիս (Գիւմիւշխանէ) մայրաքաղաքովը գոյութիւն ունի իբրեւ յունական եկեղեցւոյ Թեմ մը, եւ ԺԷ. դարուն առաջին կէսէն ի վեր Խերիանէի հետ արքեպիսկոպոսութիւն մը կը կազմէ։ Ընդարձակ մօք առեալ Խաղդիա կը կոչուի ամբողջ Տրապիզոնի Վիլայէթն եւ այս Վիլայէթին մէկ գաւառն ալ Կալդըր կամ Կելդըր կ'անուանուի։ Կալդիր՝ անուան լեզուաբանօրէն դիւրաւ մեկնելի այլեւայլ ձեւափոխութիւններով (Չալդըր, Չըլդըր եւն) այսօրուան Հայաստանի մէջ շատ սովորական անուն մըն է տեղեաց։

Լէման եւ Բելք պատշաճօրէն ընտրած են Վանայ պետութեան հին հայկական կամ, լաւ եւս, նախահայկական բնակչաց համար Խաղդեացիք անունը, Բաբելոնեան Քաղդէացւոց հետ ամէն շփոթութեան առջեւն առնելու դիտմամբ [1]։ Խաղ-

[1] Հմմտ. այս անուան յարմար ու պատշաճ ըլլալուն նկատմամբ՝ Լէման ի Verh. d. Berl. Anthrop. Gesellsch.

դէացի անունը՝ Ալարոդեան կամ Ուրարտացի համազօր անուններէն ալ նախամեծար համարուելու է, վասն զի վերջին անունն որոշ լեզուախումբ մը ցուցընելու սեփականուած է։ Այս պատճառներուն զօրեղ ըլլալն ընդունելով հանդերձ՝ այս ուսումնասիրութեանս մէջ, որ ասորեստանեայ-բաբելական արձանագրութեանց վրայ հաստատուած է եւ ոչ թէ բնիկ սեպագրերուն վրայ, նախամեծար կը համարիմ Ուրարտու կամ Ուրարտեան, Ուրարտացի ձեւերը, որ միակ սովորականն են ասորեստանեայ-բաբելական սեպագրութեանց։

Ուրարտեանց պետութեան տարածութեան ու նշանակութեան չանցած՝ կ'ուզեմ նոյն պետութեան իշխաններուն յաջորդութիւնը յառաջ բերել՝ հիմնուելով բնիկ եւ ասորեստանեայ աղբիւրներու վրայ, ի հարկէ՝ որչափ որ կարելի եղած է մինչեւ հիմայ անոնց յաջորդութիւնը կազմել։ Լեմանի եւ Բելքի հետազօտութեանց համաձայն[1] այս է յաջորդութեան ցուցակը. Լուտիպրիս — որդին՝ Սարդուր Ա. . . . . . . Արամէ. — որդին՝ Սարդուր Բ. — որդին՝ Իսպուինիս. — որդին՝ Մենուաս — որդին՝ Արգիստիս Ա. — որդին՝ Սարդուր Գ. — եղբայրը՝ Ռուսաս Ա. (Ուրսա). — որդին՝ Արգիստիս Բ. — որդին՝ Ռուսաս Բ. — Երիմենաս. — որդին՝ Ռուսաս Գ. — Սարդուր Դ.։

Ասորեստանցւոց արձանագրութիւնները հետեւեալ թագաւորները կը յիշեն. Արամու(է), ժամանակակից Սաղմանասար Բ.ի։ — Սեդուրի, նմանապէս ժամանակակից Սաղմանասար Բ.ի = Սարդուր Բ.։ — Ուշպինա, Սամսիրաման Բ.ի 'ատեն =

---

1895, էջ 578, ուր պայքար կը մղէ Ենսէնի (ZDMG. 48. 434) դէմ, որ ըսած էր թէ պատճառ մը չկայ նախահայկական բառը գործածելու տեղ՝ խաղդեան բառը գործածելու։

[1] Հմմտ. Zeitschr. f. Assyr. IX, 345 եւն եւ Verh. d. Berl. Anthrop. Gesellsch. 1894, 485 եւն։

Խապուրինիա: — Սարդաուրի, Տիգղաթպիլեսեր Գ.ի առեն = Սարդուր Գ.: — Ուրսա (Ռուսաս), Սարգոնի առեն՝ իբր 730—714 = Ռուսաս Ա.: — Արգիշտի, Նմանապէս Սարգոնի առեն = Արգիշտիս Բ.: — Ասուրբանիպաղայ առեն երկու թագաւոր կը յիշուին՝ Սարդաուրի եւ Ռուսա: Առաջինը համարելու ենք Սարդուր Գ. եւ դնելու ենք իբր 675ին, իսկ երկրորդը համարելու ենք Ռուսաս Գ. եւ դնելու ենք իբր 645ին:

Ուրսա, Ուրսաա երկրորդական ձեւ մըն է՝ ունենթադրական սկզբնատառով. Համմտ. Նման ձեւեր վարը: Ուրսաա (*Ուրուսա) միջին ձեւն է Ուրսայի եւ Ռուսայի: Նման սղում մ'ալ կը տեսնենք Մանեան քաղաքի մ'անուան մէջ, որ է Ատրանա կամ Տերանա: Ուրզանա, որ Մուզասիրի թագաւորին անունն է, կ'երեւայ թէ նոյն բառն է, միայն Նամանիկով երկնցած: Սեդուրի, Սարդուրի եւ Իշտարդուրի անուան վրայ տե՛ս. Ցենսէնի մեկնութիւնները ի Zeitschr. f. Assyriolog. VIII, 377 եւն: Ուրարտացի Արամէն չփոթելու չէ իւր համանուն ժամանակակցին հետ, որ Հիւսիսային-ասորական հատեան երկիրներէն մէկուն այսինքն Գուսիի կամ Ագուսիի իշխանն էր: Ուրարտացւոյ մը եւ հատեան իշխանի մը նոյն անունը կրելէն եւ Կումմուհի, Միտաննիի եւն գլխաւոր դից Ուրարտուի մէջ ալ պաշտուելուն ապացուցեալ ըլլալէն հետեւցուցին, թէ Արամէի առեններն Ուրարտուի մէջ իշխող ժողովուրդը յարաբերութիւն ունի տէշու-բեան բռուած ցեղին հետ, այսինքն Փոքր Ասիոյ կամ Հիւսիսային ասորական այն ժողովրդեան հետ, զոր կարծեցին թէ հարկ է իրարու հետ սերտագոյնս միացընել՝ ու հասարակ նոյն Տեշուբ (նախահայոց լեզուաւ՝ Տեիշեբաս) դիքը պաշտելնուն պատճառաւ[1]: Բայց

---

[1] Համմտ. ի մասնաւորի Winckler, altorient. Forsch. II. Reihe I, S. 108 ff.

երբ աւելի յառաջ երթալով կ'ըսեն՝ թէ Արամէ հին տեշուբեան ժողովրդոց վերջին թագաւորն է եւ թէ Արամէի յաջորդովը՝ Սեդուրիով նոր հարըստութիւն մը սկսաւ, որ Արամէի տունէն իշխանութենէ մերժեց[2], եւ թէ նախահայկական պատմութեան շրջանն սկսաւ Սեդուրիով՝ որ "առաջնորդն էր հին տեշուբեան ժողովրդեան մէկ նոր խմբին„ — զոր իւր գլխաւոր աստուածութենէն առնելով Հարկ է Խաղդեան խմբին մէջ դնել, — կարծեմ այսպիսի կարեւոր եզրակացութեանց յանգելու համար ոչ Ասորեստանեայ արձանագրութիւններն եւ ոչ ալ բնիկ սեպագիրները բաւական տեղեկութիւն կու տան։

Հարկ է Շրադէրի[3] հետ ըսել թէ Ուրարտեանց սկզբնական բնակավայրն էր Վանայ ծովուն արեւելակողմը՝ միջին Երասխայ վրայի երկիրը (տես էջ 79)։ Քրիստոսէ յառաջ իբր Թ. դարուն սկիզբները սկսան դէպ ի արեւմուտք յառաջանալ եւ Վանայ լճին արեւելեան եզերքը հանելով պետութիւն մը հիմնեցին, որուն առաջին թագաւորն է Լուտիպրիս, ինչպէս արձանագրութիւնք կը վկայեն։ Այս ժամանակն է որ Ասորեստանեայց տառերը

1 Winckler, անդ, էջ 112։

2 Բելլերբեր, էջ 152–53։

3 Շրադեր, Zur Geographie d. assyrischen Reiches (Sitzungsbericht d. Berl. Akad.) 1890, էջ 333։ — Այլազգ Լեման ի Verhandl. d. Berl. Anthrop. Gesellsch. 1895, էջ 583։ Համմ. Լեմանի դէմ՝ Եենսեն ի Zeitschr. f. Assyr. XI, 306։ Ճշգագոյն է Բելքի ըսածը (Verhandl. d. Berl. Anthrop. Gesellschaft, 1894, էջ 486), թէ հաւանականագոյնս Խաղդեացւոց նախնական բնակավայրը Խոտուր-դաղի ու Վանայ լճին միջեւ գտնուած երկրին մէջ փնտռելու է։ Սարդուր Առաջնոյ յաջորդներուն արձանագրութեանց մէջ շատ ստէպ հանդիպող ...... բառը կը մեկնէ իբրեւ Խաղդեացւոց տիրող իշխանաց անունն ու նայիրեան Շուրուրիա գաւառին հետ յարաբերութեան մէջ կը դնէ։ (Համմ. էջ 8։)

վանեան պետութեան մէջ մուծուած են. սակայն հաւանական չէ Ասորեստանցւոց լեզուին այս պետութեան մէջ ընդունելութիւն գտնելը, վասն զի զուտ ասորեստանեայ գրերով գրուած հայկական ամենահին արձանագրութիւնք հարկէ որ հայերէն կարդացուին, ինչպէս որ սումերէրէն գրուած ինչ ինչ բաբելական սեպագրութիւնք սեմական-բաբելական լեզուաւ կարդացուելու են: Ամէն բանէ յառաջ Վանայ լճին մերձաւոր ու հեռաւոր շրջակայքը գտնուած բնիկ արձանագրութիւններով՝ արտաքոյ կարգի ընդարձակած է մեր ծանօթութիւնը նախահայկական պատմութեան վրայ: Ո՛չ սեմական է եւ ո՛չ հնդիկ-եւրոպական այն լեզուն, որով նոյն արձանագրութիւնները գրուած են: Նոյն արձանագրութիւններն լուծելու ճամբան բացած են Գույարի, Սէյսի եւ Դ. Հ. Միւլլէրի ուսումնասիրութիւնները:

Սեպագրերուն մէջ երեւան ելլելէ ետքը կը տեսնենք որ Ուրարտացիք կամաց կամաց դէպ ի արեւմուտք ու հարաւ կը տարածուին եւ կ՚ըլլան միապաղաղ մեծ ու հզօր[1] տէրութիւն մը, վտանգաւոր ախոյեան հանդիսանալով Ասորեստանցւոց: Ասուրնասիրպալ կ՚ըսէ թէ Ուրարտու մինչեւ Սուբնատ կը տարածուէր: Սալմանասար Բ.ի իշխանութեան ատեն արդէն Ուրարտու մեծապէս տարածուած է՝ հիւսիս-արեւմուտքէն սահման ունենալով Դահաենին ու անոր հարաւակողմը գտնուող Սուհմէ եւ Էնզի նահանգները. Բալուէ սկսեալ սահմանաբաշխն է Արսանիա, վերն արեւելեան կողմը Նալ լեռնաշխարհն է որ Ուրարտեան Ցարօն հարթատանը կը բաժնէ Կիրհու ու Ուլլուբա[2]

---

1 Հմմտ. Բելքի Վանեան պետութեան զարգացման վրայ խօսած յօդուածը ի Verhandl. d. Berl. Anthrop. Gesellsch. 1892, էջ 483 եւն:

2 Այս երկիրներուն դիրքին վրայ տես էջ 57 եւն:

երկիրներէն, որ անոր հարաւային կողմն են։ Ցաբակոյս չկայ որ Վանայ լիճն ամբողջապէս Ուրարտուի կը վերաբերէր. լճին արեւելեան կողմէն սահման կը կազմէին, բայց ոչ անմիջապէս հպուելով, Մանեան իշխանութիւններն ու Կիրզան եւ Մուզասիր։ Այս սահմանակից իշխանութիւններէն շատերը՝ Ուրարտեան պետութեան ամէնէն աւելի զօրացած միջոցին՝ առաւել կամ նուազ կախում ունէին անկէ։ Վանեան պետութեան կամաց կամաց մեծնալը մասնաւորապէս կը տեսնուի բնիկ արձանագրութիւններէն։ Այսպէս Մենուաս, ինչպէս Կելիշինի մէկ արձանագրութիւնը յայտնի կը ցուցընէ, իւր հօրը, Իսպուինիսի թելադրութեամբ Ուրմիոյ լճին հարաւային ափին հարաւ-արեւմտեան կողմը գտնուող երկիրները նուաճեց, թէեւ քիչ մը ժամանակուան համար. նմանապէս հիւսիսային արեւելեան կողմը՝ մինչեւ Երեւանայ դաշտը հնազանդեցուց։ Մենուաս իշխանութեան աթոռը բարձրանալէն ետքը՝ վերին Մուրադ-չայէ մինչեւ Եփրատայ արեւմտեան ակնաղբիւրը գտնուող երկիրը հպատակեցուց իրեն եւ Ուրարտուի սահմանները Մելիդ-Մալադիայէ անդին տարածելով՝ Հարաւակողմը կամ Հարաւային արեւելակողմը Մանեանները նուաճեց։ Բայց այլեւայլ արշաւանքներով ստացուած այս երկիրներն երկայն ատեն պահել անկարելի եղած էր։ Արգիստիս Ա. ստիպուեցաւ զատոնք նորէն հպատակեցընել. արձանագրութեանց ըսածին նայելով՝ նախ Մանեանց վրայ քալեց ու յետոյ Երասխն անցնելով իւր տէրութեան հետ միացուց այսօրուան Երեւան ու Կարս նահանգները. իւր այս արշաւանքներուն ատենը հասաւ մինչեւ Նիրբու եւ Մելիդ, իսկ հարաւային արեւելեան կողմը մինչեւ Բուստուս եւ Բարսուա։

Սարդուր Գ. իւր նախորդէն, Արգիստիս Առաջնէն աւելի յառաջացաւ դէպ ի հիւսիս-ա-

րեւելք, ինչպէս որ կը վկայեն իր յաղթութեանց արձանագրութիւնները՝ որ կեցած են Սեւանայ լճին հարաւ-արեւելեան եզերքը: Մելիտի Նուաճումն ու Կուէ երկրին (Կիլիկիոյ դաշտային մասին) բանակներուն պարտութիւնը կը պատմէ Խօզլուի արձանագրութիւնը Մալադիոյ = Մելիդի քով: Սարգուր Գ.ի թագաւորութեան ատենն է Վանայ պետութեան ամէնէն ծաղկեալ ժամանակը, որ սակայն շուտով թարշամեցաւ Տիգղաթպիղեսեր Գ.ի եւ Սարգոնի ատեն տեղի ունեցած սաստիկ ու բուռն պատերազմներով: Ուրարտու այս պատերազմներով տկարացած՝ ի վիճակի չէր՝ Է. դարուն Առաջակողմեան Ասիան ողողող Կիմմերեանց յառաջացման դէմ դնելու. ուստի դատարկացաւ եւ բնակավայրն եղաւ հնդիկ-գերմանական Հայոց, որ Կիմմերեանց հետ խուժած եկած էին: Ուրարտացիք՝ նման ուրիշ բազմաթիւ ժողովրդոց (Մուքացիք, Տիբարացիք եւն) այս նոր ցեղերուն յառաջացմամբը հիւսիս մղուեցան. ասոնց մնացորդներն այնուհետեւ Պոնտոսի կողմերը կը գտնուին:

**Թ. Մուսասիր:** Սաղմանասար Բ.ի տուրտանը (= սպարապետ) թագաւորին իշխանութեան 31ր տարին Հուբուշկիայէն Մուզասիրի վրայ արշաւեց եւ հոն Սապպարիա քաղաքն ուրիշ 46 քաղաքներու հետ առաւ. անկէ վերջն Ուրարտուի վրայ քալեց: Սարգոնի ատեն Ուրարտուի դաշնակից եղաւ Մուզասիր, մինչ յառաջ Ասորեստանէ կախում ունէր, ինչպէս կը հետեւի "Ասուրի եւ Մարտուկի երդումն մէկ կողմ թողուց իշխանը" խօսքէն: Երկրին այն ատենուան թագաւորն է Ուրզանա: Սարգոն թագաւորութեանն 8ր տարին Հուբուշկիայէ Մուզասիրի վրայ քալեց. ինքն է որ կ՚ըսէ "Իմ պատերազմիկ կառքերովս, քաջ հեծելազօրքես եւ քաջամարտիկ ոտանաւոր զօրքես 1000 հոգւով . . . . . . յառաջացայ դժուարին լեռնաշխարհէ մը, որ լաւ էր ձիերուն, բայց անկոխելի էր ոտանաւոր-

ներուն համար։„ Ուրզանայի իշխանանիստն առնուեցաւ եւ անոր պալատը աւարի տրուեցաւ. Մեղք որ արձանագրութեան սաստիկ վնասուած ըլլալուն՝ կարելի չէ աւար առնուած առարկաներուն լիակատար ցուցակն յառաջ բերել։ Նոյն ցուցակէն սաչափը միայն կ'իմանանք որ Սարգոն 6170 հոգի գերեց տարաւ եւ 690 ջորի եւ էշ, 100.225 ոչխար եւ 34 տաղանդ 18 մնաս ոսկի, 160 տաղանդ 2½ մնաս արծաթ, պղինձ (անագապղինձ՞), պատուական քարեր, գոյնզգոյն զգեստներ եւ կիտու ըսուած նիւթէն հանդերձեղէններ առաւ։ Ընդհակառակն Խորսաբադի արձանագրութեան (75) համաձայն բնակիչներէն 21.170 հոգի իրենց ստացուածքներովն ու երկրին երկու դից (Խալդիք եւ Բագմաշտու) պատկերներով գերի տարուեցան։ Բաց ի այս արշաւանքէն (715ին)՝ անուանագիր ցուցակը ուրիշ ասպատակութիւն մ'ալ կը յիշէ Մուզասիրի վրայ 712ին եղած։ Մուզասիրի նուաճումը կը տեսնուի Խորսաբադի մէկ բարձրաքանդակ պատկերին վրայ ալ (տես Botta, Monuments de Ninive 2, 141)։

Նմանապէս երկրին գլխաւոր քաղաքն ալ Մուզասիր կը կոչուէր։ Անկէ զատ կը յիշուին Սուդդուրէա, Սաղմանասար Բ. է նուաճուած ամրութիւն մը, եւ Ուաբդէ(?) քաղաքները, վերջինս Ուրզանայի կնքոյն վրայ յիշուած։ Մուզասիրի կամ գէթ Մուզասիրի եւ Հուբուշկիոյ կողմերը դնելու ենք յաջորդ չորս լեռնաշղթաները, որոնցմէ անցած է Սաղմանասար իւր արշաւանքին ատեն։ Այս լեռնագօտիները են՝ Շէաի, Արդի-?-շի, Ուլուիաու եւ Ալլուրիա։

Շատ հետաքրքրական է Ուրզանա թագաւորին գլանաձեւ կնիքը, զոր ունինք։ Այս կնիքն Ասորեստանցւոց լեզուաւն ու գրերով գրուած ըլլալով՝ կ'ապացուցանէ որ Ասորեստանեայց քաղաքակրթութիւնը կ'իշխէր թէ արեւմտեան եւ թէ արեւելեան ու հիւսիսային կողմերը։ Կարելի է

թէ Բաբելոն փորուած ըլլայ կնիքս, զոր Սարգոն ուար առնելով Նինուէ բերաւ: Կնիքս հիմայ Հաագի հնագրամեներու ու շքադրամեներու ժողովածոյքին մէջ կը պահուի: Կնքոյն գրութիւնն է. "Կնիք Ուրզանայի, թագաւորին Մուզաժիրի եւ Ուար(?)ոի քաղաքին, որուն բերանը չար լերան մը վրայ [դարանակալ եղած] օձի մը բերնին պէս բաց է:" Ա. Երեմիաս[1] (Zeitschr. f. Assyr. I. 46—47) Ո—ոք(?)ոէի տեղ Հ——ոքոէ կը կարդայ եւ "Ջայլեամներու քաղաք" կը թարգմանէ՝ Մուզաժիր անուան մէջ տեսնելով צדצר (որմէ צצר սատակականը) կրկնաւոր եւ բնաձայնական արմատին ընդունելութիւն անցեալը, քանի որ նոյն արմատն Ասորեստանցւոց լեզուին, արաբերէնի եւ թալմուդերէնի մէջ միջատներու համար կը գործածուի: Այս մեկնութիւնն ինծի շատ կամայական կ'երեւայ. սա՛ ալ կայ որ բնագրին մէջ Մուզաժիր բառէն եաքն եկած —— շաղկապը բացայայտիչ մը կամ Մուզաժիրի իմաստը չէր ցուցըներ. Նմանապէս հաւանականագոյնս ընթերցումն է Ո— եւ ոչ թէ Հ——: Կնիքը լոմասա ըսուած քարին վրայ փորագրուած է, որ ըստ Շրադէրի յասպիս է, իսկ ըստ Երեմիասի՝ տեսակ մը ճարպաքար (Agalmatholith), ինչպէս քիմիական փորձը ցուցըցած է: Ինչպէս Ուրարտուի, նմանապէս այս երկրին գլխաւոր դիքն էր Խալդիք: Սարգոնի յիշած Բագմաշտուն[2] դիցուհի է:

---

[1] Երեմիասի մեկնութեան համար որոշիչ նշանակութիւն չունի կնքոյն վրայ ջայլեամանման կենդանիներու նկարուած ըլլալը, զորոնք ոգի մը կը բռնէ:

[2] Rost, Untersuch. z. altorient. Gesch. (Mittheil. d. Vorderasiat. Ges. 1887, 2) էջ 86 ըստ ինքեան Բօէքօր-փօօ հնարաւոր ընթերցումէն նախամեծար կը համարի Բօէմօշփօօ ձեւը, վասն զի անուան երկրորդ՝ մօշփօ(օ) մասին մէջ երանեան mazdaն կը տեսնէ: Բագմաշտուն երկիրը գրաւող Արեաց աստուածութիւնն է, որ ընիկ ժողովրդեան

Մուզասիր երկիրը Կելիշինի (որ Ուշնէյ կը կոչուի) արձանագրութեան մէջ ալ կը յիշուի. Ասորեստանցւոց լեզուաւ է այս արձանագրութիւնը, որուն մէջ Իսպուինիս եւ Մենուաս Խաղդիք դից յարգանք ու մեծարանք կը մատուցանեն։ Կարելի էր ըսել թէ այս արձանագրութիւնն ալ՝ նման Սարգուր Առաջնոյ արձանագրութեանց՝ խաղդէացւոց լեզուաւն գրուած ըլլայ գաղափարագրերով, սակայն Ուրզանայի ասորեստանեայ կնքոյն գոյութիւնը կը դժուարացընէ այս ենթադրութիւնը։ Սէյս կ'ըսէ թէ այս արձանագրութիւնը Վանեանի մը՝ ասորեստանեանն է կամ թէ երկուքն իրարու կը վերաբերին՝ ըլլալով երկլեզու։ Այս ենթադրութեան վրայ հիմնուելով Արդինիս անուան մէջ կը տեսնէ Վանեան եւ ըստ հետեւորդի բնիկ համազօրը "Ասորեստանցւոց Մուսասիրին = "տեղ, ուր օձեր կան[2]։" Նախ՝ մեր առջեւն եղած դէպքին մէջ երկլեզու չկայ.[3] Երկրորդ՝ Սէյսի ստուգաբանութիւնը շատ արուեստական է եւ անհամոզիչ։ Լէման[4] ալ կը կարծէ Մուսասիրնա անուան մէջ՝ Մուզասիր քաղաքին անունը գտած ըլլալ, եւ կը մեկնէ իբրեւ Մուզասիր-քաղաք (Նախահայոց լեզուին մէջ Նա "քաղաք" կը նշանակէ եղեր)։ ինքն ալ սխալ կը համարի անձնորոշ ըլլալը։ Այս կամայական մեկ-

---

Խաղդիք գլխաւոր դից քովը դրուեցաւ։ Ըստ այսմ ինծի համար Բագմաշտու ընթերցուածին ճշդութիւնն ամէն տարակուսէ ազատ չէ, քանի որ նոյն ընթերցուածը հաստատող ձայնական գրութիւն մը մէջտեղ չ'ելլեր։ Բառին առաջին Բագ մասին համար հմմտ. Բագդատտի, որ Ուիշտիշի իշխանին անունն է։

[1] Վանեանը հրատարակուած է ի JRAS, t. XIV, p. 66.

[2] Սէյս, անդ 1894, p. 700.

[3] Հմմտ. Բելք եւ Լէման, անդ 389 եւ Verh. d. Berl. Anthrop. Gesell. 1895, S. 594.

[4] Անդ, էջ 583։

նութեան դէմ իրաւամբ հակառակած է Եէնսէն[1]:

Մինչեւ մօտ ատեններս կարելի չէր Մուզասիրի դիրքին վրայ դրական եւ որոշ բան մ՚ըսել: Միայն գիտէինք թէ Մուզասիր Ուրարտուի եւ Հուբուշկիայ ուղղակի քովերն է, Ուրարտուէ աւելի հարաւ դէպ ի Ասորեստան, որով եւ կը մեկնուէր Ասորեստանցւոց քաղաքակրթութեան կամ սեմական լեզուին մեծ ազդեցութիւնը: Բայց երբ նորերս Սիդէկի (Սիդական) մէջ՝ ուստի Կելիշին-Ուշնէյի մօտերը՝ Արգիստիս Առաջնոյն մէկ արձանագրութիւնը գտնուեցաւ, որուն մէջ Մուզասիր անունը կայ, կրնանք մեծ հաւանականութեամբ ըսել թէ Սիդէկի (Սիդական) եւ Կելիշինի կրճին (— Ուրմիոյ լճին հարաւային խորշին արեւմտեան կողմը —) մինչեւ գտնուած երկիրը կամ Մուզասիրի կը վերաբերէր եւ կամ անմիջապէս անոր մօտերն էր Մուզասիր[2]: Վերջին դէպքին մէջ կրնանք ըսել թէ Մուզասիրն է այն երկիրը, որ Սիդական-Ուշնէյի հիւսիսային կամ հիւսիս-արեւելակողմն է[3]:

Գ. Ուրարտուի մօտերն այնպիսի երկիրներ, որոնց դիրքը տակաւին ճշդել կարելի չէ: Ուրարտուին մօտերը տեղ մը պիտի ըլլան Կոյծէ երկիրն ու վարը նշանակուած հինգ քաղաքները: Սարգոն կը պատմէ թէ “ինքը չար ու թշնամի Կակմեցւոց սիրտն ի կարգի դրած է„, ասով ակնարկել կ՚ուզէ թէ ինք օգնած է Կակմէի յիշեալ հինգ քաղաքներուն դէմ, “որ յայտնապէս անոր դէմ ծրագիրներ դարբնած էին:„ Խնդրական հինգ քաղաքներն են. Սուկկիա, Բալա, Աբիտիկնա, Պապպա — զոր

[1] Եէնսէն ի Zeitschr. f. Assyriol. XI, 307–8:

[2] Այս կէտն արդէն լուսաբանած է Լեման (Verhandl. d. Berl. Anthrop. Gesell. 1895, S. 594):

[3] Բելք, անդ, էջ 153. “Մուզասիր՝ Բոհտանի աղբերաց սահմաններուն (Շատաղ եւ Նորդուզ գաւառներուն) մէջ:„

շփոթելու չէ Կիպրոսի Պապպա = Πάφος քաղաքին հետ — եւ Լալլուկնա: Սարգոն այս հինգ քաղաքներուն բնակիչները՝ Կակմէի հետ թշնամութեամբ վարուելնուն համար Դամասկոս ու Հատեանց երկիրը գաղթեցուց: Տարեգրութեանց ճշդագոյն տեղեկութեանց համաձայն Սուկկիացիք, Բալացիք եւ Աբիտիկնացիք՝ Ուրարտուի Ռուսա իշխանին հետ նիզակակից ըլլալնուն համար Հատեանց երկիրը, իսկ Պապպացիք ու Լալուկնացիք Կակմէի դէմ դառնալնուն համար Դամասկոս տարագրուեցան:

Ուրարտուի, Մանի եւ Մուզասիրի քովերը գտնելու ենք Ուասի (Ուէսի) ըսուած տեղը: Ուասի Ուրարտուի, Մուզասիրի, Հուբուշկիոյ եւ Մանի հետ մէկտեղ կը յիշուի:

Հոս յիշելու ենք հետեւեալ հինգ քաղաքներն ալ, որ Ուրարտուի քովն կամ մէջն էին. Եշխուպպա, որ Ուէսիի եւ Ուրարտուի հետ ի միասին կը յիշուի. — Սանհա եւ Տէկրէշ, որ Ուլուշխայի (յՈւրարտու) եւ Մանի հետ կ՚երեւան. — Եղէգա եւ Խարդա, որ Տուրուշպայի հետ կը յիշատակուին:

## 2. Մաննեան երկիրներ՝ Ման, Ուէշդիշ (Ուիշդիշ), Զիկիրտու, Միսիանդի եւ Բիտ-Դայաուկկի:

Ա. Ման: Առաջին անգամ Մանեանց կը հանդիպինք Սաղմանասար Բ.ի արձանագրութեանց մէջ: Ասոր տուրտանը (= բարձրաստիճան պաշտօնակալ) Թագաւորութեանն 30ր տարին՝ անցնելով Զաբ գետն ու Հուբուշկիա եւ Մալհիս երկիրները, Ման մտաւ եւ հոն հարկ առաւ "արջառ եւ ոչխար": Մանի Թագաւորն էր այն ատեն Ուդակի: Մանը նուաճելէ ետքը՝ Ասորեստանցւոց բանակը Հառունայի, Շուրդիրայի եւ Պարսուայի վրայ քալեց: Անուանագիր ցանկին մէկ հատակտորէն (Rm 2, 97) կը տեսնենք, որ Ասորեստանցիք 828ին

դարձեալ արշաւած են Մանի վրայ։ Սամսիրաման Բ. Հուբուշկիա գտնուած միջոցին՝ Միկտիարա, Սունբա, Ման, Պարսուա եւ Տաւրլա երկիրներուն հարկն առաւ, որ էր կառքի ձի։ Թամմանիրարի Գ.ի քով՝ նուաճեալ երկիրներուն յաջորդ ցուցակին մէջ կը յիշուի Ման — Մուննա ձեւով. "Ելլիպի,. Հարհար, Արազիաշ, Մեսու, Մադաի, Գիզիլբունդա, Մո-ննա, Պարսուա, Ալլաբրիա, Աբդադանա, Նաիրի։"

Մաննեանները շատ յաճախ կը յիշուին Սարգոնի արձանագրութեանց մէջ։ Սարգոնի ատեն Մանի մէջ կ'իշխէին հետեւեալ իշխանները.

Իրանզու
|
Ազա
|
Ուլլուսունու։

Ուլլուսունուի եղբայրն էր Բագդատտի, Ուիշդիշի իշխանը։ Ուրարտուի առաջնորդութեամբ հիւսիսային նահանգաց կամ տէրութեանց՝ Ասորեստանի դէմ կազմած մէկ մեծ նիզակակցութեան մասնակցած է Ման։ Այս նիզակակցութեան յարակից դէպքերուն վրայ՝ տարեգրութեանց տուած տեղեկութիւնները շատ աւելի վստահելի համարելու է քան այն տեղեկութիւններն, զորոնք փառապանծ արձանագրութիւնը կ'արձանագրէ՝ շատ կէտերու մէջ տարեգրութիւններէն խոտորելով։ Տարեգրութեանց պատմածին նայելով՝ համառօտիւ իրողութիւնը յաջորդն է. Ուրարտու, Կարալլու, Զիկկիրտու եւ Ուիշդիշ՝ Սարգոնի թագաւորութեան վեցերորդ տարին Ասորեստանէ ապստամբելու նպատակաւ իրարու հետ դաշնակցեցան եւ Մանի Ազա իշխանը սպաննեցին, որ, ինչպէս կ'երեւայ, Սարգոնի հաւատարիմ կողմնակիցն էր։ Զիկիրտուի Մանի թշնամի ըլլալուն մէկ պատճառն

այն էր որ Սարգոն օգնած էր Իրանզուի, Ազայի հօրը, այն քաղաքներն առնելու, զորոնք Զիկկիրտու յափշտակած առած էր Իրանզուէ։ Ազայի սպաննուելէն ետքը՝ Մաննեանց գահը բարձրացաւ Ուիշդիշի Բագդատտի իշխանը, զոր Սարգոն քիչ մ՚ետքը մորթազերծ ըրաւ։ Ասոր վրայ Մանի այն կուսակցութիւնն, որ Ասորեստանցւոց թշնամի էր, զՈւլլուսունու՝ Բագդատտիի եղբայրն՝ իշխան ընտրեց։ Ուլլուսունու իւր դիրքն ապահովելու եւ ամրացընելու դիտմամբ դարձեալ դաշնակից եղաւ Ուրարտուի, Կարալլուի եւ Ալլաբրայի, սակայն ստիպուեցաւ իւր քաղաքները կորսնցընելէն ետքը՝ նման իւր դաշնակիցներուն՝ Ասորեստանցւոց թագաւորին հպատակիլ։ Ուրարտուի Ռուսա թագաւորը դեռ յաջորդ տարին ալ պատերազմը կը շարունակէ եւ Ուլլուսունուի երկրէն 22 ամրոց կ՚առնէ։ Բացայայտ չէ բոլորովին Դաիուկկիի դերը, որ ասկէ ետքը մէջտեղ կ՚ելլէ։ Դաիուկկի շրջնա— Ման = “Մանի կուսակալ„ կը կոչուի եւ տարակոյս չկայ թէ Ուրարտացւոց թագաւորին հաւանութեամբը կը գործէր։ Սարգոն Մանի վրայ քալեց եւ գերի վարեց պարտուած Դաիուկկին ու անոր ընտանիքը։ Տարեգրութեանց նայելով Սարգոն դեռ երկու անգամ ալ Ուլլուսունուէ հարկ առաւ. մէյ մը՝ (թագաւորութեանը 8+ տարին) Զիկկիրտու եւ Ուրարտու արշաւած ատեն, եւ երկրորդ անգամ՝ յաջորդ տարին։ Թագաւորութեան 8+ տարին յիշեալ արշաւանքին յաջող վերջանալովը՝ Մանի երկիրներն ընդարձակեցան “5 կրկնամղոն երկիր՝ Ու... լեռնէն (մինչեւ) Զ. Ուիշդիշի մէջ, մանեան լեռնանահանգ մը„. ինչպէս Խորսաբադի արձանագրութեան (52) հետ համեմատութիւնը կը ցուցընէ, այս երկիրներուն մէջն էին այն 22 քաղաքները, զորոնք Ուրարտու Ուլլուսունուէ առած էր։ Տարեգրութեանց պատմածէն բոլորովին կը տարբերի փառապանծ արձանագրութեան աւանդածը։ Վերջնոյս

նայելով՝ Ուլլուսունու Ուրարտուի, Ուիշդիշի, Զի-կիրտուի եւ Միսիանդիի հետ նիզակակցութիւն ըրաւ՝ Սարգոնի դէմ։ Այս առթիւ Ուլլուսունու Ուրարտուի իշխանին 22 ամրոց պարգեւ տուաւ։ Սակայն Ասորեստանի թագաւորը թշնամիներէն ամէն մէկուն վրայ առանձինն առանձինն յաղթանակ կանգնելով՝ նիզակակցութիւնը քայքայեց եւ յիշեալ ամրոցներն Ասորեստանի հետ միացուց։ Երբ վերջէն Ուլլուսունու խոնարհեցաւ, նոյն ամրոցներն ետ ընդունեցաւ։ Երկրորդական նշանակութիւն ունի գլանաձեւ արձանագրութեան մէկ տեղը, ուր Ման՝ Սարգոնի նուաճած երկիրներուն շարքին մէջ՝ Պարսուայի եւ Ուրարտուի մէջտեղը դրուած է։

Սանհերիբի ծանօթ արձանագրութեանց մէջ Մաննեանք երկու անգամ միայն կը յիշուին։ Այս երկու տեղերը թագաւորը կը պարծի զՎալդի, զԱրամու, զՄան, զՎուէ եւ զՀիլակկու նուաճած ըլլալուն վրայ։

Ասարհադդոնի ատեն Մաննեանք շատ ստէպ կը տեսնուին՝ Ասորեստանի վտանգ սպառնացող հիւսիսային եւ հիւսիս-արեւելեան թշնամեաց — Սապարդացւոց, Գիմմերացւոց, Մադաիացւոց եւ Իշկուզացւոց — շարքին մէջ։ Ասարհադդոնի արձանագրութեանց մէջ գործածուած "անի (Ասարհ.), որ Մաննեանները բոլորովին ընկճեց„ պարբերութիւնը անկարելի է բառական իմաստով առնել։ Հազիւ Ասարհադդոնի յաջորդին՝ Ասուրբանիպալայ ատեն Մաննեանները ուժով զսպելու ձեռնարկութիւն եղած է։ Այս ատեն Մանի թագաւորն էր Ահշէրի[1]։ Ասոր դէմ էր որ Ասուրբանիպալ իւր չորրորդ արշաւանքն ըրաւ։ Ասորեստանցւոց բանակին մօտե-

---

[1] Հմմտ. אֲחִישַׁחַר անունը (Ա. Մնաց. 7, 10)։ Ըստ Դելիչի այս անունը "Եղբայր առաւօտու„ կը նշանակէ. սակայն սեմական ըլլալը տակաւին տարակուսական է։

նալը լսելով՝ Մաննեանց թագաւորն իր թագաւորանիստ Իզիրտու քաղաքէն Իշտատտի փախաւ եւ քիչ մ՚ետքն իր ապստամբ հպատակներէն սպաննուեցաւ։ Որդին Ուալլի իրեն յաջորդեց։ Այս միջոցին Ասուրբանիպալ Իզիրտուէ Իշտատտու հասած էր՝ ճամբան «միշտ թափելով», այսինքն կրցածին չափ ամէն կողմ աւերելով։ Ուալլի հպատակեցաւ եւ իր Երիսիննի որդին Նինուէ պատանդ խաւրեց եւ իր աղջիկներէն մէկը՝ Ասորեստանի թագաւորին կանանոցը։ Մանի մինչեւ նոյն ատեն տուած հարկը բարձրացուցին՝ 30 ձի աւելի պահանջելով։ Այս արշաւանքով եւս առնուեցան «Ասորեստանի շրջակայից» 4 քաղաքներն ալ, զորոնք Ասուրբանիպալայ նախորդաց ատեն Մաննեանք գրաւած էին. Հաւանականօրէն այս քաղաք ըսուածները բուն Ասորեստանի հիւսիսային կողմը, Մաննեանց երկրին մօտ՝ Ասորեստանցւոց գաղթականութիւններ էին։ Կարելի է թէ վերոյիշեալ Ահշերի թագաւորին հետ նոյն ըլլայ Ահոֆէրէ (Knudt. Nr. 24, Ov. 4). այս վերջին բնագիրը շատ աղճատ է եւ մնացած է միայն Գիմմերացւոց անունը. բայց Knudtzonի նման արձանագրութեանց մէջ գրեթէ միշտ Գիմմերացւոց կից կը գտնուին Մաննեանք ալ, այնպէս որ կրնանք ընդունիլ թէ Knudt. Nr. 24ի մէջ ալ յիշուած ըլլալու են Մաննեանք։

Անձուկ մտօք մաննեան երկիր մը (Ման)՝ ընդունելու ենք՝ մաննեան Ուիշդիշ, Զիկկիրտու, Միսիանդի եւ Բիտ-Դաիուկկու նահանգներէն զատ։

Բուն կամ անձուկ մտօք Մանի գլխաւոր եւ իշխանանիստ քաղաքն է Իզիրտու՝ ամէն արձանագրութեանց մէջ՝ սկսեալ Սաղմանասար Բ.ի արձանագրութիւններէն մինչեւ Ասուրբանիպալայ արձանագրութիւնները։ Այս քաղաքին դիրքն որոշելու երկու կռուան ունինք. Սարգոն 6 կրկնամղոն ճամբայ ընելով՝ Իզիրտուէ կը հասնի Բարու (?), որ Ալլաբրիոյ մէջն է, եւ Ասուրբանիպալ Իզիրտուէ

մինչեւ Իշտառոտի 15 օրուան ճամբայ կը համարի։ Վաննեան սեպագրութեանց մէջ Մանի գլխաւոր քաղաքը Սիսիրիհադիրիս (Սէյս, Nr. XLIII, 39) կը կոչուի, որ քաղաքին անուան բնիկ ձեւն է՝ Ասորեստանցւոց Իզիրտուին համազօր[1]։ Մանի քաղաքներն են՝ Իշտատտէ, ինչպէս յիշեցինք՝ Իզիրտուէ 15 օրուան ճամբայ հեռու։ — Իզիբիա (Զիբիա[2])։ — Արմաիդ, թերեւս ատոր հետ նոյն է Արաիդ (*Արմաիդ, *Արվաիդ)։ Արաիդ կ'ըսուի "Նահանգ ծովեզերքի քով" (հաւանականօրէն Վանայ լճին վրայ)։ Նոյն աղճատեալ տեղը, ինչպէս կը տեսնուի, յանուանէ յառաջ կը բերուին Արաիդ երկրին քաղաքները, հմմտ. վարը։ — Ուրիշ երկու տեղ՝ Շուանդահուլ եւ Զուրզուկիա, "ամրութիւնք Մանեանց", զորոնք Զիկիրտուի Միտատի իշխանը քիչ

---

[1] Թէ Սիսիրի-հադիրի(ս) բաժնելու ենք, յայտնի է՝ Հալի-հադիրի, Բիրիա-հադիրի (տես վարը) անուններէն։ Տարակոյս չկայ որ այս անուններուն վերջին մասը միեւնոյն է։ Ուստի Իզիր-տու (Զիր-տու) է բնիկ անուան առաջին մասը Սիսիրին՝ Ասորեստանցւոց վերջաւորութեամբը՝ սեմական ձեւ առած, համառօտած եւ անորոշցած։

[2] Յառաջ կը բերեմ հետեւեալ յատուկ անունները, որ (ա, ի, է, ու) յաւելուածական ձայնաւորով եւ առանց անոր կը գտնուին. Ագուտի եւ Գուտի, Ասու եւ Սուա, Ասալլաի եւ Սալլաի, Ատուն եւ Տուն, Ա(ե)րանա եւ Տերանա, Իզիրտու եւ Զիրտու, Ուբբումէ եւ Բումու, Ուր(ու)սա եւ Րուսա, Ուիշդիշ եւ Իշդիշ, Ումիլդիշ եւ Միլդիշ, յունարէն Ἄμαρδοι եւ Μάρδοι, Ἄπαρνοι եւ Πάρνοι, Ἀτροπατηνή եւ Τροπατηνή, թերեւս Ἀκεσσαία եւ Κοσσαῖοι, Κίσσιοι, հինպրս. Ասագարտա — բաբելոներէն Իզկարտա եւ Σαγάρτιοι. Ծանօթ է որ Էրաններէնի մէջ սովորական ձայնական օրէնք է որ առվ սկսող անուանց մէջ յընթացս ժամանակաց այս ա-ը կ'իյնայ։ Կարելի է թէ Ասուրբանիպալայ սղոցածոյ արձանագրութեան մէջ յիշուած Ուզբիան (*Ուշու(ի)բիա ?) Իզիբիայի հետ նոյն ըլլայ, եւ այս պարագային մէջ նոյն անուան յետսագոյն ձեւը կրնանք համարել։

մ'ատեն գրաւելէ ետքը՝ ստիպուեցաւ դարձեալ ետ տալ: Զուրզուկկայի մէջ Վինքլէր Պտղոմէոսի Ζουρζούαն կ'ուզէ տեսնել:

Ասուրբանիպալայ B սղոցածոն ալ յաջորդ քաղաքներն ունի. Ա-ու-խ-ա-շ: — Պ-ա-շ-ա . . . . ա-ա: — Բ-ա-ա-ա-ա-փ-ա-ա: — Ա-շ-ռ-խ-ա-շ: — Ու-ր-չ-ի-ա-մ-ա-ն: — Ու-պ-պ-ի-շ: — Սի-հ-ա-ա: — Ն-ա-պ-ի-ր-ի-ն-ի: Սեպագրութիւնը կը յաւելու. "8 ամուր քաղաք եւ անհամար փոքրիկ քաղաքներ մինչեւ Իզիրտի նուաճեցի, աւերեցի, կործանեցի, այրեցի: Մարդիկ, ձի, էշ, արջառ, ոչխար քաղաքներէն հանեցի ու աւար ըրի:„ Նոյն սեպագրութիւնը Մանի վերաբերող ուրիշ քաղաքներ եւ նահանգներ ալ կը յիշէ: Ասոնք են՝ Ա-տ-ր-ա-ն-ա (Տ-ի-ր-ա-ն-ա[1]), այս քաղաքն ապստամբեցաւ Ահշէրի՝ Իզիրտուէ մեկնելէն ետքը: Այս քաղաքն "ամուր„ վերադիրն ունի: — Նմանապէս ամրութիւն էին Ու-ր-մ-ի-խ-ա-ւ եւ Ու-պ-ի-ա, թերեւս նոյն Իզիբիայի (Զիբիայի) հետ: Ասուրբանիպալ Պատդիրը նուաճելէն ետքը՝ կ'առնու մանեան յաջորդ նահանգներն ալ՝ Ար-ա-խ-ա-ն-ի-շ, Աի-կ-ա-ն-ա-կ-ի, Հ-ա-ր-ու-ի, Կ-ա-մ-ա-ր-փ-ա-ի: "Հարսի նահանգը, լեռնաշխարհ մը կումուրդաիէ վեր:„ — Կումուրդաիի համար կ'ըսուի "Մանեանց երկրին մէջտեղը:„ Արախանիշի այն ատենուան հրամանատարը կը կոչուէր Ու-ա-ի-տ-ի-շ-ա-տ-ի:

Բ. Ու-ի-շ-տ-ի-շ (Ու-մ-ի-շ-տ-ի-շ?): Եթէ տոսպեան արձանագրութեանց մէջ յիշուած Հուդիստիս կամ Ուդիստիս երկիրը նոյն է Ուշդիշի հետ, այն ատեն Ուիշդիշ ընթերցուածոյն ուղիղ ըլլալն ալ ապահով է: Այս պարագայի մէջ Ուիշդիշ եւ Իշդիշ համարուելու են կամ այն դէպքերէն, որոնց մէջ անուանք յաւելուածական ձայնաւորով եւ առանց անոր կը գործածուին հաւասարապէս (տես էջ 98, ծան. 2), եւ կամ Ու՝ մատնանիշ կ'ընէ Վ-ի-շ-տ-ի-շ հնչումը: Ըստ ինքեան Ումիլդիշ կամ Միլդիշ ըն-

1 Տես նախընթաց ծանօթութիւնը:

թերցուածն ալ հնարաւոր է (այսպէս Տիլէ, Վինքլէր եւ ուրիշներ)։ Ուիշդիշ արտաքոյ կարգի վայրենի լեռնաշխարհ մըն էր։ Երբ Տիգղաթպիղեսեր Ա. այս երկիրն արշաւեց, ստիպուեցաւ Արումա լեռները թողուլ իւր պատերազմիկ կառքերը, զորոնք յառաջ տանիլ չափազանց դժուարին էր, եւ միայն իւր ոտանաւոր զինուորներովը նուաճեց այս երկիրը։ Նշանակութենէ զուրկ չէ սա պարագան, որ Ասուրբանիպաղայ քով Արումա լեռները Սարաւշ եւ Ամմաւշ երկիրներուն մէջ ըլլալ կ'երեւան։ Սարգոնի ատեն Ուիշդիշի վրայ կ'իշխէր Բագդատի[1], Մանի Ուլլուսուննու թագաւորին եղբայրը։

Ուիշդիշի մաս համարելու ենք Զիհարդուդդունահանգը (Sarg. An. 110)։ Եթէ բնագրին մէջ նոյն տեղը Զիհարդուզզունէ յառաջ ուշի մ'աւելցընենք, այն ատեն կրնանք ըսել թէ Զիհարդուզզու Ուաւշ լեռնէն 5 կրկնամղոն (kaskalgit) հեռու էր։

Գ. Զիկիրտու (Զիգիրտու)։ Սարգոնի ժամանակէն միայն ծանօթ են մեզ այս երկրին դէմ մղուած պատերազմներ. այն ատեն Զիկիրտուի իշխանն էր Միտատի[2]։ Այս իշխանն իւր երկրին

---

1 Վինքլէր անմտադրութեամբ Բագ կը ձայնագրէ։ Այս յատուկ անուան առաջին մասը՝ Բագ (= հինպրս. Բագա = Աստուած) ի մէջ այլոց կը տեսնուի նաեւ Բագ-մաշտու (դիցուհւոյ մ'անուն, տես էջ 90) եւ Բիտ-Բագայա (մարական գաւառի մ'անուն) անուանց մէջ։ K 1067 (հմմտ. եւ K 1037) մէջ կը յիշուի Բագ-Տեշուբ մը, որ Մանի կողմերը կուսակալ է՝ Սարգոնի ատեն։

2 Ռոստ (Untersuch. z. altorient. Gesch.: Mittheil. d. Vorderasiat. Gesell. 1897, Nr. 2, էջ 86) այս Միտատտին կը նոյնացընէ Կեփալիոնի “Մարաց„ Մեդիդոս թագաւորին հետ (հմմտ. Եւսեբիոս, հրտ. Շէօնէ, Ա., Ցւլ. 28)։ Մեդիդոս անունն քիչ մ'արուեստական կը հնչէ՝ ձեւուած ըլլալով “Մեդիա„ (Մարաստան) անուան վրայէն։ Թէեւ հաւանական չէ, սակայն կրնայ մտածուիլ, որ Զիկիրտուի իշխանին անունն՝

միացուց՝ բուն Մանէն ապստամբեալ Շուանդահուլ եւ Դուրդուկկա քաղաքները. բայց զանոնք երկայն չկրցաւ պահել, ինչու որ նոյն տարին Սարգոն (Թագաւորութեանը 3դ տարին) զանոնք ետ առաւ: Զիկկիրտու այն մեծ դաշնակցութեան մէջը մտաւ, զոր Ուրարտու Ասորեստանի դէմ կազմեց շատ մը տէրութիւններէ: Երբ Սարգոն Թագաւորութեանն 8դ տարին՝ Թշնամեաց դաշնակցութիւնը խորտակելու եկաւ, Զիկկիրտու ալ յաղթողէն վրէժը զգաց: 3 ամրոց, 24 քաղաք եւ Պարդա իշխանանիստը կողոպտուեցան եւ մոխիր դարձան: Երկրին Միտատտի իշխանն ի փախուստ աճապարելով ազատեցաւ: Զիկկիրտուէն Ուրարտուի վրայ քալեց Ասորեստանցւոց բանակը: Երկիրներու ցանկին մէջ (Sarg. An. S. XIV, 8 եւ P. p. IV, 20) Զիկկիրտու գրուած է Անդիայի եւ Մանի մէջտեղը, իսկ Սարգոնի գլանաձեւ արձանագրութեան մէջ՝ Անդիայէ յառաջ: Զիկկիրտուի մայրաքաղաքն էր Պարդա:

**Դ. Միսխանդէա** ալ մասնակցած է Ուրարտուի ձեռօք կազմուած դաշնակցութեան:

**Ե. Բիթ-Դախուկկի**: Դախուկկեանց իշխող հարստութիւնն, որուն անուամբն երկիրը կոչուած է, հպատակելէ ետ կեցած ըլլալուն պատճառաւ Սարգոնէ գերի տարուեցաւ (տես էջ 95): Սարգոն երկու տարի ետքը (Թագաւորութեանն 8դ տարին) անգամ մ'ալ Կարալլուի եւ Բիտ-Դախուկկիի վրայ քալեց:

Սեպագիր արձանագրութեանց մինչեւ հիմայ յառաջ բերուած տեղեկութեանց վրայ հիմնուելով՝ բուն Մանը (յատուկ կամ անձուկ մտօք Ման՝ Ուխշդիշէ եւն անկախ) Վանայ ծովուն հարաւարեւելեան եւ Ուրմիոյ լճին արեւմտեան կողմն

---

Հնագոյն լաւ աղբիւրէ մ'անցած ըլլայ Կեփալիոնի բաւական նենգեալ մեկնութեան մէջ:

այնպէս մը գտնելու ենք, որ հարաւէն Հուբուշկիա, արեւելքէն Կիրզան, հիւսիսէն Ուրարտու սահման ըլլան։ Այսպէսով Ման մերձաւորապէս կ'իյնայ այն տեղը, ուր են այսօրուան Շատտախ, Խոշաբ, Բաշկալա եւ ասոնց հիւսիս-արեւելեան կողմէն քիչ մ'ալ տեղ։ Արեւելեան կողմանէ՝ յատուկ մասը Մանի սահմանակից էր Զիկկիրտու նահանգն՝ ունենալով իւր հարաւային կողմը Կիրզանն եւ հիւսիսային կողմն Ուրարտուն եւ արեւելեան կողմանէ Անդիան, այսինքն Երասխայ դաշտը Խոյի եւ Մարանդի քով։ Հարաւ-արեւմտեան կողմանէ Մանեանց սահմանակից էր Կարալլու եւ Թերեւս Ուիշդիշ[1] ալ, եւ հարաւ-արեւելքէն՝ Մալհիս։ Ընդհանրապէս Ասորեստանցւոց իրաց հմուտ այլեւայլ անձինք միաբան են Մանեանց բնակավայրն որոշելու մէջ։ Հոմմէլ (Gesch., էջ 598) Մանեանց երկիրը մինչեւ Երասխ կը տարածէ, եւ նմանապէս Շրադէր՝ նոյն երկիրն Ուրմիոյ լճին եւ Երասխին մէջտեղը կը դնէ։ Տարակոյս չկայ որ այս երկու դէպքերուն մէջ Զիկկիրտուն ալ ի միասին առնուած է։ Վինքլէր (Gesch., էջ 200) տեղը չի ճշդեր, այլ անորոշ կերպով մը "Ուրմիոյ լճին արեւմտեան եզերքներուն վրայ„ կ'ըսէ։ Հմմտ. Բիլլէրբէք (BA III, 139). "Մանեանց երկիրներն էին Ուրմիոյ լճին արեւմտեան եւ հարաւային ափերուն վրայ.„ Սէյս (JRAS XIV, էջ 497) կ'ըսէ. "Ասորեստանի արձանագրութեանց Մաննայն ... որ Վանայ Թագաւորութեան եւ Ուրմիոյ լճին մէջտեղը կ'իյնար։„ Յայտնի է թէ Սաղմանասար Բ. է մինչեւ Ասուրբանիպաղ՝ ամէն ժամանակ նոյն մնացած չեն Մանեան նահանգաց սահմաններն, այլ պէտք ենք ըսել թէ մասնաւորապէս Ասոր-

---

1 Հմմտ. Աշխարհացոյց տախտակներն ի KB I. եւ II. եւ նմանապէս „Zur Geographie des assyrischen Reiches“ յօդուածը (ի Sitzungsber. d. Berl. Akad. 1890, էջ 331)։

հադդոնի եւ Ասուրբանիպաղայ ատեն՝ Մանեանք տեւական կերպով դէպ ի հարաւ եւ հարաւ-արեւելք՝ դէպ ի Ուրմիոյ լճին հարաւային ափը յառաջացան, որով երբեմն երբեմն մասամբ Ասորեստանցւոց հարկատուները կ՚ըլլային, այնպէս որ մինչեւ անգամ Սարգոն ստիպուեցաւ զիրենք Ուրարտուի դէմ պաշտպանել; որուն հետ միշտ միացած էին իրենց քաղաքական շահերուն համանման ըլլալուն պատճառաւ. այս առթիւ էր որ մէկալ մանեան դաշնակից տէրութիւններն (Ուիշդիշ, Զիկիրտու) Ուրարտուի հետ միացան ընդդէմ յատուկ մտօք Մանի, այսինքն՝ գլխաւոր թագաւորին երկրին դէմ։ Նորերս Բելք[1] Մանեանց երկիրն Ուրմիոյ լճին հարաւային, հարաւ-արեւելեան եւ հարաւ-արեւմտեան ափունքը փոխադրեց։ Իւր գլխաւոր ապացոյցն է Թաշթեփէի (Ուրմիոյ լճին հարաւակողմը) արձանագրութիւնն, որուն բովանդակութիւնը տեղեկութիւն մըն է՝ Ուրարտեանց Մենուաս թագաւորին Մանեանց երկիրն արշաւելուն եւ նուաճուած երկրին մէջ պալատ մը շինուելուն վրայ։ Չեմ կրնար ընդունիլ թէ Թաշթեփէ, արձանագրութեան գտնուած տեղը, Մանեանց պետութեան ճիշտ մէջտեղն ըլլայ, ինչպէս Բելք կը հետեւցընէ։ Հաւանականագոյն կ՚երեւայ ինձ ընդունիլն, որ Մանեանք Ասորեստանցւոց բանակին յարձակումներէն ազատելու համար՝ հարաւ-արեւելք, այսինքն Ուրմիոյ լճին հարաւակողմը տարածուող դաշտը քաշուեցան, ուստի երկիր մը, ուր այն ատենները տակաւին տեւականապէս գաղթականութիւն հաստատած չէին, եւ նմանապէս հաւանականագոյն կ՚երեւայ ինձ թէ յիշեալ արձանագրութիւնը կանգնուած է Մենուասի հասած ամէնէն հարաւային կէտին վրայ։ Այս խնդրոյն հետ

1 Über das Reich der Mannäer (Verhandl. d. Berl. Anthrop. Gesellsch. 1894, S. 479 ff.)

սերտ կապուած է այն խնդիրն ալ թէ Մանեանք ո՞ր տեղէն գալով՝ իրենց երկիրը հաստատուեցան։ Յելք կը կարծէ թէ Ուրմիոյ լճին հարաւային եզերքին արեւելակողմէն եկան. վասն զի եթէ Երասխէն եւ Ուրմիոյ լճին հիւսիսային եզերքէն եկած ըլլային, հարկ էր որ նախ Կիրզանի տէրութիւնը ջնջէին, սակայն գիտենք որ այս տէրութիւնը Սաղմանասար Բ.ի ատեն դեռ գոյութիւն ունէր։ Ասորեստանեայ արձանագրութեանց մէջ Մանեաններէն քիչ մ'աւելի կանուխ (իբր 55 տարի) կը յիշուի Կիրզան. սակայն այս պարագան ապացոյց մը չէ Մանեանց՝ Կիրզանի հաստատութենէն ետքը գաղթած ըլլալուն. ասոր հակառակն ալ կարելի է, եւ այս պարագայի մէջ՝ Մանեանց գաղթականութիւնն Ուրարտեանց գաղթելուն հետ նոյն պատճառական աղերսը կ'ունենայ։ Ուրմիոյ լճին հիւսիսային եւ արեւելեան կողմերը գտնուող երկիրներէն՝ առանձինն խմբերով գաղթող ժողովրդոց հոսանքը Թ. դարուն առաջին կիսուն դադար առաւ, սակայն այս հոսանքին սկզբնաւորութիւնը շատ հաւանական է որ Ժ. դարուն վերջին տարիներէն է, որով՝ Կիրզանի առաջին անգամ արձանագրութեանց մէջ յիշուելէն յառաջ։

Տոսպեան սեպագրութիւնք՝ Ասորեստանցւոց Մաննայիին համազօր կը դնեն Մանա երկիրը։ Մաննայի = Մանա հարկ է ճշդիւ զանազանել Վան = Բիաինայէ, ինչպէս արդէն շեշտած է Սէյս։ Հին Կտակարանի մէկ տեղն ալ (Երեմ. ԾԱ, 27) Մանեանք “Միննի„ (מִנִּי) անուամբ կը գտնուին, եւ այն՝ Ուրարտեանց (= אֲרָרַט) եւ Ասքանազեանց (= אַשְׁכְּנַז) հետ մէկտեղ։ Հին Կտակարանի ասորերէն թարգմանութիւնն եւ Տարգում անճշդութեամբ מִנִּי ի տեղ “Արմէնիա„ կը դնեն. ոմանք ալ աւելի յառաջ երթալով Ար-մէնիա անուան

մէջ երբայեցերէն "Միննի„ն փնտռեցին, որ ստու-գաբանական խաղալիկ է լոկ։ Արդէն Բոխարդ מִנִּי ի հետ համեմատած է Μινύαςը Նիկող. Դամասկա-ցւոյ քով (Յովսեպ. վասն Հնութ. Ա. գ. 6։ Եւսեբ. վասն պատր. աւետ. Թ. 11)։ Ստոյգ չէ թէ Գուդէայի քով (B, col. VI, 4) յիշուած Մե-նուան նոյն է մեր Մանի հետ թէ ուրիշ երկիր կամ լեռ մըն է[1]։ Եթէ նոյն է, այն ատեն Մանի գոյութիւնը մինչեւ 30ր դար վեր կ'ելլէ։ Մաննաշ եւ Մաննաի ձեւերուն համար հմմտ. Պարսուաշ եւ Պարսուա, Ելենզաշ եւ 'Αλίνζα.

Թագաւոր մը կ'իշխէր յատուկ մտօք Մանի վրայ, որ առ հասարակ Մաննեան մէկալ նահանգ-ներէն չէր զանազանուիր։ Մաննեան Ուիշդիշ, Զի-կիրտու եւ Միսիանդի նահանգներուն "կուսակալ-ները„ Մանի թագաւորէն թոյլ կերպով մը կա-խում ունէին։ Գալով Ուիշդիշի՝ ատոր դիրքին նկատմամբ ապահով բան մ'ըսել կարելի չէ։ Ուիշդիշ՝ Մաննեան նահանգներէն մէկուն կամ շա-տերուն սահմանակից ըլլալու է. նմանապէս՝ հե-ռու չէր Սարաւշէ եւ Ամմաւշէ։ Եթէ Ուիշդիշի Արուսա լեռներն նոյն են Կիրհուի Արուա լերանց հետ, այն ատեն Ուիշդիշ յատուկ մտօք Մանի հարաւ-արեւմտեան կողմը կ'իյնայ կամ Վանայ ծովուն հարաւակողմը տեղ մը, եւ ըստ այսմ Միկտիարայի եւ Կարալլուի մօտերը փնտռուելու է։ Ուիշդիշ կը յիշուի արդէն Տիգղաթպիղեսեր Առաջ-նոյն արձանագրութեանցը մէջ եւ տարակոյս չկայ որ վերջէն Մաննեանց գաղթելէն ետքը մաննեան նահանգ եղաւ։ Հաւանականօրէն Ուիշդիշի հետ նոյն է տոապեան սեպագրութեանց Ուգիստիս կամ Հուգիստիս անուն գաւառը։ Սէյս մէտ է ընդունե-լու որ այս գաւառը Բուստուսի (Պարսուայի մէջ կամ քովերը) կը վերաբերէր։

---

[1] Հմմտ. Jensen: Zeitschr. f. Assyriol. X. 361.

Տիլէ[1] եւ ասոր հետեւելով Հոմմէլ[2] եւ այլք[3] Զիկիրտուն նոյն համարեցան Σαγάρτιοι հետ, զորոնք Հերոդոտոս (I, 125. III, 93) բուն Պարսկաստանի վաչկատուն ցեղերէն կը համարի։ Այս վաչկատուն ցեղին սկզբնական բնակավայրն եղած պիտի ըլլայ Կուհիստան։ Այս ցեղին երկիրն Աքամենեանց արձանագրութիւններուն մէջ զատ գաւառ մըն է Ասագարտա (= Անձաւներու, սորերու աշխարհ) անունով, զոր սեմական թարգմանութիւնը Իշչարթու ըրած է։ Պտղոմէոս (Զ, բ, 6) Սագարտացիները Զագրոս լերան արեւելեան կողին վրայ կը դնէ՝ Ζάγρου πύλαιի (= Հուլվանի կրճերը[4]) կողմերը։ Վերջապէս Ստեփանոս Բիւզանդացի կ՚ըսէ թէ Սագարտացիք Սագարտիա (Σαγαρτία) կը բնակին, որ է Կասպից ծովուն մէկ թերակղզին։ Այս ըսուածներէն սա՛ իրողութիւնը կ՚ելլէ, թէ երանեան բարձրագաւառէն կամաց կամաց դէպ արեւմուտք յառաջացող Սագարտացիները կամ թերեւս լաւագոյն՝ ցեղին արմատէն բաժնուող ճիւղերը երկու կեդրոններու (Հուլվան եւ Կասպից ծով) բաժնուեցան։ Կամ Ստեփանոս Բիւզանդացւոյն ըսածը՝ Հուլվանի Սագարտացիներուն բնակավայրը դէպ ի հիւսիս-արեւելք մինչեւ Կասպից ծով տարածելով՝ կրնանք Պտղոմէոսի ըսածին հետ համաձայնցընել։ Ես՝ Սագարտացւոց այս արեւմտեան գաւառը դիմելը՝ հաւանական կը համարիմ Պարսից իշխանութեան միջոցին կամ անկէ ետքը, եւ ոչ թէ Սարգոնի իշխանութեան ատեն, այս պատճառաւ ալ Զիկիրտուի Σαγάρτιοιի հետ նոյն

---

1 Gesch. 261, ծան. 1 եւ 265։

2 Gesch. 712, ծան.։

3 Այսպէս՝ Վինքլէր (Unters. z. altorient. Gesch. 112 եւ Altorient. Forsch. I. 485), Մարքուարտ (Unters. z. Gesch. v. Eran. Nr. 6: Philologus, Bd. 55, S. 231, ծան.)։

4 Հմմտ. W. Sieglin, Atlas antiquus, Nr. 6: Asia uperior.

ըլլալը՝ երկրային։ Աւելի կողմն եմ Σαγάρτιοι անունը՝ մարական Զակրուտի տեղւոյն հետ նոյն համարելու։ Մարքուարտ[1] Սագարտացւոց Զագրոսի հիւսիսային կողմը գտնուող բնակավայրին՝ ուշ ժամանակի Քրդաց բնակութեան տեղւոյն հետ նոյն ըլլալէն մոլորած՝ Քրդաց (Γόρδιοι, Γορδυαῖοι եւն) անուան մէջ Սաա-գարտա = Σα-γάρτιοι անուան համառօտութիւնը կը տեսնէ։

Հոմմէլ (Gesch. 413) Միսիանդի անունը՝ Մեսու եւ Անդիա երկիրներուն անուններէն կազմուած կցկցանք մը կը համարի, բայց առանց հիման, ինչու որ այս երկու երկիրներն ուղղակի իրարու սահմանակից չէին, որչափ ծանօթ են մեզ սեպագրութիւնք։ Նոյն գիտունը (Gesch. 714) հանճարեղ, այլ նմանապէս անապացուցանելի կարծիք մը կը յայտնէ իբր թէ Դաիուկկի կազմուած ըլլայ Դաիէ եւ Ուկկու անուններէն։ Դաիուկկի շատոնց համեմատած են Մարաց Դէիոկէս (Δηιόκης) իշխանին անուանը հետ, զոր ծանօթացուցած են դասականք. սակայն այս համեմատութեամբ դադար չառնելով՝ աւելի յառաջ գացին եւ ասորեստանցի Դաիուկկին ուղղակի մար Դէիոկէսի հետ նոյն անձ հրատարակեցին[2]։ Թէ երկու անուանց մէջ նմանութիւն մը կայ, ինչպէս ըսինք, չի կրնար ուրացուիլ։ Վինքլէր եւ Ռոստ[3] Բիտ-Դաիուկկին մարական երկիր նկատելով՝ Դաիուկկեանց հարստութենէն կը զանազանեն, բայց ըստ իմ կարծեացս՝

---

1 Philologus, Bd. 55, S. 231, ծան.։

2 Այսպէս Տիլէ, անդ 263, ծան.։ Հոմմէլ, անդ 714 (նաեւ՝ Gesch. d. alt. Morgenl. Samml. Göschen S. 133)։ Ասոր հակառակ Վինքլէր, Untersuch. 117, նմանապէս Prášek, Medien und das Haus Kyaxares 1890, S. 39. Անորոշ Ռոստի քով, անդ 85 եւն։

3 Վինքլէր, անդ 118։ Ռոստ, անդ 86։ Տիլէ Zeitschr. f. Assyriol. X. 425) մէտ է Վինքլէրի կարծիքն ընդունելու։

այսպէս ընելու ստիպիչ պատճառ մը չկայ։ Ամենեւին զարմանալի բան չէ որ միեւնոյն թագաւորին արձանագրութեանը մէջ Բիտ-Դախուկկի՝ պարզապէս Դախուկկի ձեւն առած է, հմմտ. զ. օր. Ադինի եւ Բիտ-Ադինի, Եակին եւ Բիտ-Եակին։ Դախուկկեանց հարստութիւնն իւր անունը տուած է այն փոքրիկ իշխանութեան, որուն վրայ կը տիրէր. եւ Սարգոն ալ Դախուկկեանց նախկին երկիրը Դախուկկի կը կոչէ՝ իշխող ընտանիքին գերի տարուելէն երկու տարի ետքն նոյն երկիրն եկած ատեն։ Բիտ-Դախուկկիի հետ կը յիշուի Ելլիպի եւ Կարալլու։ Ելլիպին՝ Մադաի բռնած երկրին հարաւային կամ հարաւ-արեւմտեան կողմը, իսկ Կարալլուն Ուրարտուի եւ Մանի մօտերը դնելու ենք, այնպէս որ այս կերպով ամենեւին հարկ մը չենք տեսներ՝ Բիտ-Դախուկկին մարական երկիր ընելու։

## 3. Կիրզան (Գիլզան?)։

Կիր-զան ընթերցումը բացարձակապէս ապահով չէ. կարելի[1] է Գիլզան ալ կարդալ։ Գիլզան ձեւէն զատ կայ Գուզան ձեւ մըն ալ. եւ վերջին ձեւին մէջ լին կորսուած ըլլալուն՝ նման օրինակ ունինք Բարհազիա եւ Բարհալզիա ձեւերը (տե՛ս վարը)։

Կիրզանի՝ սեպագիր արձանագրութեանց մէջ յիշատակուելուն նկատմամբ մեր ըսելիքն է. Ասուրնասիրպալ թագաւորութեանն առաջին տարին Կիռուրիի մէջ Կիրզանի եւ Հուբուշկիոյ հարկն առաւ, որ էր “ձի, արծաթ, ոսկի, կապար, պղինձ, պղնձէ անօթ.„ Նմանապէս թագաւորութեանը չորրորդ տարին Զամուայի մէջ Հուդունի, Հարտիշայի,

1 Ի մէջ այլոց Բիլլէրբէք (անդ. էջ 29 եւն) ալ Գիլզան կը կարդայ. սակայն դէթ յիշելու էր որ ընթերցուածոյն խնդիրը տակաւին ճշդուած չէ։

Հուբուշկիոյ եւ Կիրզանի հարկն առաւ՝ "արծաթ, ոսկի, ձի, գոյնզգոյն զգեստ, արջառ, ոչխար, գինի։" Ասորեստանի նոյն թագաւորն ուրիշ տեղ մը կը պարծի՝ "Կիռուրիէ մինչեւ Կիրզան" նուաճած ըլլալուն վրայ։ Սաղմանասար Բ.ի ատեն Կիրզանի վրայ կ'իշխէր Ա——[2] անունով թագաւոր մը։ Հաւանականօրէն Ասաւի յաջորդն էր Ու—քու—, որ Սաղմանասարի թագաւորութեան 31ր տարին ասպարէզի վրայ կ'երեւայ։ Սաղմանասար Բ. թագաւորութեանը առաջին տարին Նայիրեան ծովէն գալով՝ Գուզանի ճոխ հարկն առաւ, որ էր "ձի, արջառ, ոչխար, գինի, երկու երկապատ ուղտ։" Նմանապէս թագաւորութեանը երրորդ տարին Նայիրեան ծովէն գալով՝ Կիրզան մտաւ. երկրին իշխանն եղբայրներուն եւ որդիներուն անոր դիմացն ելաւ հպատակութեամբ եւ "կառքի ձի, արջառ, ոչխար եւ եօթն կրկնապատ ուղտ" մատոյց։ Կիրզանի Աշաւ թագաւորին մայրաքաղաքին մէջ՝ տաճարը կանգնուեցաւ Սաղմանասար Բ.ին մէկ մեծ արձանը՝ Ասորեստանի այս թագաւորին Նայիրեան երկիրներուն մէջ ըրած յաղթութեանց արձանագրութեամբը։ Սաղմանասար Բ. ասկէ Կիռուրի անցաւ։ Ասորեստանցւոց թագաւորին յիշեալ արշաւանքներէն մէկուն ատեն առած հարկը՝ Նիմրուդի սեւ կոթողը ժապաւէնի ձեւով պատող չորս բարձրաքանդակներէն առաջնոյն վրայ դրոշմուած է եւ յաջորդ ընթերցուածով մեկնաբանուած "Հարկ Սուայի ի Կիրզան՝ արծաթ, ոսկի, կապար, հողէ անօթներ, պղինձ, . . . , թագաւորին գոյքը, ձի, երկապատ ուղտ առի եւ։" Սաղմանասարի թագաւորութեան 31ր տարին՝ ասոր Դաիան-Աշուր անուն տուրտանը (= բարձրաստիճան պաշ-

1 Հմմտ. Ասիա, որ Դաիաենիի մէկ իշխանին անունն է (տես էջ 59)։ Սուհմէի մէջ գտնուող Ուաշտալի "քաղաքատէրն" ալ Սուա կը կոչուէր (տ. էջ 59)։

տօնակալ) Մուզասիրէ Կիրզան «իջաւ», ուր երկրին իշխանն Ուրսու, եւ Բուրխաա, Հառանա, Շաշգանա, Անդիա[1] նահանգները հարկ տուին «արջառ, ոչխար, կառքի ձի»։ Կայ կարեւոր տեղեկութիւն մըն ալ (Salm. Balaw. III. 2, 3 եւ Lay. 13, 6), որուն մէջ Սաղմանասարի նուաճած երկիրներուն տեղը կ'որոշուի «Արզաշկունէ մինչեւ Կիրզան, Կիրզանէ մինչեւ Հուբուշկիա» տաութեամբ։

Կիրզան Կիռուրիի հիւսիսային եւ Ուրմիոյ լճին հիւսիս-արեւմտեան կողմն է եւ տարածեալ նոյն լճին հիւսիսային ափունքը պատելով կը ձգի մինչեւ Մարանդ։ Ասով կը մեկնուի՝ երկապատ ուղտերու հոս գտնուիլն ալ, ինչու որ կը վկայեն թէ Ատրպատական կան այս ուղտերը[2]։ Կիրզանի սահմաններն են արեւմուտքէն՝ Մանեան նահանգները, հարաւ-արեւմուտքէն հաւանականօրէն Հուբուշկիա ալ, հիւսիսէն Զիկկիրտու եւ թերեւս Ուրարտու ալ եւ հարաւ-արեւելքէն Անդիա։ Կիրզանի դիրքին նկատմամբ ընդհանրապէս այլ եւ այլ քննիչք միաբան են։ Հմմտ. Schrader, KGF 167 եւ Namen der Meere (Abhandl. d. Berl. Akad. 1877) էջ 190։ Delattre, Le peuple èt l'empire des Mèdes 72, ծան.։ Hommel, Gesch. 554։ Tiele, Gesch. 187։ Winckler, Gesch. 197 (քիչ. մ'անորոշ՝ «Գիլզան եւ Հուբուշկիա Ուրմիոյ լճին վրայ եւ անոր հարաւային կողմը»)։ Belck, Ueber das Reich der Mannäer (Verhandl. d. Berl. Anthrop. Gesellsch. 1894), էջ 482։ Ըստ իմ կարծեացս Բիլլերբէք (անդ, 65) Կիրզանը չափազանց դէպ ի հարաւ կը դնէ, այսինքն այն լերան արեւելեան կողին վրայ, որ Ուրմիոյ լճին հարաւ-արեւմտեան եզերքին զուգահեռականը կը

---

[1] Անընթեռնլի դարձած է երկու գաւառի անուն. մէկը Բուրխայէ յառաջ, մէկալը Անդիայէ ետքը։

[2] Ritter, Erdkunde VIII, 671.

կազմէ (Ուշնուկի եւ Ուրմիոյ միջեւ երկարելով)։ Համմտ. Բիլլէրբէքի աշխարհացոյցը։

Ընդունելու ենք թէ Գուզան ձեւը ծագած է Կիրզանէ, Գիրզանէ եւ կամ Գիլզանէ. ու ձայնաւորը թերեւս կորսուած բաղաձայններուն տեղ դրուած է։ Այս Գուզանայի հետ շփոթելու չէ աշխարհագրական ցանկերու եւ անուանագիր ցուցակին Գուզանան, որ աւելի առնչութիւն ունի Հին Կտակարանի Գոզանին (גּוֹזָן) եւ Պտղոմէոսի Γαυζα-νῖτιςին հետ, որ երկիր մըն է Քաբուր գետին վրայ[1]։

4. Միկտիարա, Սուանքա (Սուամքի), Պուդդիր (Պուխտիրի)։

Ա. Միկտիարա։ Սամսիրամանի սպարապետն՝ երկրորդ անգամ Նայիրիի դէմ արշաւած ատեն Հիրսինայի (ողէլ Միկտիարա) 300 քաղաքներն առաւ եւ հասաւ "արեւմտեան ծով„, այսինքն՝ Վանայ լիճը։ Յաջորդ արշաւանքին միջոցին Սամսիրաման անձամբ առաւ Հուբուշկուի, Միկտիարայի, Սունբայի, Մանի, Պարսուայի եւ Տաւրլայի հարկը։ Հիրսինայի իշխանապետութիւնը, որ տիրող հարստութեան անուամբ՝ շատ անգամ (Ադինի, Եակին եւն) Միկտիարա կը կոչուի, Վանայ լճին հարաւային ափանց մօտերն ըլլալու է. Բիլլէրբէք (անդ 43) տեղն աւելի ճշդելով կը կարծէ թէ կարելի է Ռստան-Վերգունիսի կամ Բաղիշու կողմերը դնել։ Անկարելի չեմ համարիր թէ Նիկդիարա, որ Սարգոնատար Բ.ի ատեն Մաղամուայի այսինքն Ուրմիոյ լճին հարաւակողմը կը բնակէր, իբրապէս հայրն ըլլայ Հիրսինայի եւ ըստ հետեւորդի՝ Միկտիարա = Նիկդիարա[2]։ Սակայն այլեւ-

[1] Համմտ. Schrader, KGF 167. Delizsch, Par. 184. Winckler, Alttestam. Unters. 108 ff.

[2] Լաւագոյն է հարցական նշան մը դնել Միկտիարա — Նիկդիարայի առջեւ, զոր իբր օրինակ յառաջ բերած էի

այլ պարագաները մեկնելու համար՝ հարկ է Բելքի[1] հետ այն կարծեաց ապաւինիլ թէ Նիկդիարա կամ Միկտիարա Ուրմիոյ լճին վրայ պարտութիւն կրելէն ետքը՝ հիւսիս-արեւմուտք փախաւ եւ Վանայ ծովուն հարաւային եզերքին մօտերը նոր հարըստութիւն մը հիմնեց։ Բիլլէրբէք (անդ. 43) շատ յանդգնական կը համարի Միկտիարա = Նիկտիարա մոլերեցուցիչ հաւասարութիւնը։

Բ. Սա-նքան նուաճեց Սամսիրամանի սպարապետը՝ Միկտիարայի եւ Ուշպինայի (= Ուրարտուի Իսպուինիսի) երկիրներէն դառնալէն ետքը։ Վերջէն Սամսիրաման անձամբ Սունբայի հարկն առաւ վերը Միկտիարայի մէջ յիշուած երկիրներուն հարկին հետ մէկտեղ։ K 689 նամակին մէջ յիշուած Սա-մքէն կարելի է Սունբայի հետ նոյնացընել։ Մ եւ Ն տառերուն գիրար փոխանակելուն համար հմմտ. Սուհմէ եւ Սուհնի։ Սունբա Վանայ լճին մօտերը պէտք ըլլայ՝ Ուրարտուի, Մանի եւ Միկտիարայի քովերը։ Ասորեստանեայ անբաւական աղբիւրներէն՝ ասկէ աւելի որոշ բան մը հանել կարելի չէ։

Գ. Պադդէր (Պախդէրէ)։ Տիգղաթպիղեսեր Ա. Նայիրեան երկիրները թուարկած ատեն՝ Պախդէրէն Հիմուայի եւ Ուիրամի միջեւ կը յիշէ։ Սամսիրաման Աշուրի երկրին տարածութիւնը կը սահմանէ "Նայիրիի Պադդիրա քաղաքէն մինչեւ Կար-Շուլմանաշարիդ (Տիլբարսիպ, այսօր Բիրեջիկ) քաղաքը.„ ասով կ'իմանայ Ասորեստանի վերին իշխանութեան տակ գտնուող երկիրներուն հիւսիս-արեւմտեան սահմանը։ Սարգոն ինք զինքը կ'անուանէ "նուաճող Մանի, Կարալլուի եւ Պադդիրիի։„

---

(էջ 59) Մ եւ Ն տառերուն գիրար փոխանակելուն. իբր յարմարագոյն օրինակ առնելու է՝ Սունբա — Սումբի։

1 Das Reich der Mannäer (Verhandl. d. Berl. Anthrop. Ges. 1894), S. 479 ff.

Ասուրբանիպալ Պադդիրի շրջակայից քաղաք՝ երբ զէնքի զօրութեամբ եա առաւ Մաննեանց ձեռքէն, որոնք նոյն քաղաքներն Ասուրբանիպալայ նախորդաց առեն գրաւած էին։ Մերձաւորապէս միայն կարելի է Պադդիրի դիրքն որոշել. Մանի, Կաբալլուի եւ Հուբուշկիոյ սահմանակցութիւնը կամ մօտաւորութիւնը՝ Վանայ լճին հարաւային կամ հարաւ-արեւելեան կողմը գտնուող երկիր մը, այսօրւան Հակկիարին մատնացոյց կ'ընէ։ Բիլլէրբէք (անդ, 68 ծան.) Պադդիրի դիրքն աւելի ճշդելով՝ Դաւուգիէի եւ Ամադիէի քովերը, ուստի Հակկիարիի ամէնէն հարաւային մասին մէջ կը դնէ։ Ես կը կարծեմ, թէ առանց ամենեւին դժուարութեան՝ կարելի է Պախտերին եւ Պադդիրը միեւնոյն երկիրը համարիլ եւ թէ Պախտերի՝ անուան հնագոյն ձեւը կը ներկայացրնէ։ Պադդիր ձեւը ծագած է ու երկբարբառին՝ երկար ա (*Պադիրբ) ձայնաւորի փոխուելովը. աս ալ՝ կրկին ներդաշնակութեամբ Պատտիր կամ Պադդիր եղած է։ Դժուարաւ կրնայ ուղիղ ըլլալ Պախտերիի Վանեան արձանագրութեանց Պուտերիային հետ նոյն ըլլալը՝ (Սէյս. Nr. XXXIII, 2, 8, 4). Սէյս այս վերջինս ալ կը նոյնացրնէ այսօրւան Բալուի հետ՝ Մուրադ-չայի վրայ։ Սա ալ կայ որ բոլորովին ապահով չէ Պուտերիա ընթերցուածը. կրնայ (Սէյսի ծանօթութեան համաձայն) Պուլարիաս ալ տառադարձուիլ։

## 5. Հուբուշկիա։

Հուդուշկիա՝ Հուբուշկիա[2] անուան մէկ երկրորդական ձեւը կը համարուէր, վասն զի յառաջ

1 Հոմմէլ (Gesch. 528, Ծան. 2) հաւանական կը համարի։

2 Հուբուշկի(ա) եւ Հուբուշկիա ձեւերուն համար համմտ. Բիտ-Բառաու եւ Բիտ-Բառաուա, Արաշտու եւ Արաշտուա, Ասու եւ Սուա, Հառանա եւ Հառանիա, Հումրի եւ

Սաղմանասարի կոթողին 44դ տողն եւն Հ—–ուք ([cuneiform]) կը կարդային. այսպէս դեռ Հոմմէլ (Gesch 554 ծան. 1,) սակայն այն ամէն խնդրական տեղերն եղած նշանը, ինչպէս նախ Լոց մատադիր ըրած է, Հ––ւք ([cuneiform]) նշանն է: Հմմտ. Lit. Centr.-Bl. 1880, սիւն 1587:

Ասուրնասիրպաղ Թագաւորութեանն առաջին տարին Կիռուրիի մէջ Կիրզանի եւ Հուբուշկիոյ հարկն առնելէն ետքը՝ Հուդունի եւ Կիրհուբի վրայ արշաւեց: Նմանապէս Թագաւորութեանը չորրորդ տարին Զամուայի մէջ նոյն երկիրներուն հարկն առաւ: Սաղմանասար Բ. Թագաւորութեանն առաջին տարին՝ սատրիկ լեռնուտ երկիր մը կտրել անցնելէն ետքը Հուբուշկիա մտաւ՝ գալով Արիդիէ, որ ի Սիմէսի: Հուբուշկիոյ մէջ երկրին համանուն մայրաքաղաքն եւ ուրիշ 100 քաղաքներ առաւ եւ այրեց: Սաղմանասար Բ. ի ատեն երկրին Թագաւորն էր Կ–կիա[2], որ "Թագաւոր Նայիրիի" ալ կը կոչուէր: Կակիա Ասորեստանցւոց ձեռքէն իւր բանակներովն անմատչելի լեռներ փախաւ, սակայն ծանր պարտութիւն մը կրելէն ետքը ստիպուեցաւ անձնատուր ըլլալ եւ հարկ մը վճարելն յանձն առնուլ: Սաղմանասարի աւարն եղան պատերազմիկ կառքեր, կառքի ձի եւ գերեալ բանակներ: Ասորեստանցիք Հուբուշկիայէն չուեցին Ուրարտուի Սուգունիա նահանգին վրայ: Սաղմանասար Թագաւորութեանն երրորդ տարին Կիրզանէ Հուբուշկիա անցաւ, հոն բերդ մ՚առնելէն ետքը՝ յառաջացաւ Էնզիի կիրճերը: 27 տարի անցնելէն ետքը միայն կը յիշուին դար-

---

Բիտ-Հումրիա, Կարալլա եւ Կարալլիա, Զամու եւ Զամուա, Մազամու եւ Մազամուա, Դիռա եւ Դիռախ, Լուկի եւ Լուկիա, Սուկկա եւ Սուկկիա, Պարսու եւ Պարսուա, Կակի եւ Կակիա, Ռու եւ Ռուա:

[2] Հմմտ. Կակի, որ Մարաց Բիտ-Զատտի նահանգին իշխանին անունն է:

ձեալ Հուբուշկիոյ վրայ եղած արշաւանքներ։ Այս միջոցին Հուբուշկիոյ մէջ Դուփանա կամ Դուպաա անուամբ մէկն իշխան եղած էր եւ պարտուպատշաճ հարկը տուաւ Դախան-Ասուր տուրտանին, որ երկու անգամ Հուբուշկիա եկած էր՝ Սաղմանասարի թագաւորութեան 30ᵀ եւ 31ᵀ տարիները։ Դախան-Ասուր առաջին անգամ Հուբուշկիա մտաւ կալհուէ գալով եւ Զաբն անցնելով եւ ասկէ ետքը Մալհիս, Ման եւն գնաց. երկրորդ անգամ Հուբուշկիայէ ճամբայ ելլելով՝ Մուզասիր գնաց։ Սաղմանասարի յաջորդը Սամսիրամանի Բ. ալ՝ իւր երրորդ արշաւանքին ատեն՝ Զաբ գետն ու Սիլար լեռներն անցնելէն վերջը Հուբուշկիոյ Դադիի իշխանէն Հարկ առաւ. տարակոյս չկայ որ այս Դադիին Սաղմանասարին Դատային կամ Դատանային հետ նոյն անձն է։ Մի եւ նոյն ժամանակ Միկտիարա, Սունբա, Ման եւն իրենց Հարկերը տուին։ Անուանագիր ցանկը միայն կը յիշէ Ռամմանիրարի Գ.-ի Հուբուշկիա ըրած արշաւանքներն եւ զանոնք 805, 792, 785 եւ 784 տարիներուն կը դնէ։ Սարգոն 715ին Մանի վրայ արշաւած ատեն Հուբուշկիա հանդիպած է. երկրին այն ատենուան իշխանէն Եանզու— Հարկ տուաւ ձի, արջառ եւ ոչխար, եւ յաջորդ տարին ալ արջառ եւ ոչխար տուաւ, երբ Ասորեստանի թագաւորը դարձեալ Ման կը գտնուէր։ Ասարհադդոնի ատեն Իշկուզացիք մինչեւ „Հուբուշկիոյ կիրճը[1]“ յառաջանալով Ասորեստանի սահմանին կը սպառնային։

Երկրին մայրաքաղաքն ու ամուրն ալ նմանապէս Հուբուշկիա կը կոչուէր։ Բաց ի մայրաքաղաքէն՝ յանուանէ քաղաք մը միայն ծանօթ է մեզ, որ է Շիլայա, Կակի թագաւորին ամրոցն, զոր Սաղմանասար Բ. նուաճելու ատեն՝ 3000 հոգի գերի վարեց եւ անհամար բազմութեամբ ոչխար, ձի, ջորի եւ հորթ առաւ տարաւ։

---

[1] Ասոր վրայ տես վարն՝ Աշգուզա = Իշկուզա անուան տակ։

Բազմաթիւ կռուաններ ունինք Հուբուշկիոյ դիրքն որոշելու։ Սահմանաւոր այս երկիրը կու գայ Սիմէսիէ, որ Նամրիի քովն էր. արեւելքէն Հուբուշկիոյ սահմանակիցն է Կիրզան։ Նմանապէս Ասորեստանցւոց բանակը Զաբը (անշուշտ վերին Զաբը) անցնելով հոն կը հանէր եւ ամէն անգամ Մանի վրայ արշաւած ատեն Հուբուշկիան կը շօշափէր։ Ուստի Հուբուշկիան ըլլալու է վերին Զաբի եւ Տիգրիսի մէջ (Զախուի ուղղութեամբը), այսօրուան Բահդինանի կամ Կոլակինէի եւ դաստականաց Ադիաբենէ նահանգին մէկ մասին տեղը։ Սեպագիր արձանագրութեանց անորոշ տեղեկութեանց բերմամբ կարելի չէ ճշդել թէ Հուբուշկիա Զաբի արեւելակողմն եւ հարաւ-արեւելակողմը կը տարածուէ՞ր եւ եթէ այո՛ մինչեւ ո՞ւր։ Սաչափին ապահով է թէ հիւսիսային սահմանը մինչեւ Բոհտան կամ մինչեւ Վանայ լճին հարաւային եզերքը չէր հասնէր։ Շատ բռնազբօսիկ կ'երեւայ ինձ Սախաւի նորերս յայտնած այն կարծիքը (ZA. XII, 53,) թէ Մոքսուէնէ (= դաստականաց քով յիշուած անդրտիգրիսեան երկիր մը՝ Վանայ լճին հարաւակողմը. հայերէն՝ Մոկք, քրդերէն՝ Մէօկէօս) բառին արմատը նոյն կամ ազգակից ըլլայ Հուբուշկիայի հետ։ Գալով Հուբուշկիա անուան՝ Սէյս (JRAS. XIV, 674) նոյնը հին հայերէն կը համարի, մինչ Դելիչի (Kossäer, 35) կարծեաց համաձայն՝ թագաւորին եւ երկրին անունը՝ կասերէն է, եւ ոչ թէ յատուկ անուն մը կը ցուցընէ, այլ Փարաւոն եւն անուններուն նման թագաւորական տիտղոս մը (խանդի = "թագաւոր,,) որ Նամրիի մէջ ալ կը գործածուէր։ Ինչպէս Դելիչ (անդ) իրաւամբ կը շեշտէ, այս պարագայէն անմիջապէս հետեւցընելու չէ Հուբուշկիոյ կասական երկիր մ'ըլլալը, այլ լոկ սա եզրակացութիւնը հանելու է թէ կասեանք Հուբուշկիոյ մէջ ալ քիչ մ'ատեն իշխանութիւնը ձեռք անցուցած են. թերեւս այս իրողութիւնը մատնանիշ կը ցուցընէ

Հուբուշկիոյ վերին Զաբի հարաւ-արեւելակողմը տարածուած ըլլալը։ Սեպագրութիւններէն ծանօթ շրջակայ երկիրներուն հետ՝ դիրքին կողմանէ Հուբուշկիոյ ունեցած աղերսը սանկ կրնանք սահմանել. Հարաւէն Հուբուշկիոյ սահմանակից էր բուն Ասորեստան (Նինուէ, Արբեղա) եւ Զամուա եւ Նիմմէ, արեւելքէն Կիռուրի, հիւսիսէն Մաննեան երկիրներն ու Կիրզան, հիւսիս-արեւմուտքէն Կիրհու։ Տարակոյս չկայ որ Ասարհադդոնի եւ Ասուրբանիպալայ ատեն Հուբուշկիոյ մէկ մասը Մանեանց ձեռքն էր։

Նիւթոյն քիչ կամ անբաւական ըլլալն է պատճառ, որ քննչաց Հուբուշկիոյ դիրքին վրայ ըսածներն հարեւանցի են եւ ի մասնականս իրարմէ կը տարբերին։ Նոռիս իւր բառգրքին մէջ (էջ 403) կը գրէ. “տեղն ըլլալու է Նինուէի հիւսիս-արեւելակողմը՝ Վանայ լճին մօտերը գտնուող լեռներուն մէջ։„ Նոյնը կ’ըսէ Շրադեր (KGF 164), որ Հուբուշկիան “Զաբի եւ Վանայ լճին միջեւ տեղ մը„ կը փնտռէ։ Դելիչ (Kossäer, 34) Հուբուշկիան դէպ ի արեւելք մինչեւ Նամրի տարածուած կը կարծէ։ Հմմտ. Բելք (Verh. d. Berl. Anthrop. Gesell. 1894, էջ 483), որ կ’ըսէ թէ Հուբուշկիան է այն լեռնագաւառը, որ Ուրմիոյ լճին արեւմտեան կողմն եւ Կիրզանի հարաւակողմը կը գտնուի։ Նոյնպէս Սախաւ (ZA XII, 53), “անդիբացատրութեան փոխելով՝ Հուբուշկիան է լերանց այն մասը, որ Մուկուս¹ գաւառակէն մինչեւ Ռավենդուզ կը ձգի։„ Վերջապէս Նորերս Բիլլէրբէք (154) իւր Նախորդներէն աւելի որոշ կերպով ճշդեց Հուբուշկիոյ Դատանա իշխանին երկրին տեղն՝ ըսելով որ կը տարածի “եթէ ոչ մեծ Զաբի ամբողջ ձորոյն — այն տեղը՝ ուր գետն արեւմուտք-հիւսիս-արեւմուտքէ

---

¹ Ուստի՝ մինչեւ Վանայ ծովուն հարաւային եզերքը. շատ դէպ ի հիւսիս մղուած։ Ասոր հակառակ Բիլլէրբէք, անդ 155։

գալով՝ դէպ արեւելք-հարաւ-արեւելք կը վազէ — գէթ այս ձորոյն արեւմտեան կիսուն վրայ։»

Ասորեստանցիք Հուբուշկիան տակաւին Նայիրեան երկիր կը համարէին, եւ այն՝ Նայիրեան երկիրներուն մէջէն՝ Նիմմէ ետքը՝ ամէնէն հարաւ-արեւելեանը։ Շրադէր (KGF 180) կը կարծէ թէ սկզբնաբար Նայիրի անունը միայն Հուբուշկիոյ կը տրուէր, ըստ հետեւորդի Հուբուշկիան գերազանցօրէն Նայիրեան երկիր է, թէ այս երկրին թագաւորը պարզապէս «Թագաւոր Նայիրիի» կը կոչուի, եւ թէ վերջէն յընթացս ժամանակաց Հուբուշկիայէն Նայիրի անունը հիւսիսային եւ հիւսիս-արեւմտեան երկիրներուն անցաւ։ Ես արդէն ցուցուցի (310) թէ հակառակն հաւանականագոյն կը համարիմ, այսինքն թէ Արսանիայի եւ Տիգրիսի վրայ գտնուող երկիրներուն նուաճումէն ետքը՝ Նայիրի անունն արեւելեան եւ հարաւ-արեւելեան նահանգներուն վրայ տարածուեցաւ։ Սաղմանասար Բ.ի ատենէն սկսեալ՝ Հուբուշկիոյ իշխանը «Թագաւոր Նայիրիի» տիտղոսը կը կրէ։

Թերեւս Հուբուշկիոյ հետ նոյն համարելու ենք Հու-քու-շնա երկիրը, որուն մէջ Ասարհադդոն Տեւշպա գիմմերացին եւ «մանդեան պատերազմողը» նուաճեց։ Այն ատեն կամ դրչութեան իրական սխալ մը կայ (չէ կամ չա դրելու տեղ նա գրուած), եւ կամ ասորեստանցի դպիրն առջեւն արքունական տառերով գրուած օրինակ մ'ունեցած է եւ այս օրինակին իրարու շատ նմանող նա եւ չէ սեպագիր նշանները շփոթած է¹։

## 6. Կիռուրի։

Ասուրնասիրպալ թագաւորութեանն առաջին տարին Նիմմէ գալով Կիռուրի իջաւ, ուր թէ այս երկրէն եւ թէ Սիմէսի, Սիմերա, Ուլմանիա,

---

¹ Համմ. Հոմմէլ, Gesch. 721, ծան. 3։

Ադաւշ, Հարգա եւ Հարմասա նահանգներէն “կառքի ձի, ջորի, արջառ, ոչխար, գինի եւ պղնձէ ամաններ„ հարկ առաւ. այստեղ գտնուած միջոցին մերձակայ Կիրզան եւ Հուբուշկիա երկիրներն ալ հնազանդեցան անոր: Թագաւորը Կիռուրիէ Հուլունի կիրճը մտաւ եւ Կիրհու դնաց: Ասուրնասիրպալայ արձանագրութեանց մէկալ տեղերն ալ, ուր Կիռուրի կը յիշուի, միշտ կը շեշտուի Ասորեստանցւոց թագաւորին “Կիռուրիէ մինչեւ Կիրզան„ նուաճած ըլլալը: Սաղմանասար Բ. թագաւորութեանն երրորդ տարին Էնզիէ, Ուրարտուէ եւ Կիրզանէ գալով՝ “Արբեղայէն վեր„ Կիռուրիի կրճերէն դուրս ելաւ: Անուանագիր ցանկին մէկ հատակտորին համաձայն (Rm 2, 97) այս թագաւորը 835ին արշաւանք մ'ալ ըրաւ դէպ ի Կիռուրի, որուն ազդեցութիւնն անտարակոյս աւելի տեւական եղաւ, վասն զի ասկէ ետքն ա՛լ չենք կարդար թէ Ասորեստան այս երկրին հետ պատերազմի բռնուած ըլլայ, նա մանաւանդ թէ Կիռուրի այնպէս հպատակ եղաւ Ասորեստանցւոց, որ իւր կուսակալները կրցան իբրաւունք ընդունիլ՝ տարին պաշտօնապէս իրենց անուամբն անուանելու, ինչպէս արձանագրութիւններէն 814, 797, 765 եւ 729 տարիներուն համար յայտնի կը տեսնուի: Ուրարտացւոց Արգիստիս Ա. թագաւորին՝ Ուրմիոյ լճին հարաւային եզերաց վրայ արշաւած ատեն՝ Կիռուրին գրաւելն անտարակոյս տեւական բան մը չէր:

Կիռուրի ըսելով աշխարհագրօրէն կ'իմացուի Ուրմիոյ լճին արեւմտակողմն եւ հարաւ-արեւմտակողմը գտնուող դաշտը, Ուշնուի եւ Ուրմիի մէջ եղած երկիրն ու այսօրուան Սոլդուզը: Կիռուրի՝ Կիրզանի մէկ մասին հետ՝ կը պատէր Ուրմիոյ լճին ամբողջ արեւմտեան եզերքը. ասկէ՝ “Կիռուրիէ մինչեւ Կիրզան„ բացատրութիւնը: “Կիռուրիի կիրճն„ անտարակոյս Կիլիշինի կիրճն է, որ Ուշնուի եւ Ռովանդըզի մէջտեղն է: Իսկ Հուլունի կիրճն պիտի

ըլլայ՝ Բոհտանի վրայէն արեւմուտք տանող լեռնակիրճներէն մին։ Բիլլէրբէք (անդ, 20) Կիռուրիի կեդրոնը կը դնէ, ինչպէս վերջէն տեսայ, Ռովանդըզի գետին հովիտը. ինքն ալ (անդ, 49) Կիռուրիի կիրճը կը համարի Կիլիշանի կիրճը, իսկ Հուլունի կիրճը կը դնէ խաղդեան լերանց քովն Տիլլի կողմերը, որ Ռովանդըզի Ռիզանի վրայէն եւ Մեծ Զաբի երկայնութեամբը՝ Տիգրիս հասնելու միակ գործածական ճամբուն վերջին արեւմտեան կէտն է։ Կիռուրիի մասին հմմտ. նաեւ Բելք Verhandl. 5. Berl. Anthrop. Gesellsch. 1894. էջ 482։ Թէ Salm. Ob 183 արձանագրութեան $^{mat}$ եւ [at]-tarad $^{ál}$Pi-er-ri-a- $^{ál}$Si-ti-u-a-ri-a բառերուն մէջ՝ բաց մնացած տեղը Կիռուրի՞ դնելու է, ինչպէս կ՚ընէ Բիլլէրբէք (անդ, 156,) եւ թէ Պեռիա եւ Շիտիուարիա այս նահանգին գաւառակներուն անուննե՞րն են, կը մնայ անորոշ։ Այս երկուն տեղերու մասին հմմտէ վարը։

## 7. Հարիա, Ադաուշ, Սարաուշ, Ամմաուշ, Իսուա, Դարիա, Կուրալլա եւ Մալէխա։

Այս գլխուն մէջ պիտի խօսինք այն երկիրներուն վրայ, որոնց տեղն յընդհանուրն այն լեռնաշխարհին մէջն է, որ Տիգրիսի արեւելեան, Վանայ լճին հարաւային, Ուրմիոյ լճին արեւմտեան եւ մերձաւորապէս վերին Զաբի հարաւային կողմն է։ Հարիա, Ադաւշ եւն մինչեւ Դարիա այն կարգաւ յառաջ բերուած են, ինչ կարգաւ որ են Տիգլաթպիղեսերի արձանագրութեան մէջ (III, 36 եւն։)

Ա. Հարիա։ Տիգլաթպիղեսեր Ա. իւր երրորդ արշաւանքին ատեն այս երկրին վրայ քալեց, ուր մասամբ Կուրհեցիք ալ կը բնակէին. այս երկիրը հասնելու համար "ցից լեռներէ„ անցաւ եւ ճամբան ուրիշ բազմապատիկ դժուարութեանց ալ հանդիպեցաւ՝ լեռնուտ եւ վայրի բնութեան պատճառաւ։ Ասորեստանցւոց բանակը Կուրհեցիները

նուաճելէն ետքը՝ Հարխայի լերանց սայրերուն վրայ կառուցուած ամրոցներուն վրայ քալեց եւ անոնցմէ 25 հատը նուաճեց, կողոպտեց եւ կործանեց։ Տիլէ (Gesch. 159 ծան. 2¹) III R. 5 No. 2, 16ի ըստ ծէն թէ Տիգղաթպիղեսեր Ա. Լուլլումէի մէջ 25 քաղաք նուաճած է, կը հետեւցընէ թէ Հարխա Լուլլումէի կը վերաբերէր։ Սակայն այս ձեռնարկութիւնն ինձ չափազանց յանդուգն կ'երեւայ. մեծ նշանակութիւն մը չունի երկու տեղերն ալ 25 թուականին գտնուիլը, վասն զի կլոր թիւ մըն է 25ը։ Հմմտ. Tig. IV, 23 եւ 32, ուր 25 դից վրայ կը խօսուի։ Ասուրնատիրպալայ քովն ալ շատ սովէպ նուաճուած երկիրներուն գումարը 20, 60 եւ 150 կը նշանակուի։ Տիգղաթպիղեսեր Հարխայի մէջ գտնուած հետեւեալ լեռները կը յիշէ՝ Աշտափաքջիա, որուն վրայ կուրհեցիք չարաչար յաղթուեցան։ Առնուած 25 ամրոցները կամ լեռնաքաղաքները յաջորդ ութ լերանց վրայ էին՝ Իդնի. տես ստոր վրայ վարը։ — Աիա. Դելիշ (Par. 247) կ'ուզէ այս լեռն Աի երկրին հետ յարաբերութեան մէջ դնել. ստոր վրայ՝ վարը։ Իդնիի եւ Աիայի մէջտեղէն խոխում մը Հարխայի ներսերը կը տանէր։ — Շոպիրա։ — Շեղա։ — Շէլֆա։ Ընդունելի չէ ինծի՝ Շեղ֊դուի Իզօղլու-դաղ անուան նման հնչելը, ինչպէս կը կարծէ Բիլլէրբէք (անդ, 19)։ — Արդրանիքիա։ — Որսրանա։ Անդրէաս¹ կը կարծէ թէ կարելի է Ἀλίνζα քաղաքին Ὄροσα կամ Ὄρος յաւելուածին մէջ (Պտղմ. Զ, 2, 11) Ուրուատուն տեսնել։ Ἀλίνζοյի դիրքն ճիշդ ծանօթ չէ. սակայն սաչափն տայդ է, որ Ուրմիոյ լճին հարաւակողմն՝ Ադրբեջանի մէջ (թերեւս Սեկիզի քով) էր, ուստի այնպիսի տեղ մը, ուր չի կրնար ըլլալ Հարխա։ Ուստի ստիպուած ենք Անդրէասի առաջարկած նոյնութիւնը մէկ կողմ թողուլ։

---

¹ Ա․ Pauly-Wissowa, I. Sp. 1493.

Հարիան դնելու ենք լեռնաշատ Բոհդանի մէջ տեղ մը, Կիրհուի արեւելակողմը։ Բիլլէրբէք (անդ, 19) Իդնի, Շելգու լեռները, յայտնապէս Իզօղլու-դաղ եւ Շելգու անուանց մոլորեցուցիչ նմանահնչութենէն հրապուրուած, "Խարբերդի արեւմտեան կողմն՝ Եփրատայ մեծ աղեղին ներքնակողմի (Մուշէր-դաղ, Իզօղլու-դաղ)" կը փնտռէ։

Բ. Աղուաշ։ Տիգղաթպիղեսեր Ա. Հարիայէ Աղուաշ երկիրն հասաւ, որուն բնակիչները որչափ ալ "իբրեւ թռչուն բարձրաբերձ լերանց սայրերը փախան", սակայն վերջապէս ստիպուեցան հարկ վճարել։ Ասուրնասիրպալ Կիռուրիի մէջ Աղուաշի հարկն առաւ՝ Սիմէսիի, Սեմերայի, Ուլմանիայի, Հարդայի եւ Հարմասայի հարկին հետ մի եւ նոյն ատեն։ Աղուաշի դիրքն որոշելը կախում ունի՝ այս երկիրը Հարայի եւ կամ Սիմէսի, Սիմերա եւն երկիրներուն քով դնելէն։ Ես աւելի այն կարծեաց մէտ եմ թէ Աղուաշ այն լեռնաշխարհին մէջ տեղ մը պիտի ըլլայ, որ կը տարածի Ուրմիոյ լճին արեւմտեան եզերաց երկայնութեամբը ձգուող հարթաստանին արեւմտակողմը, ուստի հաւանականօրէն Աղուաշը վերին Զաբի հիւսիս-արեւմտեան կողմը՝ բաւական հեռու զետեղելու է։ Բիլլէրբէք (անդ, 15) Ասուրնասիրպալի արձանագրութիւնը նկատողութեան առնելով այլազգ կը դատէ. "Աղուաշ... հաւանօրէն Խոյի սանջակին հարաւակողման լեռներուն մէջ։" Միտ դնելու է որ Տիգղաթպիղեսեր Առաջնոյ արձանագրութիւնը (col. III, 39ff) յայտնապէս չուն աշխարհագրական կարգաւ (հիւսիս-արեւմուտքէն դէպ ի հարաւ-արեւելք) յառաջ կը բերէ՝ Կումմուհ, Կուրհի, Հարիա, Աղուաշ եւն։ Աղուաշէ ետքը կը յիշուի դեռ չորոնահանգաց նուաճումն, եւ այնուհետեւ ստորին Զաբէ անցնելուն յիշատակութիւնը կ՚ըլլուի։ Ուստի Բիլլէրբէքի Աղուաշի դիրքին համար ցոյց տուած տեղն ինծի քիչ մը շատ դէպ ի հարաւ կ՚երեւայ։ Քանի որ

Թիլլէրբէք Հարիայի Շելգու եւ Իդնի լեռները խարբերդի արեւմտակողմը կը դնէ, սեպագիր տեղեկութեան մէջ՝ Հարիայի եւ Աղաւշի միջեւ այնպիսի հեռաւորութիւն մը հարկ կ'ըլլայ դնել, որ մեծապէս դժուարութեանց կը բախի՝ նոյն տեղեկութեան աշխարհագրական տեսակէտով ըլլալը պաշտպանող կարծիքը։

Գ. Սարաւշ եւ Ամմաւշ։ Այս երկու երկիրներն, որ "հնուց ի վեր հպատակիլ ինչ է՝ չէին գիտեր, իրր աւազակայս մը նուաճեցի ես". այսպէս կը սնքայ Տիգղաթպիղեսեր սովորական սնամէջ խօսքերով։ Այս երկու երկիրներուն բանակին Ասորեստանցիներէն յաղթուեցաւ Արումա լեռն, որ անմիջնորդաբար Ուիշդիշի քովը կը բարձրանար եւ թերեւս սոր բաղուկներն Ուիշդիշի մէջ ալ մտած ըլլային։ Եթէ կարելի է Արումա լեռով երկայն լեռնաշղթայ մը հասկընալ, կրնանք Կիրհուի Արուման նկատողութեան առնուլ[1]։ Ըստ այսմ Սարաւշ եւ Ամմաւշ անմիջնորդաբար Ուիշդիշի քովն էին[2]։ Տես էջ 100։

Դ. Իշուա եւ Դարիա։ Այս երկու երկիրն ալ, "չհպատակող իշխանութիւնք", նախընթացներուն պէս Տիգղաթպիղեսեր Առաջինէն նուաճուեցան եւ

---

1 Այսպէս նաեւ Հոմմէլ (Gesch. 556)։

2 Մասպերօ (Histoire ancienne des peuples de l'Orient, 1897, II, 646) Սարաւշը մեծ Զաբի Նեհիլ-չայ բազկին ու Ամմաւշը Տիգրիսի Քաբուր բազկին հովիտը դնելով՝ այս նահանգներուն դիրքին մանրամասնութեանը մէջ չատ յառաջ անցած է. սեպագրութեանց մատակարարած տեղեկութիւններն՝ այս երկիրներուն դիրքը յընդհանուրն միայն որոշելու իրաւունք կու տան։ Ցամենայն դէպս կարելի է այս նոյնացուցումները համաձայնցընել աշխարհագրական դասաւորութեան հետ, որ հիմնուած է Tig. III, 1 եւն վրայ. բայց այս պարագայի մէջ ալ աւելորդ կ'ըլլայ Թիլլէրբէքի (անդ, 16) հետ՝ Tig. III, 77 (կամ 73, այսպէս է տողաթիւը Ռաւլ. քով) — 95 (կամ՝ 91) մասը՝ անյարմար տեղ մնած յաւելուած համարիլը։

Հարկ տալու ստիպուեցան։ Ստիպուած ենք այս երկիրները Սարուշի եւ Ամմուշի հարաւային արեւմտեան կողմը՝ վերին Զաբի միջին կամ վերին ընթացքին ուղղութեամբը փնտռել, Tig. Col. III.ի աշխարհագրական դասաւորութեան կամ կարգին վրայ հիմնուած։ Ասով՝ անընդունելի կը թուի Խուսա (այսպէս, ոչ Իշուա) = Իշուա (տես էջ 40) եւ Դայիխա = Դիաւխա (Դիաւա, էջ 45) հաւասարութիւնը, որուն պաշտպան հանդիսացաւ նորերս Բելք (ZDMG 51, 599)։

Ե. Կարալլու։ Սարգոնի ատեն այս երկրին իշխանն էր Աշուրլէ՛ու (= Աշուր է հզօր)։ Կարալլու միայն Սարգոնի արձանագրութեանց մէջ կը յիշուի եւ այն՝ միշտ Ալլաբրայի հետ։ Ուրարտուի Ուրսա թագաւորն այս երկու երկիրները համոզեց, որ իրեն հետ միանան՝ Ասորեստանցւոց լուծէն ազատելու։ Աշուրլէ՛ու ի պատիժ իւր ապստամբութեան մորթազերծ[1] եղաւ, իսկ Կարալլուի բնակիչներն Ասորիքի Համատ քաղաքը գերի տարուեցան։ Սարգոն թագաւորութեանը 9ր տարին Բիտ-Դախուկկիի եւ Կարալլուի վրայ քալեց. վերջինն՝ ասորեստանցի պաշտօնեաները հալածած եւ Աշուրլէ՛ուի եղբայրը զԱմիտաշշի թագաւոր նստեցուցած էր։ Ամիտաշշիի բանակները յաղթուելով՝ Ասորեստանցւոց բանակին 2000 զինուոր (զէնքի տեսակ մը) տուին։ Ամիտաշշի փախաւ (ակէ սկսեալ բնագրին մէջ 12 տող կը պակսի)։ Յիշուելու արժանի են Nimr. I. 12. "Նուաճող Մաննի, Կարալլուի, Պադդիրի" եւ ստէպ կրկնուող սա խօսքը "Սարգոն, որ Կարալլուն, Շուրդան, Կիշեշիմն աւերեց։" Սարգոն 708ին անգամ մ՚ալ Կարալլուի վրայ քալեց։ Անոր կը կոչուէր այն լեռն, որուն վրայ Աշուրլէ՛ուի

[1] Ըստ Cyl. 33 եւ Khors. 56։ An. 55 եւ 56ի մէջ նոյն տեղը կոտրած է։ Արձանագրութեան մը համաձայն (Sc. VIII, 17) Աշուրլէ՛ու երկաթէ շղթայի զարնուեցաւ։

բանակները բնաջինջ եղան։ Քանի որ Կարալլու մէկ կողմանէ Ալլաբրայի հետ յարաբերութեան մէջ է, եւ միւս կողմանէ Մանի եւ Պադգիրի հետ կը յիշուի եւ Ուրարտուի հետ դաշնակից է, հարկ է որ այս երկիրներուն մօտերը տեղ մ'ըլլայ, թերեւս դէպ ի հարաւ՝ Սիպուրիի մօտ, որով եւ կը մեկնուի այն պարագան, որ Կարալլու մարական նահանգներուն հետ նոյն շարքին մէջ՝ մեր առջեւը կ'ելլէ։

Զ. Մալհիա։ Սաղմանասար Բ. Թագաւորութեանն 30ր տարին Հուբուշկիայէն գալով՝ Մալհիսի Մէֆարղին իշխանին քաղաքներուն մօտեցաւ եւ Մաննեանց երկիրն գնաց, երբ այս իշխանը հարկ տուաւ։ Ըստ այսմ Մալհիսը կրնայ գրուիլ (հիւսիսային?) սահմանին վրայ՝ Հուբուշկիոյ եւ Մանի միջեւ։ Մալհիսի այս դիրքին հետ լաւ կը համաձայնի Մ. Հոֆմանի (Bohtân 23, 102՝) Մալհիսը նոյն համարիլն Մահիսի հետ (կիպերտ՝ Մակհիս), որ Բոհտանի մէջ Սարհալ-սուի հարաւային եզերքին վրայ է։

Է. Վերջապէս ամէնէն յարմարն է այստեղ յիշել Աշուրի այն լեռներն, ուր Ասուրնասիրպալ (եւ Տիգղաթպիղեսեր, էջ 2) որսորդութիւն ըրած է, զոր եւ փնտռելու ենք Կաշիարիի (= Մասիոս լեռ) եւ բուն Ասորեստանի միջեւ գտնուած լեռնագաւառին մէջ։ Ամենեւին կռուան չկայ սոյնց դիրքն որոշելու։ Նորանց անուններն ոչ-սեմական կը հնչեն։ Այս լեռներն են՝ Եջէհ, Որմաշէ, Անդամերդ, Անկօտան, Պիլիգօտօ։ Կը յաջորդէ անուն մ'ալ, զոր անկարելի է կարդալ բնագրին վնասուած ըլլալուն։ Ամենէն վերջը կու գայ Կաշիարի։

## Դ.*

### Վերին Զաբի եւ Ուրմիա լճին հարաւային եւ արեւելեան կողմերը գտնուող երկիրներ (Դասակաւնաց "Մարական Ատրպատականն,, ու "Մեծ Մարքը,,):

**1. Հարտիշ(ա), Հաշմանա (Հաշմարնա), Բաբիտէա (?), Կուլլար, Մուսասիրաշ, Սուրասիաշ:**

**Ա. Հարտիշ(ա):** Երբ Ասուրնասիրբալ թագաւորութեանը չորրորդ տարին Զամուա կը գտնուէր, Հուդուն, Հարտիշ(ա), Հուբուշկա եւ

---

* Ուսումնասիրութեանս այս վերջին մասին մէջ խօսուած երկիրներուն սահմանները կարելի չէ ամէն տեղ դիւրաւ եւ ապահովութեամբ գծել՝ բուն Ասորիքի եւ Բաբելաստանի հանդէպ: Հին բաբելական բնագիրներէն եւ թղթակցական մատենագրութիւն ըսուածէն տեղւոյ այն անունները միայն առած եմ, որոնց՝ քննելու առած երկիրներուս վերաբերիլը յարաբերաբար կրնայ ապահով համարուիլ: Այս երրորդ յօդուածս մասամբ այն երկիրներուն վրայ կը խօսի, զորոնք ընդարձակ հետազօտութեան նիւթ ըրած է՝ ոչ շատ յառաջ՝ Բիլլէրբէք իր „Das Sandschak Suleimania und dessen persische Nachbarlandschaften zur babylon. und assyrischen Zeit“ (1898) անուն գրքին մէջ: Այս երկասիրութեան լոյս տեսնելովը՝ ստիպուեցայ ստացած արդիւնքներս նորէն քննութեան ենթարկել, եւ որչափ ալ յարգի կը գտնեմ այն բազմապատիկ թելադրութիւնները, զոր կը պարտինք Բիլլէրբէքի երկասիրութեան, սակայն չեմ կրնար մէկալ կողմանէ չխոստովանիլ թէ իր մեկնութիւններն ու մեթոդը շատ տեղ կը ստիպեն ընդդէմ դառնալու: Գլխաւորաբար ընդ վայր կը փնտռենք Բիլլէրբէքի քով սեպագիր արձանագրութեանց անուններուն մեծ ճշդութեամբ յառաջ բերուիլը: Այս կողմանէ զանցառութիւնք եւ անճշդութիւնք անհամար են: Նմանապէս այնպիսի՝ մինչեւ նպատակին

Կիրզան անոր հարկ բերին։ Հարտիշ(ա)ն գետեղելու կամ գտնելու ենք իրեն հետ յիշուած այս երկիրներուն մօտերը։ Սաղմ. Կոթ. 168 յիշուած Հարտիշի (?) վրայ՝ տե՛ս վարը։

Բ. Հառունա (Հառուունա)։ Սաղմ. Կոթ. 181 Հառանայի անուանէն յառաջ կայ՝ ..Բու-րի-սա (?)-այի, որ հաւանականագոյնս նմանապէս երկրի անուն է. Կիրզանի եւ ...Բուրիսայի միջեւ բնագիրը փոքրիկ բաց մ'ունի. Հառանայէ ետքը կու գան Շուշգանա եւ Անդիա։ Սաղմանասար Բ.ի թագաւորութեան 31ր տարին Դայեան-Աշուր թուրտանն այս ամէն երկիրներէն անցաւ։ Նախորդ տարին ալ նոյն անձը Մաննեանց երկրէն գալով Հառունա (?) = Հառանա (?) մտած էր, ուր Շու-լու-սու-նու- իշխանն իւր մայրաքաղաքին եւ ուրիշ քանի մը քաղաքներուն առնուելէն ետքը՝ անձնատուր եղաւ եւ կառքի

---

չծառայելու չափ՝ ընդարձակութեամբ կը գործածուի սա խաբուսիկ միջոցը, որով արձանագրութեանց անունները նոր անուններու հետ կը նոյնացուին եւ կը գործածուին տեղերն որոշելու:

Հատուածներուս միօրինակութիւնը պահպանելու դիտմամբ՝ առ այժմ դեռ կը պահեմ Ռամմանիրարի եւ Սամսիրամման ընթերցուածը. յայտնի է որ այս անուններն այժմ տառադարձելու էր Ադադնիրարի եւ Սամսիադադ՝ հիմնուելով Սարդուր Գ.ի կոթողին վրայ, որ գտնուեցաւ Վանայ Ս. Պօղոս եկեղեցւոյն մէջ: (Հմմտ. Belck und Lehmann, Verhandlungen d. Beil. Anthrop. Gesellsch. 1898, S. 570. WZKM XIV, 20.).— Երկասիրութեանս առաջին երկու մասերուն լոյս տեսնելէն ետքը՝ անդրագոյն ուսումնասիրութեամբ եւ հոս հոն ցրուած մատենագրութիւնն աչքէ անցընելով՝ պէսպէս նորանոր նիւթեր ստացայ. ի վեր քան զամենայն՝ Լէմանի եւ Բելքի 1898–1899ի հայկական արշաւանքն առիթ կու տան ինծ՝ մեկնութեանցս այլ եւ այլ կէտերը եղանակաւորելու: Այս ամէնուն պիտի դառնամ Յաւելուածով մը, որ այս երեք մասերուն ցանկն կամ բովանդակութիւնն ալ պիտի ամփոփէ իւր մէջը: Ծ. Հ.

ձի տուրք կամ հարկ խուրկեց։ Ասկէ ետքը տուր-տանը Շուրդիրա եւ Պարսուա գնաց։ Ասարհադ-դոնի տանէն կը վախցուէր որ չըլլայ թէ Իշկուզա-ցիք — որ մինչեւ Հուբուշկիայ կիրճը հասած էին արշաւելով — Հառանիա եւ Անիսուսկիա քա-ղաքներուն վրայ յարձակին։

Շուլուտունուի իշխանանիստ քաղաքը Մ–– ––շ––ր–– կը կոչուէր։ Վերոյիշեալ Ան––––կի–քաղաքն ալ տարակոյս չկայ որ Հառանայէ հեռու ըլլալու չէր։ Ամէնէն լաւն է Հառանան՝ արձանա-գրութեանց վրայ հիմնուելով՝ Ուրմիոյ լճին հա-րաւային արեւմտակողմը դնել, այլ ոչ լճեզերքին կից. նմանապէս այս երկիրն այնտեղ զետեղելու տանէն նայելու է, որ Կիռուրիի ալ տեղ մնայ։ Այս դիրքին մէջ միայն կարելի է ըմբռնել մէկ կողմանէ Հուպուշկիայ եւ Մանի սահմանակցութիւնը՝ արեւ-մուտքէն, եւ միւս կողմանէ Շուրդիրայի եւ Պար-սուայի սահմանակցութիւնը՝ արեւելքէն։ Հա-ռանայի դիրքն որոշելու մեծապէս կը նպաստէ Knudtzonի բնագիրը. ինչու որ իմ կարծեօքս ամենուն տեղի չունի այն զանազանութիւնը, որով Թիլլէրբէք (անդ, էջ 155) իրարմէ տարբեր կը համարի Հառանիան ու Հառանան, որոնց կը հանդիպինք Կնուդսոնի քով։ Պէտք ենք անյաձող համարիլ Շրադերի (KAT[2] 134) այս Հառանը Միջագետաց ծանօթ Հառանին հետ նոյնացընելը։

Գ. Բ––րխ––(?)։ Թիլլէրբէք (անդ., էջ 156) կը յիշեցընէ Բուրաւոի անուն տեղը՝ Զար-չայ գե-տին վերին ընթացքին վրայ՝ պարսկական գետնի վրայ,[1] բայց կարծեմ թէ չափէն աւելի դէպ ի հիւսիս զացած է։ Ես կ'առաջարկէի Բուրխուան (?) Ուրմիոյ լճին հարաւային կամ հարաւ-արեւմտեան կողմը՝ Կիրզանի հարաւային մասին սահմանակից եւ Հառանայի քով դնել։

---

1 Համմ. Hüsing, Orient. Litztg. 1899, սիւն 90։

Դ. Կուլլար։ Սահմանատար Բ. Թագաւորութեանը չորրորդ տարին Կուլլարէ անցնելով՝ Զամուա շա բիտանի իջաւ։ Համաժամանակագրական պատմութիւնն է որ այս երկիրը մեր առջեւը կը հանէ. արդ՝ այստեղ եղծած մաս ըլլալուն՝ կարելի չէ տեսնել երկրին յարաբերութիւնը։ Քանի որ կ'երեւայ թէ Կուլլար սահմանակից է Զամուա շա բիտանի (= Մազամուա) երկրին եւ Ասորեստանի, ուստի եւ Արպեղայի արեւմտեան կողմը՝ Վերին եւ Ստորին Զաբի միջեւ ձգուող լեռնաշխարհին մէջ փնտռելու ենք այս երկիրը։[1] Հնագրութեան այժմեան վիճակը չի նպաստեր Եէնսէնի այն առաջարկութեան թէ Ասիրնասիրբալայ Տարեգրութեանց մինչեւ հիմայ Միլար կարդացուած լեռը՝ Կուլլար առաւադարձելու է։[2] Հին ասորեստանեայ մի եւ կուլ նշաններն, ինչպէս որ նոյն արձանագրութեան մէջ կը գործածուին, ի մասնաւորի այս վախճանաւ հետազօտութեան նիւթ ըրի. սակայն որոշ տեսնուեցաւ տառերուն տարբերութիւնը՝ որչափ ալ նման ըլլային։ Ուրեմն ուրիշ բան չի մնար ըսելու, բայց եթէ ուր որ բնագրին մէջ Միլար անունը կայ, հոն շփոթուած են երկու նշանները սխալմամբ։

Ե. Մուշաւաւաւաշ եւ Սուշաւաւաշ։ Ասորեստանէ նայելով՝ այս երկու երկիրները ստորին Զաբի մէկալ դին էին՝ կից Զամուայի եւ թերեւս Զամուայի սահմաններուն մէջ իսկ։ Ասանիու եւ Ադուամա լեռները այս երկիրներուն վրայ կ'իշխէին։ Տիգղաթպիլեսեր Առաջին այս երկիրները նուաճած ատեն՝ իշխանանիստ համանուն Մուշաւաւաշ ամրոցէն առաւ-տարաւ "աստուածները, առանին անօթները կամ

---

1 Բիլլերբէկ, անդ, էջ 46 կը կարծէ Կուլլար ըլլալու է խոյէ Սանջակին հարաւային-արեւելեան կողմը։ (Նկատողութեան առնելու է թէ Զամուա շա բիտանի ըսուած երկրին դիրքին վրայ ինչպէս կը մտածէ։)

2 Deutsche Litztg. 1899, սիւն 1114։

կահկարասիքը, 60 բու-կկէ անագապղինձ, 30 տա-ղանդ անագապղինձ, շուբուրտու (?), ստացուածքը, պալատան փոփո-րը„:[1] Մուրատտաշ եւ Սարադաւշ երկիրները՝ Խալխալան-դաղի եւ Տոկմա-դաղի հիւսիսային մասին մէջ կը փորձէ զետեղել Բիլլէր-բէք (անդ, էջ 14—15)՝ հետեւելով Մասպերոյի:[2] Տարակոյս չկայ որ Մասպերօ սանկ ընելու յոր-դորուած է՝ Սուրտաշ հովտին անունէն, որ նման կը հնչէ Սարադաւշ անուան:

## 2. Մաշ(ա)ամատա, Բարհաշէա (Բարհալզա), Զ(Ա)ա-մուա, Լուլլու (Լուլլումէ, Լուլլուբէ):

Ա. Մաշ(ա)ամատա: Մենաքար արձանագրու-թեան համաձայն՝ Սաղմանասար Բ. Բունաիսի (Բու-նադիշ) կիրճէն անցնելով Մազամուայի վրայ քա-լեց եւ մօտեցաւ հոն իշխող երկու գաւառատէ-րերու՝ Նիկդիմէի եւ Նիկդիարայի[3] քաղաքներուն: Այս երկու իշխանները իրենց հաւատարիմներուն հետ մէկտեղ՝ ուրթուդէ ըսուած նաւերու վրայ ելլելով "ի ծով„ մխեցան, երբ լսեցին Ասորես-տանցւոց թագաւորին մօտենալը. բայց յուսա-խաբ եղան՝ կարծելով թէ ասով պիտի ազատին Ասորեստանեայց հետ զարնուելէ, ինչու որ Սաղ-մանասար անոնց ետեւէն ինկաւ եւ ծովային ճա-կատամարտի մը մէջ անոնց չարաչար յաղթեց: Ասորեստանեայ բնագրին այս տեղը կ'ըսէ. "Ոչ-խարենիէ շինուած նաւերով անոնց ետեւէն գացի,

1 Delitzsch, Handwörterbuch, S. 716: „Reichthum“ (?) = "Հարստութի՞ւն„: Meissner, Suppl. S. 102.

2 Hist. ancien. d. peupl. de l'Orient, II, p. 646, n. 1.

3 Այս երկու անուանց առաջին կազմիչ մասին համար հմմտ. Նիկասմմա, որ անունն է մարական երկրի մը: Իսկ դիարա կամ դիեբա մասին համար Hüsing, Oriental. Litztg. (Ա, սիւն 360) մտադիր կ'ընէ զամուական հարըս-տութեան Կերդիարա կամ Կերդիերա անուան:

աՀռելի ճակատ մը տուի ծովու մէջ եւ անոնց. պարտութիւն պատրաստեցի. ծովն անոնց արեամբը ներկեցի իբր սար կարմրագոյն»: «Ոչխարենիէ չինուած նաւերն» ըլլալու են +էլէ+ = տկալաստ բուածները, որ ուրիշ բան չեն, բայց եթէ ծայրերը կարուած եւ օդով ուռեցուած տիկերէ կազմուած լաստ: Ինչպէս ամէնաՀին ժամանակները (տես պատկերները Խորսաբադայ բարձրաքանդակներուն վրայ), նոյնպէս եւ Հիմայ՝ սաանկ տկալաստերով կը կատարուի նաւագնացութիւնը Տիգրիսի վրայ: Ընդ Հակառակն «-րբ«-րէ բուածնաւերը՝[1] նման պիտի ըլլան ազօրէ շինուած կողովանման այն նաւերուն, որ դրսէն ու ներսէն նաւթով ծեփուած են. սաանկ նաւակներ Եփրատն անցնելու կը գործածեն առանձնական անձինք: Կոթողը կ'ըսէ թէ այս արշաւանքն, որ Սաղմանասար Բ.ի թագաւորութեան չորրորդ տարին կ'իյնայ, եղաւ դէպ ի Զամուա շա բիտանի: Ասորեստանցւոց այս ծովային յաղթութիւնը կնքեց Մաղամուայի նուաճումն, որ ալ առնուեցաւ Ասորեստանի վարչութեան տակ: 811, 783, 768 եւ 733 տարիներուն՝ Մազամուայի կուսակալներուն Լիմմու բուած (տարին պաշտօնապէս իրենց անուամբը կոչելու) պատիւը տրուեցաւ: Տիգղաթպիլեսեր Գ. իր թագաւորութեանը առաջին տարին Բաբելաստանի արամէական քաղաքներուն բնակիչներէն Հոն գաղթեցուց: Վերոյիշեալ Նիկդիարայի իշխանանիստն էր Իդա:

Զամուայի դիրքն որոշելը բնականաբար կախում ունի՝ անմիջապէս այս երկրին քովը գտնուող «ծովուն» ինչ ըլլալը Հասկընալէ. ըստ իմ կար-

[1] Ո-րբ«-ր«- է տեսակ մը եղեգն: Համմ. Delitzsch, Handwörterb. S. 128 եւ Meissner, Supplem. z. d assyrisch. Wörterb. S. 14. — Վերը ստորագրուած երկու նաւերուն պատկերները տես զ. օ. Kauleni Assyr. u. Babelon. գործոյն մէջ, Գլ. Բ.:

ծեսացս այս ծովը կրնայ ըլլալ միայն Ուրմիոյ[1] լիճը, եթէ ասոր գրեթէ ափիյայանի աղերան տառանց բանադրոսութեան մէկնենք։ Ուստի Զամուա բառ-լով կը հասկըցուէր Ուրմիոյ լճին հարաւակողմը, Կիռուրիի հարաւակողմը կամ հարաւային արեւե-լակողմը եւ Պարսուայի հիւսիսակողմը կամ հիւ-սիսային արեւմտակողմը գտնուող երկիր մը — մերձաւորապէս այսօրուան Սաուջբուլակ բռնուած տեղը։ Շատ հաւանական է որ նախնաբար լոկ տեղագրական Զամուա բացատրութիւնը՝ գործա-ծուելով նաեւ իբր անուն տարբեռանեայ գաւառի մը՝ ընդարձակուեցաւ, ըստ որում այս անունը տրուեցաւ հին Զամուայի այն մասերուն ալ՝ որ միեւնոյն կուսակալէն յանձնուած էին։ Մազամուա (ի մասնաւոր իբր աշխարհագրական եզր եւ ոչ ուշ ժամանակի՝ վարչական իմաստով) = Զամուա (Ասուրնասիրբալայ[2] արձանագրութեանցն)՝ որ ըստ օրէ սովորական դարձող մոլորեցուցիչ հաւասա-րութեան դէմ պէտք է շեշտել թէ յայտնապէս իրարմէ տարբեր են Մազամուա — որ Սաղմանա-սարայ համեմատական կամ զուգընթաց տեղերուն մէջ "Զամուա շա բիտանի" կը կոչուի — եւ մէկալ Զամուան։ Գալով շա բիտանի յաւելուածոյն, որ ուրիշ տեղեր ալ ստէպ կը գտնուի տեղւոյ անուն-ներուն որոշելու, կը կարծեմ թէ լաւագոյնն է Նէնուէնի[3] հետ՝ Երկիր, կոչուած "միջոյս տան"

---

1 Այսպէս՝ Tiele, Gesch. 199; Hommel, Gesch. 597; Belck ի Zeitschr. für Assyr. IX, 352 եւ ի Verhandlungen d. Berl. Anthrop. Gesellsch. 1894, S. 485.

2 Այսպէս Հոմմէլ. անդ, եւ Բելք. անդ։ Տիլէ, անդ կասկածելի կը գտնէ երկու երկիրներն իրարու հետ նոյնացնելը։

3 Deutsche Litztg., 1899, սիւն 1144։ Տարակոյս չկայ որ յընթացս ժամանակաց շա բիտանի իր նախնական իմաստը կորսնցուց եւ կամաց կամաց մակբայ եղաւ։ Շատ տեղեր կը յարմարի շա բիտանի "հանդիպականց" թար-

ծնկնելը, որով Զամուա չա բիտանի ըսելով կը ցուցուի Ասորեստանեայց փարչութեան տակ գըտնուող երկիրը՝ Նինուէի ազդեցութենէն դուրս գտնուող Զամուայի հանդէպ։ Թէ Մազամուա եւ Զամուա անուանց մէջ առնչութիւն մը կայ, յայտնի է. բայց ատոնց իրարու հետ ունեցած սկզբնական փոխադարձ յարաբերութիւնը մինչեւ այսօր՝ գոհացուցիչ կերպով պարզաբանուած չէ եւ կարելի ալ չէ պարզել՝ մեր մինչեւ հիմայ ունեցած անբաւական նիւթով։ Իբր նման օրինակ յառաջ կը բերեն[1] Ս. Գրոց Գոգ եւ Մագոգ անունները՝ որ ի միասին կը գործածուին, եւ կամ կը յիշեցընեն տեղեաց ելամական այն անունները, որ մեր առջեւը կ՚ելլեն ծա մասնկաւ կամ առանց ասոր, զ. օ. Կարբինամա եւ Կարբինա, Դուր Ամմանիմա եւ Դուր Ամմանի, Դուր Ուդասիմա եւ Դուր Ուդասի։ Հոմմէլ՝[2] բառերուն մերթ սկիզբն եւ մերթ վերջը կցուող այս մասնիկը «ալարոդեան» գոյական մը կը համարի՝ «երկիր» իմաստով։ Կարելի է թէ Մազամուա յառաջ եկած ըլլայ ծա Զամուա բառերուն ի մի ձուլուելովը։[3]

Դելատր[4] եւ Սէյս[5] կ՚ուզեն ապացուցանել թէ Զամուա աշխարհագրական գաղափարը կրկին նշանակութիւն ունի։ Առաջինը՝ Մազամուայի դէմ

---

գմանելը (ինչպէս կ՚ընեն KB I, էջ 62 եւ Բիլլերբէք, անդ)։ Հաւանական չ՚երեւար ինձ որ մեր առջեւն ունեցած տեղւոյն մէջ «Բիգանի» տեղւոյ անուն ըլլայ։

1 Delitzsch, Paradies 246.

2 Hommel, Geschichte 597.

3 Նոյնպէս ասանկ կը կարծէ Եէնսէն ի Deutsche Litztg. 1899, սիւն 1114։

4 Delattre, Le peuple et l'empire des Mèdes, p. 65—66. Նոյնպէս՝ Ed. Meyer, Geschichte des Altertums, I, 420.

5 Sayce, JRAS XIV 395 եւ Records of the Past, new series IV, 40 (1890).

*եղած տրշաւանքին անմիջապէս հիւսիսային Աստրէքի Բիտ-Ադինի արշաւանքին յաջորդելէն հրապուրուելով՝ Սաղմանասար Բ. էն անուանեալ ծովը Միջերկրական Ծով մեկնելու մտածութիւնն ունեցաւ եւ՝ ասոր վրայ յենլով՝ Մազամուան կամ Զամուա շա բիտանին անոր մօտերը դրաւ. իսկ Սէյս՝ նոյն ծովը Վանայ ծովը համարելով՝ Մազամուան նոյն լճին հարաւային եզերաց վրայ դրաւ: Սէյս՝ իր տեսութեանը գլխաւոր ապացոյցը առած է Նիկդիարա-Միկտիարա հաւասարութենէն. այս հաւասարութիւնն իրողութիւն կը համարի, մինչ այս հաւասարութեան՝ լոկ հաւանականութեան յարաբերական աստիճան մը կրնայ ընծայուիլ:[1] Եթէ նոյն իսկ այս երկու յատուկ անուանց նոյն ըլլալը այնպէս ցուցուի, որ առարկութեան տեղի չմնայ, սակայն՝ նկատելով Բելքի յայտնած կարծիքը (էջ 112)՝ ըսելու ենք թէ ամենէն բնաւորն է ընդունիլ թէ Սաղմանասարայ ծովն է Ուրմիոյ լիճը: Ցամենայն դէպս չեմ ընդունիր որ Մազամուա անուամբ երկու տարբեր երկիրներ եղած ըլլան:*

*Վերջին անգամ Բիլլերբէքն է, որ ընդարձակագոյնս խօսած է Մազամուայի վրայ (անդ, էջ 38 եւն): Սա եզրակացութեան կը հասնի թէ Մազամուա ըսուած երկիրն՝ այն երկիրն կամ այն երկրին մէկ մասն ըլլալու է, զոր Ասուրնասիրբաղ Զամուա (անդ, էջ 45) կ՚անուանէ, մինչ յետնագոյն Մազամուա կառավարչական գաւառին համար կ՚ըսէ թէ ամբողջապէս նոյն չէր հին Զամուայի հետ, այլ մասամբ միայն նոյն էր, եւ այն ալ՝ առժամանակեայ (անդ, էջ 39): Մազուայի մինչեւ Ուրմիոյ լճին եզերքը տարածուած ըլլալուն*

---

*1 Տես Միկտիարայի համար՝ էջ 111: Բիլլերբեք, անդ էջ 43, Նիկտ. = Միկտ. հաւասարութեան համար յայտնած տարակոյսը՝ չափազանց է:*

դէմ կ՚ելլէն՝ ըստ իւր համոզման՝ Կիռւուրիի գոյութիւնն Ուրմիոյ լճին հարաւ-արեւմտեան անկիւնն եւ այն ճախնային երկիրներն, որ այս լճին հարաւային ափանցը վրայ կը տարածուին։ Բիլլէրբէք Զամուայի կեդրոնը կը գտնէ Շէհրիզորի[1] մէջ եւ “Զամուա շա բիտանի„ն՝ (լոկ ենթադրութեամբ) “հանդիպակացն Զամուա„ թարգմանելով՝ կը զանազանէ արեւմտեան Զամուա եւ արեւելեան Զամուա։ Արեւելեան Զամուան է իբր թէ Զամուա շա բիտանի կամ Մազամուա ըսուածը. իսկ Սաղմանասար Բ. ի ծովամարտը տրուած է Բիտանի հարաւ-արեւելեան կողմը գտնուող փոքրիկ Զերիբոր լճին վրայ։ Բիլլէրբէքի՝ մեծապէս վիճելի ենթադրութեանց վրայ հաստատուած այս տեսութիւնն՝ ըստ իմ կարծեացս, չունի համոզիչ ապացոյցի զօրութիւն։ Կիռւուրիի սահմանակցութիւնը արգելք չ՚ըլլար Մազամուան քիչ մ՚աւելի դէպ ի հիւսիս դնելու. նմանապէս պէտք մը չկայ այս երկրին վերին սահմանը մինչեւ Ուրմիոյ լճին հարաւային ափը մղելու եւ ոչ ալ պէտք կայ ըսելու թէ Քրիստոսէ յառաջ Թ. դարուն լճին հարաւային ափը քշուած ըլլայ՝ ցամաքին դէպ ի ջուր քալելովը. տարակոյս չկայ որ աւելի ուշ ժամանակ կազմուած է ճահիճը՝ ջրոյ զանգուածին սաստիկ նուազելովը։ Ինչպէս այլք ալ շեշտած են,[2] շատ զարմանալի պիտի ըլլար համեմատաբար փոքրիկ Զերիբոր լճին Ասորեստանեայններէն “ծով„ ստորոգելւոյն արժանանալը։ Մազա-

---

1 Ասոր վրայ տես վարը՝ “Զամուա„ անուան տակ։

2 Lit. Centralbl. 1899, Sp. 1162 (քննադատութիւն Բիլլէրբէքի գրքին վրայ)։ Բիլլէրբէք, (անդ. էջ 47 ծան.) նոյն լճին “ծով„ կոչուելուն նման օրինակ մը (Անտիոքի լիճը) կը բերէ, բայց այս օրինակին արժէքը կարելի չէ ճշդել, վասն զի բնագիրն շատ պակաս տեղեր ունի։ Նմանապէս Նէնսէն (Deutsche Litzt. 1899, Sp. 1114) Զերիբոր լճին դէմ է։

մուայի դիրքը վերջնականապէս որոշելը մեծապէս կախում ունի Կուլլարի դիրքին խնդրէն. այս խնդրոյն պատասխանած ատեններս Հարկ է որ Հեւանանք Հոս ալ Բիլլէրբէքի տուած պատասխանէն (անդ, էջ 46)։ Այսու Հանդերձ Բիլլէրբէք բոլորովին Հակառակ ալ չէ այն ընդՀանուր կարծեաց, որ իրաւամբ այն խնդրական "ծովը" Սերմիոյ լիճը կը Համարի (Հմմտ. անդ, էջ 48—49[1])։

Կարելի չէ Բունախի (Բունագէշ) կրճին տեղն ապաՀով կերպով որոշել։ Շատ կարելի է որ Բունախի կիրճն ըլլալու է այն լեռնացքն, որ Ուայէտ եւ Հանի ըսուած տեղերն իրարու Հետ կը կապէ. եթէ ճիշդ է մեր այս կարծիքն, այն ատեն Հաւանականութեան յետին աստիճանին կ'իջնայ Հիւսինգի Բունախս = Բունասի (Բունիսա) Հաւասարութիւնը, վասն զի զամուական Բունասին՝ շատ աւելի դէպ ի Հարաւ գտնուող գաւառ մը կ'ուզէ, ինչպէս յայտնի է առնչութենէն։ Նմանապէս չեմ կրնար ընդունիլ Բելքի այն տեսութիւնը, որ Բարիտէի կիրճը կը նոյնացընէ Բունախի կրճին Հետ (տե՛ս վարը)։

Բ. ԲարՀազիա (ԲարՀալզա)։ ԲարՀազիա կը յիշուի միշտ Մազամուայի Հետ մէկտեղ, իսկ ԲարՀալզա՝ Մեզուի Հետ միատեղ։ Թէ՛ Մեզու եւ Թէ՛ ԲարՀալզա յարգի էին իրենց ձիաբուծութեանը Համար։ ԲարՀալզա՝ ձայնական տեսակէտէ՝ Հնագոյն ձեւ մը կը ներկայացընէ[2] (ԲարՀազիա՝ ծագած ըլլալով ԲարՀալզիա ձեւէն)։ Որոշ նշաններ չըլլալուն՝ ԲարՀազիայի դիրքն յընդՀանուրն միայն

---

1 Բիլլէրբէք կը շեշտէ նմանութիւնը Նիկառմմա անուան՝ Նիկ-դիարայի եւ Նիկ-դիմէի Հետ. սակայն այս նմանութիւնն ամենեւին չի լուսաւորեր՝ տեղւոյն դիրքն որոշելու խնդիրը։

2 Այս անուան Համար Հմմտ. Բար-զանիշտաւմ եւ Բար-սինդու։

կրնանք որոշել՝ դնելով առաւել կամ նուազ Հեռու Մազամուայէ։[1]

Գ. Զ(Ս)ամուա։ Ասուրնասիրբալայ ատենէն միայն ունինք տեղեկութիւն այն պատերազմական ընդհարումներուն վրայ, զորոնք ունեցան Ասորեստանցիք՝ Զամուայի բնակչացը հետ։ Ասուրնասիրբալ թագաւորութեանն 3ոդ տարին (882ին) արշաւանք մ՚ըրաւ ապստամբ Դագարա երկրին դէմ, որ Զամուայի կը վերաբերէր, եւ թշնամեաց բանակներուն յաղթեց Բաբիտէի կրճին մէջ. 1460 հոգի կոտորեց սուրը։ Դագարայի նուաճման յաջորդեց Բարայի նուաճումը։ Այս առաջին արշաւանքով ստացուած ղինուց յաջողութիւնն առաւել ազդեցիկ ընելու դիտմամբ՝ Ասորեստանցւոց թագաւորը Զամուայի դէմ նոր մեծ արշաւանքի մը ծրագիրը կազմեց. պատերազմը սկսաւ նոյն տարին՝ աշնան։[2] Բանակն Կալզիէ[3] ճամբայ ելլելով՝ դար-

---

1 Բիլլերբէք, անդ, էջ 75 Բարհալզիան՝ Մազամուայի վերաբերող երկիր մը կը համարի։

2 Քանի որ այս պատերազմն ալ այն տարին կ՚իյնայ, յորում եղած է առաջինը, կրնայ երկրորդն առաջնոյն շարունակութիւնը համարուիլ։ Ճիշդ խօսելով՝ պէտք է Զամուայի դէմ երեք արշաւանք զանազանել (հմմտ. Ասուրն. Բ. 51)։ Վերջին տեղն իրաւամբ ի սկզբան կը կոչէ Բիլլերբէք (անդ, էջ 22) Պայսէրի դէմ։

3 I. Rawl. 7, No. H. Հրատարակուած արձանագրութեան գտնուած տեղւոյն նայելով Կալզին կը փնտռեն Շէմամոկի մէջ՝ Արբելայի հարաւ - արեւմտակողմը. Հմմտ. Layard, Discouveries in the ruins of Nineveh and Babylon p. 223 ff.; Hommel, Gesch. S. 565 ծան.։ Բելք եւ Լեման Գվէր ըսուած գիւղը (իբր 50 քիլոմետր հեռու Մուսուլէ՝ դէպ ի հարաւ - արեւելք, Բոզանդուզի ճամբուն վրայ՝ Էրբիլի վրայէն) տեսան արձանագրութիւն մը՝ որ տեղեկութիւն կու տայ Կալզի քաղաքին պատնէշներուն կամ ամրոցին ի ձեռն Սանհերիբայ նորոգուելուն վրայ։ Դեռ ապահով կերպով ստուգուած չէ ո՛ւր են այն աւերակները, որոնցմէ առնուած է այս արձանագրութիւնը։ Կ՚երեւայ թէ աւերակ-

ձեւալ քալեց դէպ ի Բաբիտէի կիրճն եւ անկէ՝ դէպ ի Նիսիր լեռները։ Այս լերանց մէջ կամ մօտերը գտնուող Լարբուսա, Դուր-Լուլումա, Բունիսա եւ Բարա երկիրները նուաճուեցան եւ անոնց վերաբերեալ 150 քաղաք կողոպտուեցան եւ կործանեցան։ "Ամբողջ Զամուայի թագաւորները՝ ձի, արծաթ եւ ոսկի„ հարկ տուին եւ ասոնցմէ զատ ստիպուեցան յանձն առնուլ ձրիաբար ցորենեղէն եւ յարդ տալ։ Դագարայի շրջանը՝ դէպ ի Նիշպի լեռներն եղաւ ասպատակ մը, որուն վախճանն էր միւսանգամ ձեռք ձգել առաջին արշաւանքի ատեն առնուած երկիրն, որ այս միջոցին Ասորեստանցւոց ձեռքէն ելած էր։[1]

Զամուայի դէմ եղած վերջին եւ ամէնէն կարեւոր արշաւանքը կը բռնէ թագաւորութեան ամբողջ 4դ տարին։ Կ'երեւայ թէ պատերազմական գործառնութեանց սկզբնակէտը դարձեալ Կակզի եղած է։ Բանակը չուելով կ'անցնի նախ ստորին Զաբի վրայէն, Բաբիտէի կիրճը կը կտրէ եւ Ռադանու գետն անցնելէն ետքը՝ Դագարայի մէջ գտնուող Սիմակի լեռներուն ուղղութիւնը կը բռնէ։ Ասորեստանցւոց զինուորները Տուռնատն ալ անցնելէն ետքը՝ կը թափին կարգաւ Զամուայի Արաշտու(ա), Հուդուն, Կիսիրտու, Բարա, Լարբուսա (Կիրտիարա), Դուր (= Դուր-Լուլումա),

---

ները կը գտնուին Շէմամակի արեւելակողմը․ տես ատոր վրայ Verhandl. d. Berl. Anthrop. Gesell. 1899, S. 415 ff. Թէ Բիլլէրբէք ի՞նչ ապացոյց ունի Կակզին Ալշէ կարդալու (անդ. էջ 4, 22 եւն), ինծի առեղծուած է։

1 Բիլլէրբէք անդ. էջ 27 կրնայ իրաւունք ունենալ. երբ Ասուրն. Բ. 44 եւն կը նկատէ ամփոփում մը 882 տարւոյն յաջողութեանց։ Բայց կարծեմ թէ ամենեւին կռուան չունի, երբ Նիշպի-լերանց վրայ եղած ասպատակը կը համարի յաջորդ արշաւանքին պատրաստութիւն՝ իբր թէ նոյն ասպատակութիւնն լոկ նպատակ ունեցած ըլլար Շէրթիզոր տանող Հարաւային անցքը քննել։

Բունիսա[1] նահանգներուն վրայ եւ կը հասնին մինչեւ Հաշմարի կիրճը՝ նուաճելով ամէնքը։ Արձանագրութեան հետեւելով՝ այս արշաւանքին շարունակութեանը համար երկու բան կրնանք հնարաւոր համարիլ։ Կամ գլխաւոր բանակն՝ իրեն յանձնուած պաշտօնը յաջողութեամբ ի գլուխ հանելէն ետքը՝ դարձեալ Արաշտու(ա) կենդրոնացաւ, որպէս զի այս տեղէն նոր յարձակում մ՚ընէ, կամ երկու ձեռնարկութիւններն ալ միեւնոյն ժամանակը կ՚իյնան, այսինքն՝ երբ բանակին մէկ մասը վերոյիշեալ նահանգները նուաճելով զբաղած էր, մէկալ մասն Արաշտու(ա)էն ճամբայ ելած էր՝ Զամուայի գլխաւոր քաղաքը հասնելու։ Բանակին այս մասը կամ ամբողջ բանակը՝ Լարա եւ Բիդիրդի լերանց մէջէն անցնելով՝ կիրճի մը մէջ անհետացող ճամբան բռնեց եւ գրաւեց Զամրու մայրաքաղաքն։ Զամրու Ասորեստանցւոց բանակներուն բանակատեղին եղաւ եւ մերձակայ գաւառաց դէմ մղուած ասպատակութեանց կենդրոնը դարձաւ։ Զամրուէն ճամբայ ելլելով՝ անցան նախ Լալլուն եւ յառաջացան մինչեւ Ետինի բռնուած դժուարին լեռները։ Կամ այս լեռներէն եւ կամ դարձեալ Զամրուէն ճամբայ ելլելով՝ Ասորեստանցիք անցան Եդիրն եւ Ամեկա իշխանին ամբողջ երկիրները գրաւեցին, որ Սուանի եւ Եղանիսու լերանց մէջ կը գտնուէին։ Նմանապէս Զամրուն կենդրոն ունէին

---

[1] Ասուրն. Բ. 59 խօսքը, որ կը պատմէ Բարա եւն երկիրներուն մինչեւ Բունիսա նուաճումը, կապակցութիւնը կը խանգարէ. Հաւանականօրէն խառնաշփոթութիւն մը կայ։ Մեծապէս մտադրութեան արժանի է Բիլլէրբէքի առաջարկութիւնն անդ, էջ 30, որ կ՚ուզէ այս տեղն՝ յենլով Ասուրն. Բ. 44ի վրայ՝ փոխադրել նախորդ տարւան վրայ արուած տեղեկութեան վերջը, ուստի մերձաւորապէս Ասուրն. Բ. 49։ Եթէ ուղիղ է այս տեսութիւնը, յայտնի է որ այն ատեն Ասորեստանցիք միայն մէկ անգամ նուաճած են այս երկիրները։

այն յանդուգն արշաւանքներն, որոնց վախճանակէտն էին Նիշպի եւ Լարա անկոխ ու ամեհի լեռները. Լարայէն Ասորեստանցիք իջան Արակդի։ Մեր արձանագիր աղբիւրը կ'ըսէ թէ երրորդ արշաւանքին արդիւնքն եղաւ նուաճումն "իշխանաց համօրէն Զամուայի", որ "արծաթ, ոսկի, կապար, պղինձ, պղնձեայ անօթներ, գոյնզգոյն զգեստներ, ձի, արջառ, ոչխար եւ գինի" հարկ տուին։ Այս տարւան յիշատակաց արժանի գործառնութեանց շարքը կը փակուի՝ Հուդուն, Հարտիշ(ա), Հուբուշկիա եւ Կիրզան երկիրներուն տուած հարկն առնելով եւ շինելով Զամուայի Ատլիլա հին աւերեալ քաղաքը։

Սաղմանասար Բ.ի (Բալաուատի արձանագրութեան) յիշած "Զամուայի ծովը. կրնայ միայն Ուրմիոյ լիճն ըլլալ։ Ասկէ զատ Զամուան միայն Թղթակցական մատենագրութեան մէջ մեր դիմացը կ'ելլէ։

Ասուրնասիրբաղայ տարեգիր արձանագրութիւնը մեզ կը ծանօթացընէ շատ մը լեռներ, որ կամ ամբողջապէս եւ կամ մասամբ Զամուայի կը վերաբերէին։ Այս լեռներն են՝ 1. Նիշպի. Ասորեստանցւոց թագաւորն այս լեռնաշղթային հասաւ՝ մէյ մը Տուկուլտի-Աշուր-ասբատէ եւ մէյ մ'ալ՝ Զամրուայէ գալով. այս լեռնաշղթային մէջն էին Դագարայի քաղաքներն եւ Արզիզուի իշխանին հպատակող տեղերը։ 2. Սիմակի. Բաբիտէէն հաշուելով՝ Ռադանուի մէկալ կողմը կը բարձրանար այս լեռն ու կ'երկարէր դէպ ի Տուռնատ։ Սիմակիի քովը փնտռելու է 3. Աշիրու լեռը։ Զամրուի մօտ էր 4. Լարա, որ կը նկարագրուի իբր վայրկենի անկոխ երկիր մը, որուն թաւ մացառուտներուն մէջէն հարկ եղաւ կացինով ճամբայ բանալ պատերազմիկ կառաց։ Լարայի ճիշդ դիմացը կը տարածուէր 5. Բիդիրդի. այս երկու լեռներն իրարմէ կը բաժնուէին կիրճով մը։ 6. Եթինի, անկոխ լեռ

մը, ուր Հասաւ Ասուրնասիրբալ Զամրուայէն գալով՝ Եդիրը անցնելէն յառաջ։ Նաիրի ըսուած երկիրներուն ամէնէն արեւելեաններն՝ Ցումմէի մէջն էր մասամբ այս լեռն, ինչպէս նաեւ Ուրինի եւ Արունի։ Եդիրի մէկալ կողմը՝ Ամեկայի պետութեանը մէջ կը բարձրանային 7. Սուանի, 8. Ելանիու եւ 9. Սաբուա։

Բունասի անուն երկրին վրայ կ'իշխէր 10. Նիսիր լեռը, որ՝ ինչպէս յայտնի է, մեծ դեր մը կը խաղայ Ջրհեղեղի պատմութեան մէջ, ըստ որում կ'ըսուի թէ Ութ-Նա-պիշտիի, Բաբելացւոց Նոյին տապանն այս լեռան վրայ իջած է։ Նիսիր, որուն ստորոտն Հասաւ Ասուրնասիրբալ՝ Բաբիտէի կիրճէն գալով, ստորին Զաբի եւ Ռադանուի միջեւն էր. այս ըսուածին մեծապէս կը յարմարի, երբ աշխարհագրական ցանկին մէջ (II R 51, Nr. 1) կը ներկայանայ՝ իբր լեառն Գուտիի, ինչու որ Գու կամ Կու ըսուածներուն բնակավայրերը դնելու ենք՝ Ադաիմ եւ Դիեալա գետերուն վերին ընթացքին վրայ գտնուող կողմերը։ Նիսիրի դիրքն որոշելը կախում ունի Բաբիտէի կիրճին դիրքն որոշելէ. իսկ այս կիրճին դիրքին համար գլխաւորաբար նկատողութեան առնուելու է այն կիրճն, որ կը կտրէ Կարա-դաղը եւ կը գտնուի Ալթըն-Քէօփրիւի հարաւ-արեւելակողմն եւ Բիլլէի արեւմտակողմը։ Ըստ այսմ Նիսիրը պէտք ըլլայ Կարա-դաղի արեւելակողմն եւ Ռադանուի հիւսիսակողմը բարձրացող բազմաթիւ լեռնաշղթաներէն մէկուն (Խալխալան-դաղ, Թոքմադաղ եւն) մէջ։ Առանց կամայականութեան՝ չի կրնար այս լեռը վերջնականապէս որոշուիլ։ Ասանկ կամայականութիւն է,

---

1 Այս տեղն սանկ հասկընալու ենք. «Նիսիր, լեառն յերկրին Գու։» Հմմտ. նախընթաց Ցեմենա շատ Ելամտի։ Ինչպէս Նիսիր եւ Գուտի համանիշ եւ նոյնանիշ չեն, նոյնպէս չեն Ցեմենա եւ Ելամտի։

երբ Բիլլերբեք կ'ըսէ թէ բուն Նիսիրն է Պիր-Օմար-Գուդրուն։[1]

Արձանագրութեանց յիշեալ Գուտի անունը կ'ուզէ տեսնել Սէյս (JRAS XIV, 393) Ջէբէլ Ջուդի անուան մէջ, ըստ ասորական աւանդութեանն՝ Հրէից եւ Քրիստոնէից քով՝ եւ այս աւանդութեան հետեւելով Մահմետականք կը համարին այն լեռը, որուն վրայ նստած է տապանը.[2] այս պարագայի մէջ՝ ըսել կ'ըլլայ թէ ասորական աւանդութիւնն եւ հին Բաբելականք իրարու կը համաձայնին եւ ասով Նիսիրը նոյնացուած կ'ըլլայ այսօրուան Ջէբէլ Ջուդիի հետ։ Նախ եւ յառաջ այս ըմբռնման դէմ՝ պէտք ենք ըսել թէ մինչեւ այսօր արձանագրութիւններէն որ եւ է ապացոյց չունինք՝ Գուտի ըսուածներուն մինչեւ այսօրուան Բոհտանի կողմերը տարածուելուն վրայ։ Եթէ վերոյիշեալ ըմբռնումն ուղիղ է՝ ենթադրութեան ապաւինելով ըսելու է թէ Գուտի ըսուածներն վերջէն դէպ ի հիւսիս՝ Վանայ լճին հարաւային եզերքը մղուեցան. ասով այլ եւս օտարոտի չ'երեւար լեռան մը անոնց անուամբը կոչուիլը։ Կամ թէ արդեօք քրիստոնէական թուականին սկիզբ-

---

1 Համմ. Կուտի համար Delitzsch, Paradies S. 234; Hagen BA II, 245 ff. Ասկէ խոտորելով՝ Delattre, Le peuple et l'empire des Mèdes p. 101 կը փնտռէ վերին Եփրատայ կողմերը՝ Ուրմիոյ լճին մօտ, իսկ Վինքլէր (Untersuch. z. Altorient. Gesch. S. 131)՝ Միջագետաց տափաստանին մէջ։ Կարծեօք՝ այս երկու տեսութիւններն ալ այնչափ համոզիչ ապացոյցներ չունին, որչափ Դելիչինը։

2 Սկզբնաբար Արաբիոյ մէկ լեռը կը հասկընային Գուդի ըսելով, որուն համար Ղուրանն ալ կ'ըսէ թէ Նոյի տապանին իջած տեղն է։ Այս լեռան անունն՝ Արաբացւոց Քրդաստան եւ Միջագետք արշաւած ատենն՝ անցաւ Բոհտանի։ Ասորական աւանդութիւնը կախում ունի հին հրէականէն. արդէն Բերոսոս կ'ըսէ թէ տապանն իջաւ "ի լեռան Կորդուաց" այսինքն՝ ի Բոհտան։ Թերեւս Ջէբէլ Ջուդին՝ արձանագրութեանց Նիբուրն ըլլայ։

ները՝ Միջագետաց եւ հիւսիսային սահմանակից լեռնաշխարհներուն բնակչաց մտքին մէջ դեռ ամբողջապէս անջինջ մնացած են ջրհեղեղի հին բաբելական զրոյցն եւ տապանին՝ Գուտի բնուածներուն մէկ լեռան վրայ դադար առնուլն, եւ թէ Գուտի եւ Ջէբէլ Ջուդի անուններուն նմանութիւնն ազդած է՝ ասորական աւանդութեան մէջ վերջնոյն տապանակիր լեռը համարուելուն: Ինչ որ ալ ըլլայ, Նիսիր = Ջէբէլ Ջուդի հաւասարութեան կարեւորութիւն տալու չէ.[2] վասն զի Աշուրնասիրբաղայ տարեգիր արձանագրութեան Նիսիրը պիտի չուզեն բաժնել ջրհեղեղի պատմութեան համանուն լեռնէն: Հաւանական է, որ Նիսիրն էր Բաբելացւոց եւ Ասորեստանցւոց նոյն լեռնաշղթային տուած գործածական անունը. այս պարագային մէջ կարելի է թէ սեմական բառ ըլլայ՝ "փրկութիւն„ նշանակութեամբ՝ կամ դիտմամբ ընտրուած ջրհեղեղի պատմութիւնն ակնարկելու եւ կամ հիմնուած լոկ ժողովրդական ստուգաբանութեան վրայ. ըստ այսմ բառախաղը կ'ըլլայ պատճառ՝ ջրհեղեղին այս լեռան հետ կապուելուն: Լուլլուցւոց մէջ Նիսիրը Կինիպա կը կոչուէր:

Վերջերս Բելք[3] խնդիր յուզելով Նիսիրի դիրքին նկատմամբ՝ սա արդիւնքին հասաւ թէ Արբելայի հիւսիս-արեւելակողմը գտնուող լեռնագագաթներն են, որ կը ներկայացընեն Քսիսութրոսի նաւուն իջած տեղը: Այս պարագայի մէջ՝ Ասորես-

---

1 Շրադեր ալ Նիսիրի եւ Ջէբէլ Ջուդի ենթադրեալ նոյնութիւնն չի մերժեր (Riehm, Handwörterbuch der biblischen Altertümer 1894, "Արարատ„ անուան տակ):

2 Zeitschr. f. Ethnol. 1899, S. 113 ff. Համմ. նաեւ Լէման WZKM. XIV, 26. "Նիսիր լեռը՝ Արբելայի եւ Ռովանդուզ„, Սիդիկանի միջեւ գտնուող լեռնաշղթաներուն պիտի վերաբերի, եւ հաւանական է որ Արբելայէն տեսնուող լեռներուն ամէնէն բարձրն է:

տանցւոց թագաւորը նախ ստորին Զաբն անցած ըլլալու է՝ հարաւէն գալով, եւ վերջէն՝ հիւսիսարեւելեան ուղղութիւնն բռնած։ Առանց նկատողութեան առնելու այն դժուարութիւնները, որ Զամուայի արշաւանքն այս կերպով մեկնելէն յառաջ կու գան, շատ խախուտ են այն յառաջադիրք, որոնց վրայ կեցած է Բելքի կարծիքը։ Բելք այն պարագայէն, որ Բունասի Նիսիր լերանց մէջ Մուսասիրնայի՝ այսինքն ըստ իրեն՝ Մուսասիրացւոց մէկ քաղաքը կը կոչուի, կը հետեւցընէ թէ Բուսասի Մուսասիրի մէկ քաղաքը պիտի ըլլայ եւ քանի որ Մուսասիրի մէջ է՝ այս երկրին հետ մէկտեղ՝ Ուրարտու-Խաղդիքի պիտի վերաբերի։ Ինքը կը կարծէ թէ, ինչպէս որ Ցոպզաուէի (Սիդիկան) ասորեստանեայ արձանագրութիւնը իբր թէ կը ցուցունէ, Ուրարտու նախնաբար անունն էր Խաղդիքի մէկ մասին եւ այն ալ այն մասին, որուն մէջն է Նիսիր լեռը։ Այս կերպով դիւրաւ կը մեկնուի, կը կարծէ, Ս. Գրոց այն տեղեկութիւնը, որուն համեմատ տապանը “Արարատայ-Ուրարտուի լեռներուն վրայ„ դադար առած է, եւ կը համաձայնի Ասորեստանցւոց աւանդութեան հետ։ Քաղդէացի քրիստոնեայք տապանին իջած տեղը համարած են նոյն լեռնաշղթային արեւմտեան մասը՝ այսինքն Ջէբէլ-Ջուդին, որ իրենց համար ամէնէն բարձր տեսանելի լեռն էր։ Նմանապէս իրաւամբ կրնանք տարակուսիլ թէ արդեօք Ասորեստանցիք զուտ տեսակա՞ն, ծովագիտակա՞ն դիտողութիւններէ առաջնորդուելով ջրհեղեղի պատմութեան լերան դիրքն որոշեցին, ինչպէս որ կ'ընէ Բելք՝ իւր կարծիքն ապացուցանելու համար։

Վերը յիշուած մէկալ երկիրներուն դիրքն որոշելը՝ կը կատարենք Զամուայի երկիրներուն վրայ առանձինն խօսած ատեննիս։

---

1 Zeitsch. f. Ethnol. 1899. S. 244.

Մեծապէս կարեւոր է եւ լոյս կը սփռէ ծանօթ երեք գետերուն յիշատակութիւնն, որ կ'ոռոգեն Զամուան։ Այս գետերն են. 1. Ստորին Զաբ, 2. Ռադանու՝ ստորին Զաբի եւ Տուռնատի միջեւ. այս գետն է Քսենոփոնի (Արշաւ. Բ. 4, 25) Φύσκος-ն եւ այսօրուան Ադայիմ. այս հին անունը պահուած է դեռ Ռադան գաւառին անուանը մէջ։[1] 3. Տուռնատ, որուն վրայէն Ասորեստանցիք անցան՝ Ռադանու գետն անցնելէն ետքը։ Տուռնատն է Պլինիոսի (VI, 132) Tornadotus-ը, Թէոփանէսի (492) Θορνᾶ-ն, այսօրուան Դիեալան, որ Բաղդադէն քիչ մը վար՝ Տիգրիսի մէջ կը թափի։ Դիեալայի գլխաւոր բազուկն այսօր ալ Տամառա կը կոչուի՝ ծագած ըլլալով* Տորմառա (ասոր. ܬܘܪܡܪܐ) ձեւէն = Θορνᾶ = Տուռնատ։[2]

Ասորեստանցւոց բանակներն ամէնէն յառաջ եւ ամէնէն դիւրաւ կը հասնէին Դուգուրա, որ Զամուայի ամէնէն մեծ գաւառներէն մին էր։ Ասուրնասիրբաղայ ատեն՝ այս երկրին վրայ կ'իշխէր Նուր-Ռամման[3] անունով ցեղապետ մը։ Ասիկայ՝ Զա-

---

1 Nöldeke, ZDMG, 33, 325 ծան.։ Hoffmann, Syrische Akten persischer Märtyrer, ծան. Nr. 634. Զաբի եւ Ռադանուի վրայ տես եւ Delitzsch, Paradies, S. 186.

2 Nöldeke, անդ։ Delitzsch, Paradies S. 186–7. Տամառայի վրայ հմմտ. նաեւ իմ Babylonien n. d. arab. Geog. I, S. 37.

3 Տիլէ (Gesch. 181) Զաբ-Ռամման կարդալով կը համեմատէ ասոր հետ Զա-աբ-դա-ա-նու-ն, որ անունն է՝ Կարդունիաշի Նաբու-ապիլ-իդդին թագաւորին եղբօրը. կրնար յառաջ բերուիլ նաեւ Տիլ-շա-Զա-աբ-դա-նի, որ անունն է քաղաքի մը հիւսիսային Բաբելաստանի մէջ՝ Ստորին Զաբի մօտերը։ Հոմմէլ (Gesch. 565) Բիր-Ռամման կը տառադարձէ՝ հիմնուելով բառիս արեւմտեան գոյնին վրայ։ Որչափ ալ դեռ վճռուած չէ թէ որ ընթերցումն ընտրելի է, սակայն տարակոյս չի կրնար ըլլալ սեմական բառ ըլլալուն վրայ։ Անորոշ կը մնայ թէ Նուր-

մուայի առաջին արշաւանքին ատեն՝ մնացող Ասորեստանցիներուն երեւէն անմերձենալի լեռ մը փախաւ, երբ արդէն Բաբիտէի կիրճին մէջ իւր մարդիկներէն 1460 հոգի պատերազմի մէջ կորսընցուցած եւ 1200 հոգի ալ գերի տուած էր։ Ասուրնասիրբալ՝ Դագարայէ Բարա գնաց։ Յաջորդ տարին դարձեալ Բաբիտէի եւ Ռադանուի վրայէն Դագարա մտաւ. արջառ, ոչխար եւ գինի հարկ առաւ։ Անկէ ետքը Ասուրնասիրբալ Տուռնատն անցաւ։

Բաբիտէն կամ Ջամուայի, կամ Դագարայի մէջ համարելու ենք, կամ ուղղակի ատոնց սահմանակից։ Դագարայի իշխանը ամրացուցած էր այն կիրճն, որ իր անունը Բաբիտէէն առած է, այս կիրճն էր Ասորեստանցւոց բանակներուն դուռը՝ Ջամուա արշաւելու։ Բաբիտէն կրնայ ըլլալ միայն՝ այսօրուան Ալթըն Քէօփրիւ բռուած տեղւոյն արեւելեան կամ հարաւ-արեւելեան կողմերը. Հոմմէլ (Geschichte, 565) ալ ասանկ կը կարծէ, բոլորովին ուղիղ վճռելով։ Եթէ մանրամասն հետազօտութիւն մ'ընենք, Բիլլէրբէքի (էջ 22 եւն) հետ մենք ալ այն կիրճը պիտի ընտրենք, որ Բիլլէի արեւմտակողմը՝ Կարա-դաղ լեռը կը կտրէ. այսօր ալ՝ Ալթըն Քէօփրիւէ Սիւլէյմանիա տանող ամէնէն կարճ ու սովորական կարաւաններուն ճամբան այս կրճէն է։ Տարակոյս չկայ որ Բաբիտէ անանկ հարաւային երկիր մըն է, որ չի կրնար համեմատուիլ Տոսպեան արձանագրութեանց Բաբասին հետ, ինչպէս կ'ուզէ համեմատել Սէյս (JRAS XIV, 486.)։ Երբ Բելք (ZA IX, 352) Բաբիտէի կիրճը Բունասիսի կիրճին հետ նոյնացընելով՝ սառրին Ջաբի հիւսիսակողմը կը փնտռէ զանի, այս

---

Ռամման սեմակա՞ն ծագում ունէր, թէ այս սեմական անունը մէկ ազդեցութիւնն է Բաբելական-ասորեստանեայ քաղաքակրթութեան։

կարծեաց պատճառն է՝ գիտնականիս Նիսիր լերանց տեղւոյն վրայ ունեցած տարբեր տեսութիւնը (տե՛ս էջ 141)։

Դազարայի մէջ էին Ուշէ, Բիրուտու — որ Նիշպի լերանց մէջ էր եւ Զամուայի երկրորդ արշաւանքին ատեն կործանեցաւ —, եւ Լագալագա։ Ասուրնասիրբալ Թագաւորութեան երրորդ տարին Ուշէն, Բիրուտուն եւ Լագալագան առաւ՝ ուրիշ 100 փոքրագոյն տեղերով մէկտեղ եւ ասոնցմէ արջառ եւ ոչխար աւար տարաւ։

Վերը ցոյց տուինք թէ ուր կ'իյնայ Բաբիտէի կիրճը. արդ՝ նոյն կիրճէն կը հետեւի թէ Դազարա պիտի իյնայ Կարա-դաղի արեւելեան կամ հարաւ-արեւելեան կողմը։ Արեւելքէն սահմանակից էին Նիսիր լեռը, Բունասի եւ Լարբուսա երկիրները. դէպ ի հարաւ Դազարա կը տարածուէր Ռադանուէ անդին՝ դէպ ի Տուռնատ եւ կը շօշափէր Արաշտու(ա)ի իշխանապետութիւնը։ Սիմակի լեռն, որ Ռադանու եւ Տուռնատ գետերուն մէջտեղը կը գտնուի, հարաւ-արեւելեան սահմանաբաշխն է, եւ մեր դիմացը կ'ելլէ Սէգիրմէ-դաղի կամ քիչ մ'աւելի արեւելեան լեռնաշղթայի մը մէջ։ Ազիրու կը բարձրանար Սիմակիի մօտերը։ Որչափ ալ ճշդիւ որոշել կարելի չէ թէ ուր էր Նիշպի, որուն մէջ դազարեան տեղեր կային, սակայն Տուռնատի մօտերն գտնուող լեռներէն մին պիտի ըլլայ։ Բիլլերբէք (անդ, էջ 24) Դազարան կը համարի Կարա եւ Խալխան լեռներու եւ Սէգիրմէ-դաղի կամ Բիլլի եւ Դիեալայի միջեւ գտնուած երկիրը. Նիշպին կ'ուզէ տեսնել Կու-ի-Բալամբօ լեռան մէջ։

Բարա։ Զամուական առաջին արշաւանքի ատեն՝ Ասուրնասիրբալ Դազարայէ գալով՝ Բարայի մօտեցաւ ու նուաճեց. այս կռուին ատեն 320 հոգի բնիկներէն պատերազմի մէջ մեռան, 300 հոգի ալ գերի ինկաւ. արջառ ու ոչխար աւարի տրուեցան։ Յաջորդ արշաւանքի ատեն՝ բա-

րայիներէն 50 հոգի պատերազմի մէջ մեռան՝ տափաստանի մը վրայ . զամուական երրորդ արշաւանքի ատեն՝ Բարա երկրին քաղաքները աւերեցան։ Բարա՝ երկու անգամ կը յիշուի Բունիայի եւ Լարբուսայի հետ միատեղ . ուստի՝ վերջնոյն կամ Նիսիրի մօտերը փնտռելու ենք։ Բիլլերբէք Բարան կը նոյնացնէ Տիլ-Բուրի անուն քաղաքին հետ, որուն կը հանդիպինք Ասուրնասիրբաղայ քով եւ Համաժամանակեայ Պատմութեան մէջ։ Ասուրնասիրբաղ կը պարծի որ նուաճած է այն երկիրները, որ “Ստորին Զաբի մէկալ դին՝ մինչեւ Տիլ-Բարի կը տարածուին՝ Զաբան երկրին վերեւը։„ Ռամմաննիրարիի ատեն՝ Բաբելոնի հետ դրուած դաշնադրութեամբ մը՝ երկու երկիրներուն սահմանները որոշուեցան գծով մը “Զաբանի վերեւը գտնուող Տիլ-Բիտ-Բարիէ մինչեւ Տիլ-շա-Բատանի եւ Տիլ-շա-Զաբդանի։„ Ասկէ կը հետեւի թէ Տիլ-Բարին էր՝ Բաբելոնի վերաբերող ամենէն հիւսիսային կամ հիւսիս-արեւելեան քաղաքը։ Քանի որ Զաբան՝ ստորին Զաբի բաբելական կողմը երկիր մըն է յայտնապէս, ուստի Տիլ-Բարիի դիրքն որոշելու համար ուրիշ բան չի մնար, բայց եթէ ուղիղ մեկնել թէ ի՛նչ ըսել է շա էլլան։ Եթէ այս շա էլլան “վերեւը„ գտնուող թարգմանենք, այն ատեն ամենէն բնականն է ըսել թէ Տիլ-Բարին ալ նմանապէս ստորին Զաբի բաբելական կողմը փնտռելու է. իսկ եթէ շա էլլան “հիւսիսային„ թարգմանենք, այն ատեն Տիլ-Բարի Խոյի սանջակի կողմերը կ՚իյնայ։ Շատ կարելի է որ Տիլ-Բարի անուան մէջ ծածկուած ըլլայ Բօրացւոց անունը։ Տարակոյս չկայ որ Բարա եւ Տիլ-Բարի իրարու սահմանակից էին. իսկ թէ այս աշխարհագրական երկու անուններն իրարու հետ նոյնացընելո՞ւ է, չեմ համարձակիր որոշել։

Նիսիրի մէջ կը տարածուէին Լարբուսա եւ Բունասի երկիրները։ — 1. Բունաշ կամ Բունիշա։

Այս երկրին իշխանը կը կոչուէր Մաղ(ա)ունա: Զամուական երկրորդ արշաւանքին ատեն՝ Աասուր-նասիրբալ Բունասի ամրոցն եւ անոր վերաբերող 20 տեղ նուաճեց. անմիջապէս այս նուաճման յաջորդող կռուի մը մէջ, որ Նիսիր լերանց մէջ տեղի ունեցաւ, 326 հոգի ընիկներէն սպանուեցան եւ ուրիշ 7 քաղաք ալ ստիպուեցաւ անձնատուր ըլլալու: Աւարն էր արջառ եւ ոչխար: Յաջորդ տարին ալ զինուց բռնութեան ենթարկուեցաւ Բունասի: — 2. Լարբուսա: Այս իշխանական քաղաքին վրայ կը տիրէր Կիրտիարա հարստութիւնը. ուստի՝ Կիրտիարա ըսելով ալ այս քաղաքը կը հասկցուէր: Զամուական երկրորդ արշաւանքով Լարբուսայի նուաճման վրայ տրուած տեղեկութիւնը կը յաջորդէ ուղղակի՝ Բունասիի արշաւանքին վրայ տրուած տեղեկութեան: Աասորեստանցւոց թագաւորը Լարբուսա ամրոցն ու անոր վերաբերող ուրիշ 8 տեղ գրաւեց: Բազմաթիւ բնակիչք իրենց վերջին ապաւէն ընտրեցին դժուարամատչելի լեռնագագաթ մը — ապահովաբար՝ Նիսիր լեռնաշղթային լեռներէն մին: Այս փախստականներէն 172 հոգի ինկան՝ Աասորեստանցւոց բանակներուն դէմ մղուած կռուին մէջ: Առնուած քաղաքները կրակի տրուեցան: Լարբուսայի եւ Բունասիի դիրքին խնդիրը կը լուծուի Նիսիրի դիրքն որոշելու համար մեր վերն ըրած փորձովը: Դիրքն բոլորովին ճշդելը՝ անկարելի կը համարիմ:[1]

Այժմ յիշուած երկիրներուն դրացի էր, կ'երեւայ, Դուր-Լուլլումանէ (= Ամրոցն Լուլուացւոց). սոր դիրքն որոշելու համար կարեւոր են յաջորդ կրկին շարքերը. Լարբուսա, Դուր-Լու-

[1] Բիլլէրբէք, անդ էջ 27, Բունիսան, Լարբուսան եւ Դուր-Լուլլումանն կը դնէ՝ մէկ կողմանէ Խալխալանդաղի եւ Սէֆիրմէ-դաղի եւ միւս կողմանէ Ցոկմա-դաղի եւ անոր շարունակութեան միջեւ ձգուող ձորին մէջ:

լումա, Բունիսա, Բարա եւ Բարա, Կիրտիարա, Դուր, Բունիսա: Ցիշենք, որ Բիլլէրբէք, անդ էջ 27, Դուր-Լուլլումաին՝ Ադաիմ գետոյն երկու գլխաւոր բազուկներուն միացած տեղը, Սուլէյմանիէյի արեւմտակողմը կը գնէ:

Տուռնաաի մէկալ կողմը կամ գետոյն Հարաւային կողմն էր Ամմալէ, ամրոց մը՝ Արաշտա(ա) իշխանին երկրին մէջ: Զամուական երրորդ արշաւանքին առեն՝ երբ տեղւոյս վրայ յարձակում գործուեցաւ, նոյն յարձակման առեն 800 հոգի իրենց մահը գտան: Շատերը գերի բռնուեցան: Որովհետեւ Ասուրնասիրբալ՝ Սիմակիի ոտքէն ճամբայ ելլելով եւ գիշեր մը չուելով՝ Ամմալի հասաւ, ուստի՝ այս պարագան աչքի առջեւ ունենալով՝ ըսելու ենք թէ այս քաղաքն անշուշտ կ'իյնար Հուրինի շրջակայքը:

Ամմալլէի առման վրայ տրուած տեղեկութեանց կը յաջորդէ Տարեգրութեանց բնագրին մէջ նախ՝ Հուդունի եւ Կիսիրտուի վրայ եղած ապստամբութեանց յիշատակութիւնը: Որչափ ալ արձանագրութիւնը բացայայտ չ'ըսեր, սակայն կրնանք ընդունիլ թէ այս գործառնութիւնք լոկ շարունակութիւնն էին Արաշտու(ա)ի դէմ եղած արշաւանքին՝ զօրաց մի անգամ բռնած ուղւոյն վրայ: Ասորեստանցիք նախ նուաճեցին Հ---(կամ Բ-ք-)դ---ը՝ շրջակայքը գտնուող 20ի չափ քաղաքներով մէկտեղ եւ արջառ ու ոչխար աւար առնելով իրենց հետ քշեցին տարին: Տարեգրութեանց նոյն սիւնակին մէջ՝ Հուդունացիք Հարտիշայի, Հուբուշկիոյ եւ Կիրզանի բնակչացը հետ՝ հարկատու կը ներկայանան. յայտնի է որ արձանագրութեան այն տեղն որ եւ իցէ կարեւորութիւն չունի՝ Հուդունի դիրքն ստուգելու: Հուդունէ ետքը կարգն եկաւ Կի-ի-դ---ի՝ Մ-բէնէի ամրոցին, որ ուրիշ 10 քաղաքներով մէկտեղ թշնամւոյն ձեռքն ինկաւ: Արձանագրական տեղեկու-

թեանց առնչութեան նկատմամբ վերը յայտնած ենթադրութեանս վրայ հիմնուելով՝ կրնանք Հու-ղունն եւ Ակիզիրտուն՝ Հուրինի կողմերը դնել։

Տարակոյս չկայ, որ ամբողջ Զամուայի ամենէն կարեւոր քաղաքը համարելու ենք Զամրու, Ամեկայի իշխանանիստը։ Ամեկայի "Իշխան Զամուայի„ տիտղոսը կը տրուէր կամ ցուցընելու համար որ ինքն էր բազմաթիւ գաւառատէրներու մէջէն ամենէն հզօրագոյնը, կամ հասկցընելու համար որ իշխանութիւնն էր բուն Զամուան, Զամուա՝ անձուկ մտքով։ Ասուրնասիրբալ՝ երրորդ արշաւանքին առեն՝ Ամեկայի իշխանութեան տակ գտնուող երկիրներուն վրայ յարձակեցաւ պատերազմով։ Ամեկա Եաուրինի լեռները փախաւ, իսկ իր քաղաքները — Զամուայէ զատ 5 մեծ եւ 150 փոքր տեղ — աւարի տրուեցան ու կործանեցան. խառնուրդի մը մէջ երկիրը պաշտպանողներէն 50 հոգի ինկան եւ 20 հոգի ալ գերի բռնուեցան։ Տարեգիր արձանագրութիւնն Ամեկայ երկրին մէջ առնուած աւարը կը նշանակէ՝ երկու ցուցակի մէջ ամփոփելով. այս երկու ցուցակներն ի մի ձուլելով՝ կը ստանանք յաջորդ ցանկը. "պղնձէ շատ մը կահ, պղնձէ երկու վայրի-եզ, պղնձէ անօթներ, պղնձէ սկահակներ, պղնձէ սկաւառակներ, պղնձէ նամ-զիտու (բռուած անօթներ), ոսկիէ կամ ոսկւոյ մէջ ագուցեալ շատ մը սկահակներ, արճառ, ոչխար, եւ թագաւորական գանձը։„ Վերն յիշուած 5 մեծ տեղերուն — ամրոցներուն — անուններն են՝ Արզուխիզնու, Ամմարու, Բարուխինդու, Իրխիդու եւ Սիրխիդու։

Ամեկայի իշխանութեան դիրքն որոշելու համար մեծ կշիռ ունի արձանագրութեանց այն տեղեկութիւնն, որուն համեմատ Ասուրնասիրբալ թագաւորը՝ Արաշտու(ա)ի քաղաքներէն ճամբայ ելլելէն եւ Լարա եւ Բիդիրգի լեռներուն մէջ գտնուած կիրճէն անցնելէն ետքը՝ Զամրուի մօտե-

յաւ։ Այս տեղեկութեան վրայ՝ աւելցընելու է ուրիշ ծանօթութիւն մ'ալ, որուն համաձայն Ասորեստանցւոց բանակը՝ Զամուայէ ճամբայ ելլելով յարձակեցաւ Արզիզու գաւառին վրայ Նիշպի լերանց մէջ։ Ըստ այսմ՝ Ամեկայի երկիրը փնտռելու ենք կամ Դրեալայի հիւսիսակողմը՝ յատուկ մոզք Շէհրիզորի մէջ կամ նոյն գետին հարաւային եզերքին վրայ։ Ուստի՝ Լարա եւ Բիդիրգի լեռները ուղղակի Դրեալա գետին եզերքին վրայ կը բարձրանային՝ Արաշտու(ա)ի եւ Ամեկայի երկիրներուն միջեւ։ Ասուրնասիրբալ Զամրուայէ Ետինի լեռներն երթալու ատեն՝ Լուլու գետն անցաւ, որ անտարակոյս Դրեալայի մէկ ճիւղն[1] է։ Թագաւորը Լալլուէն գնաց Ետինի լերանց կողմերը, որ անկոխ երկիր մըն է, ուր իրմէ յառաջ Ասորեստանի թագաւորներէն ոչ ոք եկած էր, կ'ըսուի։ Կարելի է թէ Ետինի հաւաքական անուն մըն էր, որով կը նշանակուէին Շէհրիզորի կամ Սիւլէյմանիէի արեւելակողմը գտնուող հեռաւոր եւ Ասորեստանցւոց քիչ ծանօթ լեռնաշղթաները. ուստի՝ զար-

---

1 Բիլլէրբէք. անդ էջ 31, ասորեստանեայ հին Լալլու անունը կ'ուզէ գտնել Լուլա անուան մէջ։ Զեմկանրուդ գետը Լուլա ալ կը կոչուի։ Այս ենթադրութեան վրայ հիմնուելով՝ կը հետեւցընէ թէ Ետինի = այսօրուան Սերիբենդի կամ Կուհ-ի-Շահր լերան հիւսիսարեւմտեան շարունակութիւնը։ Բայց ոչ ուրեք պէտք է այնպէս մեծ զգուշութիւն, ինչպէս նոր անուանց նմանահնչութեան վրայ հիմնուելով՝ զանոնք արձանագրութեանց անուններուն հետ նոյնացընելու մէջ։ Ամէն մէկ մասնական դէպքին մէջ՝ պէտք է կարելի եղածին չափ քննել այսօրուան անուանց ծագումն ու նախնական պատմութիւնը։ Այս ըսուածն աչքի առջեւ ունենալով դատաստան ընելու է Բիլլէրբէքի (անդ. էջ 23 եւ 26) մասնանիշ ըրած նմանահնչութեան՝ Բարիսէ եւ այսօրուան Բիբան, Բունասի եւ Բասիան անուանց։ Բիբան՝ արաբերէն Բաբ = դուռն բառին յոգնակին ըլլալով՝ առաջին հայեցուածքով իսկ կը տեսնուի թէ չի կրնար համեմատուիլ Բարիսէի հետ։

մտնալու բան չէ, երբ կը տեսնենք որ Տղումէի մէջ ալ լեռնագօտի մը Եօրինի կը կոչուի՝ ըլլալով այն լեռնաշղթաներուն մէկ բազուկը։ Ես կը կարծեմ թէ այս պարագան մեծապէս կը նպաստէ՝ Արաշտու(ա)ի երկիրն Դիեալայի հիւսիսային եզերքին վրայ եղած մտածելու, իսկ Եօրինի լեռները՝ հիւսիս-արեւելեան կողմերը՝ սահմանն անորոշ թողլով։ Յայտնի է թէ այս ենթադրութեան երկբայական ըլլալուն՝ ըսել չեմ ուզեր թէ անկարելի ըլլայ՝ Եօրինի անունով կրկին լերանց գոյութիւնն։ Ամեկայի դէմ եղած արշաւանքին վրայ տրուած տեղեկութեան մէջ կը յիշուի ուրիշ գետ մ'ալ՝ Եդէր։ Ասուրն. Բ. 65 'եւն կը խօսուի նոր ասպատակութեան մը վրայ, որ սկսաւ Զամուէն ճամբայ ելլելով։ Ասորեստանցւոց թագաւորը Եդիրն անցնելէն ետքը՝ մտաւ Ամեկայի երկրին այն մասն, ուր կը բարձրանան Սուանի, Ելանիու եւ Սաբուա լեռները։ Այս լեռներուն դիրից խնդիրը կապուած է Եդիրին դիրքն որոշելու հետ. ամենէն լաւն է ըսել թէ Եդիր ալ Դիեալայի մէկ ճիւղն էր։[1]

Զամրուի մօտ՝ Նիշպի լերանց մէջ էր Արզէզու։ Ասուրնասիրբալ այստեղ կ'իշխէր Ատա անունով իշխան մը. այս իշխանին կը հպատակէր նաեւ Արզինդու։ Զամուական երրորդ արշաւանքին ատեն՝ Արզիզու եւ Արսինդու ամրոցներն ու Նիշպի լերանց մէջ անոնց շրջակայքը գտնուող ուրիշ 10 քաղաքներ ալ առնուեցան եւ հրոյ մատնուեցան. բնակիչները սրախողխող եղան։

---

[1] Լալլու եւ Եդիր նշանակուած են նաեւ Դելիչի քով (Par. S. 187), ուր կ'ըսուի թէ ասոնք Տիգրիսի բազուկները չեն. չեմ կարծեր որ մէկը զասոնք ուղղակի ճիւղեր համարի, այլ անուղղակի կամ երկրորդ կարգի ճիւղեր։ Բիլլերբեք, անդ էջ 33. կը յիշէ ուրիշ ենթադրութիւն մ'ալ՝ իր ամէն հետեւութիւններովը հանդերձ, որ Եդիրը կը նոյնացընէ վերին Տուռնատի հետ։

նամակի մը մէջ (K 5291, Rev. 2) կը յիշուի Դա-դա-ա մը՝ կապ ունենալով՝ Արզիզուի հետ։

Նիշպիի եւ Զամրուի քովերն էր նմանապէս Սիպարմենա։ Այս երկրին մէկ առանձնայատկութիւնն այն էր որ բնակիչները "կանացի կը խօսէին" (կը ծեթեւեթէին, չէլով կը խօսէին)։ Ասոնք հարկ տուին "պղինձ, պղնձէ ռաքքիլի, պղնձէ կամ-մար, շարխար։" Սիպարմենացւոց լեզուին պակասութեան նկատմամբ մտադիր կ'ընենք Լէմանի (Ztschr. f. Ethnol. 1899, S. 113) հետաքրքրական դիտողութեան, որուն համեմատ այսօր ալ Ռովանդուզի հարաւակողմէն սկսեալ մինչեւ Էրբիլի դաշտը եւ Խոյի սանջակը գտնուող գաւառներուն բնակիչները չկրնալով ն արտաբերել՝ անոր տեղ ծ կ'արտաբերեն։

Դեռ կը մնայ քանի մը խօսք ալ զամուական երկու կարեւոր քաղաքներու վրայ ըսել, որ՝ Ասորեստանի հետ հաղորդակցութեան դիւրութեան պատճառաւ՝ կայուն բանակատեղի եւ պատերազմական գործառնութեանց եւ Զամուայի մէջ ասորեստանեայ գերիշխանութիւնը պահելու կռուան եղան։ Այս քաղաքներն են՝ Արակդի եւ Ատլիլա։ — Արակդի՝ Լուլլուեցւոց քով տեղույն սովորական անունն էր. Ասորեստանցիք նոյն քնուան տեղ՝ Տու-կուլ-տի-Աշու-ր-ասբատ (= "զօգնութիւնն Աշուրայ խնդրեցի ես") երկայն անունն ընտրեցին։ Ասուրնասիրբալ՝ զամուական երկրորդ արշաւանքին ատեն՝ Արակդիէ ճամբայ ելլելով գիշեր մը չուեց եւ Նիշպի հասաւ. երրորդ արշաւանքը կը վերջանայ՝ Լարա լեռնէն այս քաղաքը "իջնալով։" Այս կռուաններուն վրայ հիմնուելով՝ Արակդին փնտռելու ենք Դիեալայի ափին մօտերը, թերեւս աջ ափին վրայ՝ Հուրինի ուղղութեամբը։ Բիլլէրբէք, անդ էջ 22 եւ 24, Արակդին — զոր Կիճանի դաշտին մէջ կը դնէ — կը համարի մայրաքաղաք Դագարայի. տարեգրութեանց մէջ այս իրողու-

թիւնը յայտնապէս յիշուած չենք գտներ, բնական է որ աւոտ ըսել չենք ուզեր թէ ի յառաջագունէ Բիլլերբէքի այս ըմբռնումն անընդունելի է։ — Ատլիլա շատ հին քաղաք մըն էր Զամուայի մէջ, որ եւ գոյութիւն ունէր Կարդունիաշի Սիբիր[1]՝ թագաւորին ատենը։ Ասուրնասիրբալ՝ Ատլիլա քաղաքն, որ բոլորովին աւերած էր, նորոգեց եւ պատնէշով պատեց։ Ասորեստանցւոց սովորութեանը համեմատ քաղաքն նոր անուն մ'առաւ, որ է Դուր-Աշշուր = Ամուրն Աշուրայ, եւ ըլլալով շտեմարան "ցորենոյ եւ յարդի համօրէն երկրին„՝ Զամուայի մէջ այնպիսի դեր մը խաղաց, ինչպիսի դեր խաղացած են Տուշհա եւ Նաիրի (էջ 21)։ Ասորեստանցւոց թագաւորը Ատլիլայի մէջ պալատ մըն ալ հիմը դրաւ, որ պիտի ծառայէր այն պաշտօնէից, որոնց յանձնուած էր Զամուայի կառավարութիւնը։ Տարեգրութեանց մէջ այս քաղաքին յիշուելու կերպը չի թոյլատրեր աւոր դիրքին նկատմամբ անանկ հետեւութիւն մը հանելու, որ առարկութիւն չվերցընէ։ Սէգիրմէի եւ Կարադաղի միջեւ գտնուող դաշտին մէջ դնելը,

---

1 Շատ վիճուած է Բաբելացի այս թագաւորին անձնաւորութեանը եւ թագաւորաց ցուցակին մէջ անցնելուն վրայ։ Հոմմէլ (Gesch. S. 570) զինքը Նապու-ապլ-իդդինի անմիջական նախորդը կը համարէր, իսկ Դելիչ (առ Mürdter, Gesch. v. Bab. u. Ass. II S. 159)՝ Նաբու-մուկին-ապլ(?)ի եօթն յաջորդներէն մին, ուստի ինքն ալ այս թագաւորին՝ Բաբելական 8դ հարստութենէն ըլլալուն կողմն էր։ Այս վիճաբանութեան այնու ընդունելի լուծում մը տուաւ Պայսէր, որ Ծովաշխարհի ըսուած Ե. հարստութեան առաջին թագաւորին անունը Սի-բար-շի-հու կարդաց (մինչեւ նոյն ատեն Սիմ-մաշ-շի-հու կը կարդացուէր) եւ նոյնացուց Սիբիրի հետ։ Այս միջոցներուն ամբողջ վէճն այնու գոհացուցիչ լուծում մը գտած է, որ ի Նիւ-Եօրկ Հոֆմանի ժողովածոյին մէջ խեցի մը գտնուեր է՝ նման կասսեան թագաւորներէն մնացած խեցիներուն, որուն մէջ Սիբիր թագաւորին կը հանդիպինք։

ինչպէս կ'առաջարկէ Բիլլէրբէք, անդ էջ 35 եւ 37, հնարաւոր է։

Պէտք ենք զամուական հողի վրայ գնել նաեւ Հաշմարըսուած երկիրը։ Աստւրնասիրբաղ կը պատմէ, ինչպէս վերը յիշեցինք, աւերումն այն տեղերուն, որ Բարա, Լարբուսա, Դուր, Բունիսա գաւառներուն կը վերաբերէին եւ մինչեւ Հաշմարի կիրճին կողմերը կը տարածուէին։ Նմանապէս կը պարծի "Բաբիտէի կիրճէն մինչեւ Հաշմար„ նուաճած ըլլալուն վրայ։ Սաղմանասար Բ. Թագաւորութեանը 24ᵀ տարին անցաւ ատորին Զաբը, կտրեց Հաշմարն ու "իշաւ„ Նամրի։ "Հաշմարէ մինչեւ Սիբար„ (Սիմաշպատտի) խօսքէն, որով Սարգոն մարական երկիր կը հասկընայ, կը տեսնուի որ Հաշմար սահմանակից էր Մադաիի. հմմտ. վարը Սիբուր (Սիբար) անուան մէջ։ Բաբելական A (կամ S) ժամանակագրութեան համեմատ Հաշմարէ էր կարդունիաշի մէկ թագաւորը, որուն անունն էր Էա-մու-կին-շումի։

Դելիչ՝[1] Հաշմարը կը մեկնէ իբր կասեան բառ. հաշմար = չասսասա (համանիշ՝ չուրրուպա, շիկուրա = դիւցազն). այս անունն ալ կրնայ ընտանեաց անուն ըլլալ, ինչպէս որ շատ մը տեղւոյ անուններ առնուած են ընտանեաց անուններէն։ Հաշմար անունը կրող կիրճն ու երկիրը պէտք է որ Սիւլլէյմանիէի եւ Զոհաբի միջեւ տեղ մը գտնուի. այս պարագային մէջ Նամրի կ'ըլլայ տար արեւմտեան կամ հարաւ-արեւմտեան սահմանակիցը (տես վարը)։ Բիլլէրբէք, անդ էջ 30 եւ 60, համեմատութեան առնլով Ասուրն. Բ, 48—49՝ Բ, 59ի հետ՝ Հաշմարի համար մատնանիշ կ'ընէ Դիեալայի հարաւային ափունքը՝ Սէգիրմէ-դաղի

---

[1] Delitzsch, Kossäer S. 38. Այնտեղ կ'առաջարկէ Հաշմարը դնել Մադաիի եւ Էլլիպիի արեւելակողմը. այս առաջարկութիւնն բոլորովին անընդունելի է։

Հարաւ-արեւելեան ծայրը (Դեշտ-ի-Շամիրամի կողմերը)։

Վերը տեսանք արձանագրութեանց մէջի ընծայած կռուաններն՝ մէն մի զամուական գաւառին դիրքն որոշելու համար։ Մեր ստացած արդիւնքներն աչքի առջեւ ունենալով՝ պէտք են ամբողջ Զամուայի հիւսիսային սահմանը համարիլ ստորին Զաբը, իսկ հարաւային սահմանը՝ Տուռնատը (Դիեալան)։ Տուռնատի վերին ընթացքին հարաւային կամ արեւելեան կողմը գտնուող երկրի փոքրիկ գիծ մ'ալ (Դեշտ-ի-Շամիրամի քով) Զամուայի մաս համարելու ենք։ Արեւմուտքէն բնական սահմանն էր Կարա-դաղի շղթան. արեւելքէն սահմանը համարելու ենք այն լեռնագօտիները, որ յատուկ մօք Շէհրիզորը կը փակեն — մերձաւորապէս Աւրոման-դաղի յաջորդող եւ դէպ ի Տէկյէտ ձգուող գիծը։ Ի մի բան՝ տաճկական Սիւլէյմանիյէ սանջակը՝ Շէհրիզորի հետ մէկտեղ՝ կը համապատասխանէ Զամուայի։ Հաւանականօրէն վերջէն Զամուայի հարաւային կամ հարաւ-արեւմտեան մասը Նամրի անունն ալ առաւ։ Բիլլէրբէք, որուն Զամուայի դիրքին նկատմամբ յայտնած տեսութիւնն ընդհանրապէս կ'ընդունիմ, այս երկրին բնակչացը փոփոխութեան վրայ յաջորդ ստուերագիծը կը ներկայացընէ. Այն երկիրներն, որոնց կեդրոնը կը կազմէ Շէհրիզոր, ի սկզբան անդ Նամար կը կոչուէին. Լուլլուցիք այս ամբողջ երկիրները գրաւեցին ու բնակեցան։ Նամարի բնակչութիւնն յընթացս ժամանակաց խառնուեցաւ հիւսիսէն խուժող նոր տարրներուն հետ։ Այս կերպարանափոխութեանց հետեւութեամբը՝ երկրին ու ժողովրդեան հին անունը կամաց կամաց անսովոր դարձաւ. Ասուրնասիրպաղ Լուլլուցիներն այլ եւս ըստ պատահման միայն կը յիշէ. Նախկին Նամարը ալ Զամուա կը կոչուի։ Ասուրնասիրբաղայ յաջորդաց ատենն՝ Զամուա անունն ալ կը

կորսուի. այլ եւս Մազամուա կը լուէ, որ անունն է Ասորեստանցւոց վարչութեան տակ գտնուած երկրին՝ Հին Զամուայի մէկ մեծ կամ փոքր մասն իր մէջն ամփոփելով։ Սաղմանասար Բ.ի ատեններէն սկսեալ դարձեալ մէջտեղ կ'ելլէ այս երկիրներուն համար իբր տեղագրական բացատրութիւն՝ նախնական անունը՝ Նամրի ձեւով (փխ. նախկին Նամար անուան). Նամրի կատարելապէս կը համապատասխանէ Զամուայի՝ աշխարհագրական տեսակէտէ։ Այսչափ՝ ընդհանուր գծերով յառաջ բերինք Բիլլերբէքի երկրին բնակչացը փոփոխութեան վրայ ունեցած տեսութիւնը։ Բիլլերբէքի՝ առաջին նայուածքին գրաւող նկարագրութիւնը՝ բոլորովին երկբայական կը դառնայ, երբ մանրամասնօրէն քննուի խնդիրը։ Նամար (Նամրի) անունն իրապէս չի կրնար նոյն ըլլալ Զամուա անուան հետ. հմմտ. վարը։ Թէեւ միշտ զարմանալի կը մնայ Զամուա անուան միայն Ասուրնասիրբաղայ բնագիրներէն ծանօթ ըլլալը, սակայն քիչ մը չափազանց է՝ ի լռութենէ ապացուցի մը վրայ հիմնուելով՝ հետեւութիւններ հանել ժամանակակէտէ մը յառաջ ու ետքն եղած իրողութեանց նկատմամբ։ Կրնայ ըլլալ որ Զամուա քիչ մ'ատեն թոյլ կերպով կախում ունեցած ըլլայ Ասորեստանէ, այնպէս որ Ասուրնասիրբաղայ անմիջնորդական յաջորդին ատեն պէտք մ'եղած չըլլայ նորանոր արշաւանքներ ընելու այս երկրին դէմ, որով եւ տեղի չկար՝ արձանագրութեանց մէջ յիշուելուն։ Վերջէն՝ Ասորեստանի տկար թագաւորներուն ատենը՝ Ասորեստանի ձեռքէն ելաւ այս երկիրը. տարակոյս չկայ որ յետոյ մարական ասպատակութեան մէջ մասնակցութիւն ունեցաւ եւ Ասորեստանի Ը. դարուն մեծ թագաւորներէն նկատուեցաւ լոկ իբր մասն Մադաեցւոց։ Զամուայի եւ Մազամուայի աղերսին համար տե՛ս վերն էջ 130։ Ասուրնասիրբաղայ ատեն՝ Զամուայի մէջ դեռ Լուլլուացիք

կային։ Հիմայ Ջամուայի կը կցենք՝ Լուլլուացւոց վրայ ըսելիքնիս։

Դ. Լուլլու (Լուլլումէ, Լուլլուբի)։ Նարամ-սինի յաղթութեան սիւնն է ամենէն հին յիշատակարանը, որուն մէջ կը հանդիպինք Լուլլու անուան։ Հին-բաբելական ուրիշ չորս բնագիրներու մէջ ալ Գունդի թագաւորին տարիները կը հաշուին իբր ամք "աւերման Լուլլուբումի եւ Սիմուրումի։„

Ռամմանիրարի Ա. կը պատմէ թէ ինքը (Նուաճելէն ետքը)՝ Կաշշի, Կուտի, Լուլումի եւ Շուբարի ըսուածներուն քաղաքներն աւերմանէ կանգնեց։ Այս թագաւորին՝ Կարդունիաշի Նազիմարադդաշ թագաւորին հետ սահմանի նկատմամբ դրած դաշնագրութեան մէջ ալ կը յիշուի այս երկիրը. "իրենց երկիրները բաժնեցին Տիգրիսի մէկալ եզերքին վրայ գտնուած Պիլասկիէ եւ Արմանակարսալուէ մինչեւ Լուլումէ։„ Կուտի, Կաշշի, Լուլումի եւ Շուբարէ (ուրիշ տեղ մը՝... Նիրի, Լուլումի եւ Մուսրի) ըսուածներուն նուաճմանը վրայ կը խօսի Սաղմանասար Ա.։ Լուլուբի ըսուածներուն նուաճումը կը յիշուի արձանագրութեան մ՚ալ մէջը, զոր՝ ամէն երեւոյթներէն դատելով՝ ընծայելու ենք Տուկուլտինինիբ Առաջնոյն։ Նմանապէս Աշուրրիշիշի ալ կը պարծի Լուլլումի եւ Կուտի ըսուածները նուաճած ըլլալուն վրայ։ Աշուրրիշիշիի յաջորդը՝ Տիգղաթպիղեսեր Ա. կը պատմէ Լուլլումէի նուաճումը եւ անոր քաղաքներէն 25ին կործանումը։ Գրեթէ նոյն ժամանակներն՝ Գունդիի առենէն ի վեր առաջին անգամ ըլլալով՝ կը հանդիպինք "հզօր Լուլլուբիացւոց„ Նաբուգոդոնոսոր Առաջնոյն բաբելական մէկ արձանագրութեանը մէջ, որ կ՚աւանդէ այս ժողովրդեան նուաճումն, Ամուրրիի առումն եւ կասեան երկրին կողոպտումը։ Ասուրնասիրբալ ճակատի մը մէջ Լուլլումէի բազմաթիւ բանակները

ցրուեց. բայց աստի Որոյ արձանագրութիւնը կը պատմէ թէ Ասորեստանցւոց յիշեալ թագաւորը Լուլլումէի սահմաններուն մէջ որսորդութեամբ ժամանակ անցուցած է։ Տիգղաթպիղեսեր Գ.ի արձանագրութեանց մէջ կը կարդանք umêlu šakan mât Lullumi. այս խօսքին առնչութիւնը պարզ չէ. կարծեմ թէ ամէնէն բանաւորն է ընդունիլ թէ նոյն կառավարիչը՝ հաւատարիմ մնացած ըլլալով Ասորեստանի գահուն՝ բաբելական ապստամբ քաղաքները ստիպած է հնազանդութեան։ Սարգոնի Բ Հատուածակողման բոլորովին եղծած մասէն սաչափը միայն կրնանք հետեւցընել թէ Լուլլու երկրին վրայ ապստամբ գաւառ մ'աւելցած ըլլայ։ Դիբբարա բռնուած գրոյցին մէջ Լուլլուբուացիք անմիջնորդաբար կը յաջորդեն Սուտու եւ Կուտու բռնաւորներուն։ Երդմնեցուցչութեան շարքին մէջ մեր դիմացը կ'ելլեն լուլուբուացի վհուկներ՝ իրենց ընկեր ունենալով ելամացի, քուտացի եւ սուտուացի վհուկները։ Աշխարհագրական ցանկին մէջ Լուլլուբիացւոց լեռները կը յիշուին Հանէ լերան յիշատակուելէն ետքը։

Լուլլուի վրայ մեր ունեցած ծանօթութեան հիմը՝ լոկ Բաբելացւոց եւ Ասորեստանցւոց տեղեկութիւնները չեն կազմեր։ Բնիկ յիշատակարան մ'ալ գտնուած է։ 1891ին դը Մորգան Զօհաբի կողմերը երկսիւն արձանագրութիւն մ'ընդօրինակեց, որ Անուբանինի անունով Լուլուբուացի թագաւորէ մըն է։ Տարակոյս չկայ որ սիւնը կանգնած է նուաճողը ի յիշատակ իր յաղթութեան. այն մասնանիշ կ'ընէ արձանագրութեան վրայ գտնուող պատկեր մը՝ որ կը ներկայացընէ գերիներու խումբ մը. Նիննի դիցուհին այս գերիները կը տանի Լուլուբուացւոց թագաւորին։ Սովորութիւն եղած է այն ժայռէն առնելով՝ որուն վրայ այս սիւնը քանդակուած է, Հազարգերիի կամ Սերիպուլի սիւն անուանել արձանագրութիւնս։ Ժամանակագրօրէն

կարելի չէ ճիշդ որոշել այս Անուբանինիի թա-
գաւորութեան ատենը. սակայն ստոյգ է որ այս
թագաւորն եղած ըլլալու է հին-բաբելական պե-
տութեան ատենները եւ թերեւս Գունդիէ ալ
յառաջ: Շատ հետաքրքրական երեւոյթ է՝ Լուլ-
լուցւոց իշխանին պատմական անձնաւորութեան
Բաբելացւոց քով արդէն առասպելական մշուշով
պատած ըլլալը: Կութէական բռուած արարչագոր-
ծութեան զրոյցին մէջ մեր դիմացը կ'ելլէ Ան-
բա-նի-նի անունով իշխան մը՝ հայր եօթն եղբարց,
որ օտար ազգի մը գլուխն անցած՝ նախկին ժամա-
նակէ բաբելացի թագաւոր մը սաստիկ նեղը կը
խոթեն: Առաջին անգամ Հոմմէլ մատդիր ըրաւ՝
այս Անբանինիի եւ Սերիպուլի սեան վրայ գտնուող
Անուբանինիի նոյն անձն ըլլալուն վրայ: Անուբա-
նինի յայտնապէս Լուլուբուացւոց զօրութիւնն՝
մինչեւ անգամ բաբելական իշխանութեանց քա-
ղաքական անկախութեան վտանգ սպառնացող
այնպիսի բարձրութեան մը հասցուցած է, որ այս
զարհուրելի ժամանակաց յիշատակը բաբելացւոց
քով առասպելական ձեւով պահուած մնացած է:
Կարելի է թէ Գունդիի պատմած "աւերումն"
Լուլլուբուի՝ կապ ունենայ Անուբանինիի յաջորդ-
ներէն միոյն ատեն այս ժողովրդեան քաղաքական
անկմանը հետ. ասով կրնանք թերեւս Անուբա-
նինին Գունդիի ժամանակէն յառաջ համարիլ:

Լուլլու անուան կը հանդիպինք նաեւ խաղ-
դեայց յիշատակարաններուն մէջ: Տոպզաւէի (Սի-
դիկանի) սեան խաղդէական բնագրին մէջ կը յի-
շուին Զախշզադինի, Կուրի եւ Լուլու երկիրները:
Նմանապէս Լուլու անունը կը յիշուի Ռուսաս Բ.ի
մէկ արձանագրութեանը եւ ուրիշ խաղդէական
բեւեռագիրներու մէջ:

Աշխարհագրական ցանկը կ'ըսէ թէ Լուլլու-
բիացւոց երկրին լեռներն են Շէկ-ու-ըը-բէ եւ
Կէու-շ(?)բու-րու: Սէյս այս վերջին անունը Կէնէպար-

Քուրա կը կարդայ, որով Բիլերբէք (անդ էջ 8) կը փորձուի՝ Կինիպայի (Նիսիրի) հետ համեմատելու:

Շատ կարելի է Զոհաբ գաւառն՝ Լուլլուացւոց նախնական բնակավայրը կամ անոր կեդրոնը համարիլ: Վերջէն ասկէ թերեւս գաղթած են սարերին Զաբի եւ Դիյալայի միջեւ գտնուած լեռնաշխարհը՝ զամուական հողի վրայ: Թէ արդեօք այս տեղ անանկ զարգացան որ բնակչութեան վարող մա՞ս եղան, կամ բնակչաց փոքրամասնութի՞ւնը կազմեցին եւ կամ վերջապէս նորագաղթ տարրներէ դէպ ի հիւսի՞ս մղուեցան եւ կամ արդեօք անոնց մէ՞ջ լուծուեցան. ասոնք անանկ խնդիրներ են, որոնց մինչեւ հիմայ կարելի եղած չէ պատասխանել: Կարելի է ենթադրել թէ Զամուացիք իրենց անուամբը կոչուող երկիրը գաղթելով՝ քշած արտաքսած ըլլան Լուլլուացիներն եւ թէ նախկին բնակչաց մէկ յիշատակն է լոկ Դուր-Լուլլումաի անունը, զոր Ասուրնասիրբալ Զամուայի մէջ գտաւ: Զամուայի իշխանաց զօրութեան խորտակուելէն ետքը՝ անշուշտ Լուլումացւոց արշաւանքն ու ասպատակը նորէն սաստկացած ըլլալու է: Անուբանինիի արձանագրութեան լեզուն բաբելական գաւառաբարբառին աւելի մօտ է քան Ասորեստանեայց լեզուին: Սեմականին գործածութենէն կը տեսնուի այն տեւական եւ մնայուն ազդեցութիւնը, զոր Եփրատայ եւ Տիգրիսի դաշտին վաղնջական քաղաքակրթութիւնը ըրած է արեւելեան սահմանակից լեռնաշխարհներուն բնակչացը վրայ: Անուբանինիի սեան գտնուելովը տեսնուեցաւ որ ընդունայն էին այն ամէն փորձերը՝ որ Լուլլումէն արեւմտակողմը (Հիւսիսային Ասորիքի մօտերը) կը փնտռէին:[1]

Հանա (Հանի) երկրին կամ լեռան վրայ չեմ ուզեր երկայն խօսիլ, վասն զի ինծի հաւանական

1 Այսպէս գ. օ. Delitzsch, Paradies S. 104 Tiele, Geschichte S. 163.

կ'երեւայ թէ այս երկիրը արեւմուտք դնելու ենք, եւ թէ Հանին առնչութիւն մ'ունի Հանիգալբատի հետ: Այս խնդիրը դեռ գոհացուցիչ կերպով լուծուած չէ: Այս երկիրն կարելի է դէպ ի արեւելք՝ Լուլլուի կողմերը դնել եւ կամ դէպ ի արեւմուտք, ինչպէս որ արձանագրութեան չէտէ բառը կ'առնուի. վասն զի կարելի է այս բառն ըմբռնել մէյ մը իբր «կողմ» եւ բացայայտիչ Հանայի, եւ մէյ մ'ալ թարգմանել «սահման»՝ առանց Հանայի վրայ առնելու:

Տիգղ. Տարեգր. 139ին մէջ անմիջապէս Լ--ըլ--մէ ետքն յիշուած Մ--ըռ--ճ--նէ քաղաքը հաւանականօրէն դնելու ենք Լուլլուացւոց երկրին մօտերը կամ քովերը:

## 3. Տ--մմէ:

Քանի որ Գոնջալուի արձանագրութիւնը ծանօթացած չէր, կարելի էր այս երկրանունը Նիմմէ կամ Նումմէ ալ կարդալ. այժմ Տումմէ ընթերցուածը միայն ճիշդ է:[1]

Տումմէ Տիգղաթպիղեսեր Առաջնոյն ատեն՝ Նայիրեան 23 երկիրներու երկայն շարքին մէջ առաջին տեղը կը բռնէ եւ կը յիշուի Գոնջալուի արձանագրութեան մէջ, որ նոյն թագաւորէն է:

1 Բելքի եւ Լէմանի իրենց Հայկական արշաւանաց ատեն յամին 1898/9 գտած Գոնջալուի արձանագրութեան նկատմամբ հմմտ. այս երկու ուղեւորներուն համառօտ տեղեկատուութիւնները ի Verhandl. d. Berl. Anthrop. Gesell. 1898, S. 571 եւ 598; Sitzungsber. d. Berl. Akad. 1899, S. 117; WZKM XIV, S, 34 [տես թարգմանութիւնը ՀԱ. 1900]։ Բելք չգիտնալով որ Տ---ում-մի երկրանունն արձանագրութեանց մէջ կը գտնուի, նոյնացուց զայն այժմեան Տ--մ--կէ (իբր 25 քիլոմ. հեռու Բասմանսուէ՝ դէպ արեւելք) հետ: Ցումմի = Տումմէ (Ասուրնասիրբաղպալ) դնելով՝ այլ եւս աւելորդ դարձած է այս ենթադրութիւնը:

Տումմէի վրայ արշաւանք մը՝ Ասուրնասիրբալայ թագաւորութեանը առաջին տարւոյն պատերազմական գործառնութեանց դուռը կը բանայ։ Թագաւորին բանակները ստիպուեցան «դէշ ճամբաներուն եւ դժուարին լեռներու տաժանելիութեանը յաղթել։ Զէնք կրել կրցող բնակչաց վերջին ապաւէնն եղաւ «անմերձենալի լեռ մը, որուն գագաթներն երկաթէ դաշոյնի մը սայրին պէս դուրս ցցուած էին եւ որուն եւ ոչ իսկ թեւաւոր թռչուն մը կրնար մօտենալ — —դէնօ— թռչնոյն բոյնին նման ամրոց մը շինած էին անոր վրայ։» Այս լերան վրայ եղած յարձակման ատեն՝ պաշտպանողներէն 200 հոգի իրենց կեանքը տուժեցին։ Ասորեստանցւոց թագաւորը ասկէ Կիռուրի իջաւ։ Սաղմանասար Բ. ալ՝ իր նուաճած երկիրներուն կարգին մէջ կը յիշէ զՏումմէ։ Այս առթիւ Տումմէի՝ Դախաննիի եւ Արզաշկունուի միջեւ յիշուիլն անճշդութիւն մըն է եւ կարեւորութիւն չունի՝ տեղւոյս դիրքն որոշելու համար։

Տումմուի լեռներէն երեքին անունները գիտենք. ասոնք են՝ Ո–րէնէ, Ար––նէ, եւ Եդ–էնէ (տես էջ 140)։ Այս լերանց մէջն էին հետեւեալ քաղաքները, զորոնք Ասուրնասիրբալ առաւ. Գ––բբէ ամրութիւնը, Ս––րր–, Աբ––խ––, Ար––ր– եւ Ար––բէ։

Հին Նայիրեան գաւառներուն մէջէն ամէնէն արեւելեանն էր Տումմէ, իսկ ամէնէն հիւսիսարեւմտեան էր Դախաննի (այսպէս նաեւ Գոնջալուի արձանագրութեան մէջ)։ Ասուրնասիրբալայ Տումմէէ Կիռուրի իջնալն եւ Ետինի լերան՝ փախըստական Զամուացւոց ապաստանարան ընծայելը թոյլ կու տան մեզ բաւական ստուգութեամբ մը՝ Տումմէն Ռովանդիզի հարաւակողմը կամ հարաւարեւելակողմը զետեղելու։ Ետինին պէտք ըլլայ Տումմէէ դէպ ի հիւսիս կամ արեւելք կամ հարաւ-արեւելք ձգուող մէկ ճիւղը զամուական լե-

րանց: Ցումմէի դիրքին վրայ ունեցած կարծիքս ըստ բաւականին կը միաբանի Բիլլերբեքի տեսութեանը հետ (անդ էջ 19). Արպեղայի արեւելակողմը բարձրացող լեռնաշխարհը՝ վերին փոքր Զաբի վրայ մինչեւ գրեթէ Ռովանդիզ:

### 4. Մեսու, Գիզիլբունդա:

Ա. Մեսու: Ասուրնասիրբաղ զամուական երրորդ արշաւանքին առեն՝ քալեց Մեսու քաղաքին վրայ, ուր (զամուացի) փախստականք ապաւինած էին. այս տեղւոյն վրայ կ'իշխէին Ագիրու եւ Սիմակի լեռները: Սամսիրամման Բ. ալ կը պարծի երրորդ արշաւանքին առեն Մեսուացիները նուաճած ըլլալուն վրայ: Հետեւեալն է արձանագրութեանց այն տեղն, ուր այս երկրին ամեհի եւ լեռնական նկարագրութիւնը կ'ըլլուի. "Անմերձենալի լեռ մը գրաւած էին անոնք [Մեսուացիք]. 3 լեռնաստայր՝ որ ամպի մը պէս երկինքը կը ծածանէին, ուր եւ ոչ իսկ թեւաւոր թռչուն մը մօտեցած էր, իրենց անառիկ ամրոց էին ըրած. անոնց ետեւէն գացի ես եւ այն լեռնաստայրերը պաշարեցի: Օրուան մը մէջ անոնց վրայ յարձակեցայ արծիւի մը պէս եւ անոնց պատերազմողներէն բազմաթիւ մարդ սպաննեցի: Անոնց մարդիկները, ստացուածքը, ունեցածը, արջառը, էշերը, անասունները, կառաց ձիերը, երկսապատ ուղտերը՝ առանց թիւ ու համարի՝ լեռնէն վար իջեցուցի. անոնց շրջակայ 500 քաղաքները կործանեցի, աւերեցի եւ այրեցի:" Ասուրնասիրբաղ Մեննուէ Գիզիլբունդա գնաց:

Ռամմանիրարի Գ.ի մէկ արձանագրութեանը մէջ՝ նուաճեալ երկիրներուն մէկ ցուցակին մէջ այս շարքով կը ներկայանայ ունի Մեսու. "Հարհար, Արազիաշ, Մեսու, Մանդաի, Գիզիլբունդա, Մուննա, Պարսուա," եւն:

Թղթակցական մատենագրութեան մէջ շատ ստէպ կը յիշուին Մեսուի, Կուսի (Եւթովպիայի) եւ

Պարսուայի ձիերը։ Կուսի ձիերը գլխաւորաբար կառքի ձի էին, իսկ Մեսուիններն առ հասարակ բեռ քաշելու կը յարմարէին։

Մեսուի դիրքն որոշելու համար կարեւորութիւն ունի այն տեղեկութիւնը, որուն համեմատ Ազիրու եւ Սիմակի լեռները այս երկիրը կը կտրէին։ Հիմնուելով այն փորձերուն վրայ, որոնցմով վերն այս լեռներուն դիրքն որոշել ջանացինք, յատուկ մօք Շեհրիզորը (Սուլէյմանիէի հարաւակողմը գտնուող դաշտը) պատող լերանց արեւմտեան կամ արեւելեան կողմը զետեղելու ենք Մեսուն։ Ասկէ կը տեսնուի որ Մեսու՝ Զամուայի մէկ գաւառն էր կամ գէթ անոր սահմանակիցը։ Ամենեւին ստիպիչ պատճառ մը չկայ Բիլլէրբէքի պէս՝ Մեսու անունով երկու երկիր զանազանելու՝ մէյ մը զամուական եւ մէյ մ՚ալ մարական։ Ռամմանիրարի Գ.ին ցուցակն ալ ոչինչ կը ցուցնէ, վասն զի մէջը շատ մ՚ոչ-մարական երկիրներ կան։

Բ. Գէղչէլքուանդա։ Սամնիրամման Մեսուի մէջ թշնամւոյն ընդդիմադրութիւնը խորտակելէն ետքը՝ չուն շարունակեց դէպ Գիզիլըունդա, ուր բազմաթիւ քաղաքներ գրաւեց եւ Սասիաշ(ա), Կարսիբուտա եւ Սիբարա քաղաքներուն իշխաններէն հարկ առաւ։ Ասկէ Մատաի դարձաւ։ Գիզիլըունդայի քաղաքներէն կը յիշուին՝ Կէնաքէ, առաջին քաղաքը, զոր Սամնիրամման Մեսուէ գալու առենը՝ շօշափեց։ Կինակիի կռնակը կը բարձրանային Բէշբէլտա լերինք, որոնց մէջն էին այս երկու տեղերը՝ Սաքեաշ ուր կ՚իշխէր Տէրանշէա, եւ Կարաքէքտա, ուր կը թագաւորէր Սէրա։ Այս երկու իշխողք հարկ տուին կառքի ձի։ Ասորեստանցւոց բանակը ճամբան շարունակելով Որդաշ ամրոցին հասաւ, որուն վրայ կ՚իշխէր Պէրէշտէ իշխանը։ Ուրաշ պաշարեցաւ եւ յարձակմամբ առնուեցաւ. պաշտպաններէն 6000 հոգի ինկան պատերազմի մէջ։ 1200 հոգի, ընդ որս եւ քաղաքատէրը, գերի

բռնուեցան։ Ասորեստանցիք աւար ըրին «արջառ, ոչխար, ձի, արծաթէ, հիանալի ոսկիէ եւ պղնձէ անօթներ՝ առանց համարի։» Ուրաշէն Սէբուրու ամրոցին վրայ քալեց Սամսիրամման. այս ամրոցը կը հպատակէր Ննգուր անունով իշխանի մը։ Այստեղ կանգնուեցաւ Ասորեստանցւոց թագաւորին մէկ արձանը, որուն վրայ գրուած էին Ասորեստանցւոց յաղթութիւնները Նայիրիի մէջ։

Յառաջ այս երկրին անունը Գի-նուն-բունդա եւ Գի-րատ-բունդա ալ կը կարդային, որուն հետ Կիպերտ կը համեմատէր Հերոդոտոսի 'Ορθοκορυβάντιοιն եւ այսօրուան Գերաբաւենդն ի Գիլան։ Ասորեստանցւոց այն բազմաձայն նշանը, որ պատճառն է այս այլեւայլ ընթերցուածոց, կրնայ միայն Նուն եւ Չիլ ըլլալ, իսկ բուն շփոթութեան հետեւութիւն է։ Թէ միակ ուղիղ ընթերցուածը Չիլ է, կը ցուցուի Սաղմ. Բ. 59 տեսնուածէն։ Գիզիլբունդայի դիրքին նկատմամբ սաչափ միայն կարելի է ըսել թէ դրացի էր Մեսուի եւ Մադաիի։ Բիլլերբէքի, անդ էջ 66, 92, Գիզիլբունդայի դիրքին համար ըսածն (Ջագատու գետ՝ Սանճբուլակի արեւելակողմը) կախում ունի Մեսուի դիրքէն։

## 5. Հարգա, Հարմասա, Սիմերա, Սիրիշ, Ուլմանիա, Սիմեսի։

Ասուրնասիրբալ՝ Կիռուրի ըրած առաջին արշաւանքին ատենը՝ Սիմեսիի, Սիմերայի, Ուլմանիայի, Ադաւշի, Հարգայի եւ Հարմասայի հարկն առաւ, որ էր «ձի,..., արջառ, ոչխար, պղնձէ անօթներ։» Սաղմանասար Բ.ի առաջին պատերազմական գործառնութիւնն էր Սիմեսիի Արիտու քաղաքը յարձակմամբ առնուլը։ Արիտուի ճամբան կը տանէր Սիմեսիի «կրճին մէջէն։» Թագաւորն Արիտու եղած ատենը՝ Հարգա, Հարմասա, Սիմերա, Սիրիշ, Ուլմանիա եւ Սիմեսի երկիրներէն տրուած

հարկն առաւ, որ կը կայանար կառքի ձիերէ, արջառէ, ոչխարէ եւ գինիէ։ Վերոյիշեալ "Հալմանի վերեւը" գտնուող կիրճերէն անգամ մ'ալ անցաւ՝ թագաւորութեանը 31ր տարին, այս անգամ Պարսուայէ եւ Նամրիէ գալով։ Կնուտոնի բնագրին մէջ Թ. 43 Սիրիշ կը ներկայանայ երկիր մը՝ Մանեանց յարձակմամբը վտանգեալ։ Հարգի նաեւ ծանօթ է ուրիշ երկու արձանագրութիւններէ, որոնք Բեցոլդի Ցուցակին մէջ միայն կը գտնուին։

Սիմեսիի կը վերաբերէր Արէշուա քաղաքը, որ ամրոցն էր Նէշնէի։ Սամսիրամման Բ. կ'ըսէ թէ Արիդու էր իւր պետութեան վեց անկիւններէն մին "Արիդիէ մինչեւ Սուհի" (մերձաւորապէս Հաբուրի բերանն՝ ի Միջագետս)։

Վերն յիշուած երկիրներուն դիրքը մերձաւորապէս որոշելու ամէնէն ապահով կռուանն է ինծի այն տեղեկութիւնը, որուն համեմատ Սիմեսիի կիրճերը կը գտնուէին "Հալմանի (— այսօրուան Հուլվան) վերեւը։" Այս տեղեկութեան վրայ հիմնուելով կ'ուզէին Սիմեսիի կիրճերը համարիլ հաղորդակցութեան այն հին անցքը, որ Ասորեստանը Մարաց երկրին հետ կը կապէ եւ դասականներէն "Զագրոսի դուռն" (αἱ τοῦ Ζάγρου πύλαι, Պտղմ. Է. 2, 7) կամ "Մարական Դուռն" (ἡ Μηδικὴ πύλη, Ստրաբ. ԺԱ) կը կոչուի։ Ինչպէս վաղեմի հնութեան մէջ, նոյնպէս եւ հիմայ Բաղդադի կարաւանի ճամբան այս կիրճէն անցնելով՝ Երանեան բարձրաւանդակը կը հասնի։ Ասորեստանէ հոս ամէնէն կարճ ճամբան նմանապէս կ'երթայ կարաւանի հին ճամբուն վրայէն՝ Երբիլ — Ալթըն Քէօփրիւ — Կերկուկ — Թուզ-Խուրմաթի — Կիֆրի — Բաղդադ մինչեւ Կիֆրի եւ թերեւս այս տեղէն Դիեալա տանող ուղղակի կողմնական ճամբու մը վրայէն յառաջանալով կը միանար վերոյիշեալ գլխաւոր ճամբուն՝ որ Սիմեսիի կիրճին ուղղութիւնը կը բանէ։ Եթէ Սիմեսիի կիրճն =

Զագրոսի դուռն հաւաստրութիւնն առարկութեան տեղի չթողուր, այն ատեն Սիմեսին եւ մէկալ երկիրները պիտի ըլլային այսօրուան Հուլվանի կողմերը՝ ի հարկէ առանց դիրքը ճշդիւ որոշելու: Բայց այս երկիրներն Հուլվանի հիւսիսակողմն որչափ ալ վեր քշենք, սակայն միշտ մեծապէս զարմանալի կը մնայ սա պարագան որ ասոնք՝ ըստ արձանագրութեանց՝ իրենց հարկը կը տանէին մինչեւ Կիռուրի, որ Ուրմիոյ լճին հարաւ-արեւմտեան անկիւնը երկիր մըն է: Այս կասկածին վրայ աւելցրնելու ենք ուրիշ կասկածելի իրողութիւն մըն ալ որ է՝ այս երկիրներէն մէկուն՝ Սիրիշի՝ Մաննեանց ապստամբութեանը վտանգի ենթարկուիլը: Այս երկու կէտերը աչքի առջեւ ունենալով՝ պատշաճ կը տեսնեմ այս երկիրներուն տեղը շատ աւելի հիւսիսային համարիլ եւ Թիլլէրբէքի հետ (էջ 46, 65) Սիմեսի կիրճը փնտռել Ալշոյի կիրճերուն մէջ՝ Խոյի Սանջակի արեւելակողմը: Տարակոյս չկայ որ այս պարագայի մէջ տարօրինակ կը մնայ "Հալմանի վերեւը" յաւելուածը: Գոհացուցիչ ելք մը չեմ գտներ այս դիլեմմայի մէջէն ելլելու. ինչու որ երկու իրարմէ տարբեր Հալման կամ Սիմեսի ընդունիլը թէ՛ ի հիւսիսի եւ թէ՛ հարաւակողմը՝ նմանապէս ունի իր դժուարութիւնները: Առ այժմ վերոյիշեալ տեսութիւններէն ո՛չ մին եւ ո՛չ մէկալը կարելի է ցրել կամ հաստատել: Սամսիրամմանի "Արիդիէ մինչեւ Սուհի" խօսքն ալ չի լուսաւորեր այս մթութիւնը: Ամենեւին տարակոյս չկայ որ Սիրիշ երկիրը ամենեւին գործ չունի՝ վերին Տիգրիսի վրայ եւ Կումմահի մօտ գտնուող Սերիշշէ քաղաքին հետ (Ստրաբոնի Σάρεσαն?), այլ պէտք է երկուքն իրարմէ զանազանել:

### 6. Նամրի կամ Նամար։

Տելլոհի մէջ գտնուած աշխարհագրական ցուցակ մը, որ հարկահանէ մը մնացած է, կը բովանդակէ իր մէջը Սիրպուրլայի շրջակայքը գտնուող 50 տեղեաց անուններն, ի մէջ այլոց Նաւեւ Նամրուամ քաղաքը, որ կրնայ Նամար-Նամրիի հետ նոյն ըլլալ։ Մէկ կողմ թողլով այս տարակուսական տեղը՝ Նամար անունը առաջին անգամ մեր դիմացը կ'ելլէ Նաբուքոդոնոսոր Առաջնոյն ընծայման յիշատակարանին մէջ, որով Ռիտտի-Մարդուկ անունով անձը ազատ կը կացուցուի Նամարի մէջ գտնուած ամէն տեղեացը համար հարկ կամ տուրք տալէ։ Ասկէ զատ՝ այս երկիրն միայն Ասորեստանեայ արձանագրութեանց մէջ կը յիշուի եւ այն ալ միշտ Նամրի ձեւով։ Սաղմանասար Բ. թագաւորութեանը 13դ տարին ստորին Զաբն անցնելով՝ Նամրիի վրայ քալեց, որուն Մարդուկ-մուդամմիք(էկ) թագաւորը փախաւ։ Այս թագաւորին ստացուածքն, բանակները, դից արձանները, պետութեան Պաշտպաններն Ասորեստանցւոց թագաւորին ձեռքն ինկան, որ Յանզու անունով Հաբբանացւոյ մը տուաւ Նամրիի թագը։ Թագաւորութեանը 24դ տարին Սաղմանասար դարձեալ Նամրի "իջաւ„ — ստորին Զաբն անցնելէն եւ Հաշմարը կտրելէն ետքը —, ամրացեալ տեղերուն վրայ յարձակեցաւ առաւ եւ պատերազմի մէջ բնակչացը մէկ մասը կոտորեց, որ լերան մը գագաթն իրենց ապաւէն էին շինած։ Յանսու՝ Ասորեստանցւոց բանակին մօտենալը լսելով փախաւ։ Ասորեստանցւոց նոյն թագաւորին ուրիշ արշաւանքներէն 834 տարին ինկողները (= 26դ տարի թագաւորութեանը) կը նշանակէ Անուանագիր արձանագրութեան հատակոտորը (Rm 2, 97), իսկ թագաւորութեանը 31դ տարին իյնողները՝ սեւ կոթողը։ Սամսիրամման Բ.ի՝ Բաբելացւոց Մար-

դուկ-իկէի Թագաւորին դէմ մղած պատերազմին մէջ Նամրի, Կալդու, Ելամ եւ Արումու (այսինքն՝ Արամէական իշխանութիւնք) Բաբելացւոյն կողմն էին: Սամսիրամմանի յաջորդներն ալ չորս անգամ արշաւանք ըրին Նամրիի դէմ. մէյ մէկ արշաւանք ըրին Ռամմանիրարի Գ. (798) եւ Սաղմանասար Գ. (774) եւ երկու արշաւանք ըրաւ Աշուրնիրարի (749, 748): Նամրիի դէմ պատերազմական գործառնութեանց այսչափ ստէպ պէտք ըլլալը կը ցուցընէ որ Ասորեստանցւոց վերին իշխանութիւնն այս երկիրներուն վրայ ոչ Սաղմանասար Բ.ի եւ ոչ անոր յաջորդաց ժամանակ տեւական էր. երբ Ասորեստանի Նամրի եկած բանակները կը հեռանային՝ բնակչաց մէջ կը մարէր իրենց Նինուէէ կախում ունենալուն գիտակցութիւնը: Տիգղաթպիղեսեր Գ.ի արձանագրութեանցը մէջ՝ մարական նահանգներու շարքին մէջ առաջին տեղին կը բռնէ Նամրի՝ իրեն յաջորդ ունենալով Բիտ-Սանգիբուտի անունը. իսկ Սարգոնի քով՝ Մադաի շա ռէօ շամսի անուան եւ Ելլիպիի միջեւն է:

Սաղմանասար Բ. Նամրիի ամուրներէն չորսին անունը մեզի կ'աւանդէ, որ են՝ Շիհիշալահ, Բիտ-Տամուլ, Բիտ-Շակկի, Բիտ-Շեդի:

Նամրիի մէկ գաւառը կը կոչուէր Բիտ-Կարզիաբկու, որ իր անունն առած էր Կարզիաբկու ընտանիքէն — նոյն երկրին տէրէն: Վերոյիշեալ Ռիտ-տի-Մարդուկ՝ Բիտ-Կարզիաբկուի կառավարիչը՝ մէկ շառաւիղն էր այս ընտանեաց, որ՝ ըստ երեւոյթին՝ Հաբբանացիներէն ետքը ամենէն մեծ ազդեցութիւնն ունէր Նամրիի մէջ: Կարզիաբկու = Կարզիտա կարծեցեալ հաւասարութեան նկատմամբ՝ տե՛ս վարը Կարզիտա անուան տակ:

Նաբուքոդոնոսոր Առաջնոյն ազատութեան թղթոյն մէջ եւս ստուգուած է երկրիս անուան Նամրի ձեւը: Ցառաջ կարելի էր նաեւ Զիմրի կարդալով Երեմիայի זמרי-ին (ԻԵ, 25) հետ յա-

բարերութեան մէջ դնել։ Հին-Բաբելական Նամար ձեւին տեղ՝ Ասորեստանցիք միշտ Նամրի այլայլեալ ձեւը կը գործածէին։ Եթէ սեմական լեզուներէ ուզուի մեկնել այս անունն, այն ատեն կամ "փառաւոր, լուսաշող" կը նշանակէ, եւ կամ "յովաղ(ի երկիր)", բայց ես աւելի հաւանական կը համարիմ բառիս ոչ-սեմական ծագումն ունենալը։ Նամարի մէջ իրարու հանդիպած էին կասսեան եւ բաբելական քաղաքակրթիչ ազդեցութիւնք. առաջնոյն կը վկայէ Ցանգու Թագաւորական անունն կամ տիտղոսը եւ Շումալիա դիցուհւոյն՝ "տիրուհւոյն փառաւոր լերանց" այստեղ պաշտուիլը, զոր պէտք ենք՝ Ռասսամի արքունական ցանկին վրայ յենլով՝ կասսեան աստուածութիւն մը համարիլ. կ'երեւայ թէ բաբելական քաղաքակրթութեան ազդեցութիւնը Նամարի վրայ աւելի էր, ինչպէս որ կը ցուցընեն բաբելական յատուկ (անձի) անուանց գոյութիւնն եւ սեմական Պանթէոնին առաւել տիրող ըլլալը։ Այս իրողութիւններէն կրնանք ապահովապէս հետեւցընել թէ կասսեանք եւ Բաբելացիք բաւական բազմութեամբ Նամրիի մէջ հաստատուած էին. բնիկ բնակչութիւնը կարելի է թէ ազգակից ըլլայ Զամուացւոց կամ Լուլլումացւոց։ Նամրիի մէջ երկրատէր էին Հաբբանեանք կամ Հաբբանացիք, որոնցմէ մին (Բելնադինշում) կուսակալ էր Նաբուքոդոնոսորի ատեն. Սաղմանասար Բ. այս ընտանիքին մինչեւ անգամ թագաւորական թագ տուաւ։ Ազատութեան թուղթը բաց ի Նամարի կուսակալէն կը յիշէ եւ Նամարի կառավարիչ մը՝ Նաբու-կու-դուր-րի-ուսուր անունով։ Թէ այս երկուքին իշխանութեանց սահմանները փոխադարձաբար ինչպէս որոշուած էին, կը մնայ մեզի անծանօթ. կրնանք ենթադրել թէ կուսակալին պաշտօնն էր ի մասնաւորի ներքին կառավարութեան գործերն հոգալ (որոց վրայ հսկել եւն), իսկ կառավարչին պաշտօնն էր առաջ-

նորդել բանակին։ Նոյն ազատութեան հետաքըր-քրական թըլթէն կ'իմանանք որ Նամար հլու հպատակ էր հին-բաբելական պետութեան, իսկ Ասորեստանցիք երբեք չյաջողեցան այս երկիրն մնայուն կերպով կամ գէթ քիչ մ'երկայն ատեն իրենց իշխանութեան տակ պահել։

Արձանագրութեանց Նամրիի վրայ տուած տեղեկութիւններն անանկ ընդհանուր են, որ դիրքն որոշելու համար՝ բաւականէն աւելի միջոց կայ շարժելու։ Ասորեստանէ նայելով Նամրի ստորին Զաբի մէկալ դին էր. բաց ատի դրացի էր Հաշմարի. Նկատելով այս վերջին պարագան եւ նմանապէս աչքի առջեւ ունենալով որ Բաբելացւոց ազդեցութիւնն շատ մեծ էր եղած Նամրիի մէջ՝ իրաւամբ կրնանք ըսել թէ բեւեռագրերուն Նամրին ըլլալու է ամբողջապէս կամ մասամբ այն երկիրն, որ հիւսիսէն Ռադանուի եւ հարաւէն Տուռնատի միջեւ կը տարածուի եւ դէպ ի արեւմուտք նախ Ադաիմ գետով եւ ապա Ջեբել Համրինով կը պատի։ Իսկ թէ դէպ ի հիւսիսային արեւելք մինչեւ ուր կը տարածուէր եւ ըստ այսմ Զամուայի երկրէն մաս բռնա՞ծ էր թէ ոչ, կարելի չէ ճշդել։ Կը փորձուիմ Բիտ-Համբանը Նամրիի հարաւակողմը կամ հարաւ-արեւելակողմը (Դիեալայի արեւելակողմը) զետեղել. Հաւանականագոյնս այս երկիրը Նամրիի հետ շատ անգամ կապուած էր անձնական միութեամբ (Համբանեանց ցեղէն կուսակալին՝ երկուքն ալ կառավարելովը)։ Որովհետեւ Նամրի, ինչպէս նաեւ արձանագրութեանց ցոյց տուած եւ մեր այստեղ յիշած երկիրներէն շատերը, որոշ գծուած գաղափար մը չեն ներկայացըներ, այլ անորոշ եւ տարածական գաղափար մը, ուստի շատ հաւանական է որ գլխաւորաբար արեւելեան կամ հիւսիսային արեւելեան մասը՝ Զամուայի երկրին մէկ մասը իր մէջը կը բովանդակէր. արդէն անոր անունը բեւեռագիր արձանա-

դրութեանց մէջէն շուտով անհետացած է։ Մէկալ կողմանէ չեմ կրնար Բիլլերբէքի չափազանց տեւողութեանց հաւանիլ, որ Նամար-Նամրին համազօր կը համարի Զամուա-Մազամուայի։ Նամրիի դիրքին նկատմամբ տուրպադէոք ընդհանրապէս կ՚ընդունին այն տեսութիւնը, զոր պարզեցի։

Նամրիէն զանազանելու է Նամրիի բռուածներուն երկիրը։ Բեհիստունի եւ Նակշ-ի-Ռուստեմի արձանագրութեան բաբելական թարգմանութիւնն այս անունը կը դնէ՝ հին-պարսկերէն բնագրին Սաքային տեղ. իսկ այսօր Սակք ըսելով առ հասարակ Սկիւթացիները կը հասկըցուին։

7. Պարսուա (Բարսուա), Շուրդա (Շուրդիրա), Շուչիանա, Տուրլա (Տուիլա), Անդիա (Անդիա)։

Ա. Պարսուա (Բարսուա)։ Սաղմանասար Բ. թագաւորութեանը 24ր տարին Նամրիէն գալով՝ Պարսուա հանդիպեցաւ եւ հոն 27 իշխաններէ հարկ առաւ։ Ասկէ ետքն Ամադայի բռուածներուն երկիրը գնաց, ի մասնաւորի Արազիաշ եւ Հարհար "իջաւ,,։ Թագաւորութեանը 30ր տարին թագաւորին տուրտանը՝ Դաիան-Աշուր՝ Շուրդիրայէ Պարսուա իջաւ. այս առթիւ բնականաբար "երկրին թագաւորները,, անոր պարգեւներ կամ ըստ Ասորեստանցւոց ըմբռնման հարկ խաւրեցին. քանի մ՚ապստամբ տեղեր առնուեցան եւ բնակիչներն Ասորեստան գերի տարուեցան։ Յաջորդ տարին Սաղմանասար դարձեալ Պարսուա եկաւ եւ հոն 3 մեծ եւ 27 շրջակայ փոքր քաղաքներն առաւ եւ դարձեալ Նամրի "իջաւ,,։ Սամսիրամման Բ. Պարսուան հետեւեալ կերպով կը յիշէ անուանց շարքին մէջ. Միկտիարա, Սունբա, Ման, Պարսուա, Տաւրլա։ Այս ամէն երկիրները կառքի ձի հարկ տուին։ Մանրամասնութիւնք ծանօթ չեն՝ Ասորեստանի Պարսուայի հետ ունեցած պատերազմներուն

վրայ՝ որ տեղի ունեցան Ռամմանիրարի Գ.ի եւ Տիգղաթպիլեսեր Գ.ի ատեններր: Պարսուա միշտ ուրիշ նուաճեալ երկիրներու հետ կը յիշուի, այսպէս Ռամմանիրարի Գ.ի քով. “...Մեսու, Մադաի, Գիզիլբունդա, Մուննա, Պարսուա, Ալլաբրիա, Աբդադանա„ եւ Տիգղաթպիլեսեր Գ.ի քով՝ “Բիտ-Մատտի, Նիկու, Ումլիաշ, Տարանզաի, Պարսուա, Բիտ-Զատտի, Բիտ-Աբդադանա, Բիտ-Կապսի„ եւ քիչ մը տարբերելով Հարթ կոթողին մէջ՝ “Բիտ-Տարանզաի, Պարսուա, Բիտ-Կապսի„: Երկիրներու ուրիշ ցուցակ մըն է Սարգոնի Գլանի արձանագրութիւնը, որուն մէջ Պարսուա նմանապէս կը յիշուի. “...Նամրի, Ելլիպի, Բիտ-Համբան, Պարսուա, Ման, Ուրարտու:„ Սարգոն Պարսուան ընդարձակեց՝ անոր հետ կցելով նախ մարական Նիկսամա գաւառին վեց քաղաքները, զոր ինքը նուաճած առած էր, եւ երկրորդ՝ Շուրգադիա քաղաքը, որուն վրայ նոյն ատեն Շեպա-շարրի կ՚իշխէր: Պարսուա՝ ի մէջ այլոց՝ Անզանի, Պաշիրուի, Ելլիպիի եւ Բաբելական Արամայեցւոց հետ մասնակցած էր այն մեծ նիզակակցութեան, զոր Ելամ կազմած էր Ասորեստանցւոց դէմ՝ Սանհերիբի ատեն:

Նամակի մը մէջ (K 529) կը խօսուի Պարսուայի, Մեսուի եւ Կուսի արտածած ճայիկներուն վրայ: Արդէն դասական հեղինակներէն ծանօթ է մեզ որ մարական դաշտավայրերը, որոնց կարգէն է նաեւ Պարսուա (ըլլալով մարական Ատրպատականի մէջ), ի հնուց նշանաւոր էին իրենց ձիաբուծութեամբը:

Բարշուաշ անունը կը գտնուի նաեւ վանեան արձանագրութեանց մէջ, այսպէս Սէյսի քով Թ. XXXIX, 12, 13 եւ Խարականիսի նորագիւտ սեան վրայ, որ գտնուեցաւ գերմանական-հայկական արշաւանքի ատեն: Արձանս կանգնած են Իսպուինիս եւ Մենուաս՝ իրենց այս երկրին (Բարշուաշի) վրայ տարած յաղթութիւնը յաւերժա-

ցընելու համար։ Այս սիւնէն կ'իմանանք որ Բարշուաշ իրապէս Ասորեստանի կը վերաբերէր՝ Սաղմանասար Բ.ի ձեռօք նուաճելէն սկսեալ։

Ասորեստանեայ արձանագրութիւններէն կը ծանօթանանք Պարսուայի երեք քաղաքներուն։ Առաջինն է Բուշտու. տարակոյս չկայ որ Սեաւ կոթողին Բուշտուն՝ նոյն է Տիգղաթպիղեսեր Գ.ի քով Բուզտուզ եւ Սարգոնի քով Բուզտիս անուն երկրին հետ։ Տիգղաթպիղեսեր Գ.ի արձանագրութեանց մէջ Բուզտուզ միշտ Նիպարիայի եւ Արիարմիի միջեւ արձանագրուած է՝ առ հասարակ մարական երկիրներու երկայն մէկ ցանկին մէջ, իսկ Սարգոնի տարեգրութեանց մէջ՝ Ուաիդաւէի եւ Ագազիի միջեւ. նոյն թագաւորին Հատուածակողման հատակոտորին մէջ՝ Բուշտուի մէկ իշխանը կը յիշուի Ա-րէ-է-ա անունով՝ մարական իշխաններու եւ անոնցմէ կառավարուող երկիրներու մէկ ցուցակին մէջ։ Վանեան արձանագրութեանց մէջ ալ շատ ստէպ կը յիշուի Բուզտուզ։

Պարսուայի Ասորեստանցիներէն յիշուած մէկալ քաղաքներն են Շոլահամանոս եւ Կինիհամանոս։

Բելք ու Լեման կ'ըսեն թէ Պարսուայի մայրաքաղաքն էր Մէ-էշ-տա, որ կը յիշուի վերոյիշեալ Խարակոնիսի սեան մէջ եւ Ուրմիոյ լճին հարաւակողմը գտնուող Տաշ-Թէփէի ժայռին մենուասեան արձանագրութեանը մէջ։ Պարսուայի մէկ ուրիշ քաղաքը կը կոչուէր Նի-է-գէ-քէ-նէ։

Պարսուան դնելու ենք Ուրմիոյ լճին հարաւակողմը կամ հարաւ-արեւելեան կողմը. դիւրին ճշդել ուզած ատեննիս՝ Պարսուայի յատկացընելու ենք այն երկիրը, որուն սահմանն է հիւսիսէն Սաուջբուլաղ եւ Սախնկալէ, իսկ հարաւէն Ծէքիզ։ Ուստի Մազամուա Պարսուայի արեւմտակողմը կ'իյնար, Զամուա եւ Նամրի՝ հարաւ-արեւմտակողմը. Պարսուա արեւելքէն եւ հարաւէն մարական եր-

կիրններով կը պատէր. Նիկասամմա եւ Արազիաշ կ'երեւայ թէ Պարսուայի հարաւային սահմանին շատ մօտ էին: Պարսուայէ Նամրի «իշխանը» բառական իմաստով առնելու չէ, վասն զի անանկ ըմբռնում մը դժուարաւ կրնայ արդարացուիլ, քանի որ Պարսուա ցած երկիր մըն էր. ուստի՝ «իշխան» ըսելով՝ հիւսիսային-արեւելքէ հարաւային-արեւմուտք երթալ հասկընալու ենք: Բիլլէրբէքի Պարսուայի գիրքին վրայ ունեցած տեսութիւնն՝ ըստ բաւականին իմինիս հետ կը միաբանի: Սակայն չեմ կրնար ընդունիլ Բիլլէրբէքի այն կարծիքը թէ Կիշեսիմ Պարսուայի կը վերաբերէր եւ անոր մայրաքաղաքն էր; վասն զի արձանագրութիւնք որեւէ կռուան չեն ընծայեր անանկ ըմբռնում մը գոյացընելու: Նմանապէս չեմ կրնար համախոհ ըլլալ Բիլլէրբէքի, երբ Բուշտու կամ Բուզտուզ անունով երեք գաւառ կամ երկիր կը զանազանէ, այսինք՝ 1. Բուշտու ի Պարսուա, 2. Բուզտուզ Վանեան արձանագրութեանց, 3. Մարական երկիր մը՝ Բուզտուս, Բուզտուզ, Բուշտու (անդ, էջ 91, 156 եւն): Արդէն Սէյս Պարսուան Նախահայկական բեւեռագրութեանց Բարսուային հետ նոյնացուցած է եւ գիրքն ալ որոշած՝ դնելով այս երկիրն Ուրմիոյ լճին հարաւ-արեւմտակողմը, ուստի խոտորելով՝ մեր վերը մատնացոյց ըրածէն: Առ այժմ ամէնէն հարաւ-արեւելեան կէտը համարելու ենք Բարսուար, մինչեւ հոս՝ Խաղդեայց իշխաններուն եկած ըլլալուն վկայութիւն ունենալով: Վերջապէս սա ալ նշանակենք որ Պարսուան Դաւրէժի արեւելակողմը դնելը — ինչպէս որ եղած է Հին-Աստրեստանցւոց Պետութեան աշխարհացոյցին մէջ (Շրադէր, KB I) ամենեւին իրողութեանց չի համապատասխաներ:

Բնականաբար Պարսուան — ինչպէս արդէն Շրադէր իրաւամբ ըսած է (KGF 173) — ոչ վերջէն Պարսկաստան ըսուածը կամ Պերսիս գաւառը

կրնայ ըլլալ, եւ ոչ ալ արեւելակողմը գտնուող Պարթեւաստանը, ինչպէս կ'ուզեն Լընորման եւ Օպպերտ: Բեհիստունի արձանագրութեան ասո-րեստանեայ թարգմանութիւնը Պարթեւաստանը Պարթու կը թարգմանէ, իսկ Պարսկաստանը՝ Պա-ր-սա, Պա-ար-սա: Պարթուա = Պարթեւաստան հաւատարութեան պաշտպանները ստիպուեցան են-թադրել թէ Պարթեւք նախաքաղմեներան ժամա-նակին մէջ տեղափոխութիւն ըրած են, որպէս զի մէջտեղէն վերցընեն այն հակասութիւնը, որ յե-րեւան կ'ելլէր յետնագոյն Պարթեւաց բնակավայ-րին նախկին Պարթեւաց բնակավայրէն ունեցած ահագին հեռաւորութեամբը. յետնագոյնները կը բնակէին Կասպից Ծովուն ամէնէն հարաւային մա-սին արեւելակողմը (այսօրուան Խորասան գաւառին մէջ), իսկ նախկինք Պարսուայի մէջ յԱդրպատա-կան: Ռոստ (Untersuch. S. 74) առակաւին Պար-թեւաստանի ենթադրութեանը վրայ հաստատուն կեցած՝ կը ջանայ նոյնը հետեւեալ կրկին հնարաւո-րութիւններով հաստատել. կամ Պարսուացիք = Պարթեւք Է. դարուն Մարաստանի վրայէն նորա խուժող ժողովրդոց ասպատակութեամբն արեւելք մղուեցան, կամ ի սկզբանէ դէպ ի արեւմուտք գաղթող պարթեւական ցեղ մը՝ Ատրպատականցւոց եւ հիւսիսէ եկող դաղթականներու հետ կռուե-լով՝ կորսուեցաւ: Բայց թէ Պարթեւաստանէ դէպ ի հարաւ-արեւելք բաւական հեռու գտնուող Βιστ (Isid. v. Charax § 16) քաղաքին մէջ Ինչպէս Պարսուայի Բուզառուզը տեսնել կարծեցին (Լընոր-ման), դարձեալ անգամ մ'ալ կը ցուցընէ թէ ուր կը տանի անուանց նմանահնչութեան վստահիլը:

Որչափ որ ալ Պարսուան եւ Պերսիսը դիւրիք իրարմէ զատելու ենք, սակայն այս երկու անուանց նոյն ըլլալն չի կրնար ուրացուիլ: Պարսուայէն ոչ շատ հեռու դէպ ի հարաւ կը գտնուէր Անզան, Կիւրոսի հայրենիքը, եւ շատ կարելի է որ Կիւրոսի

եւ իւր տոհմակիցներուն նախնիքն ժամանակաւ Պարսուա կը բնակէին եւ անկէ Պարսիկ անունն առած են, որ իրենց կը պատշաճէր ըստ Ս. Գրոց եւ Դասականաց միաբան տեղեկութեանը: Այս կերպով բնականօրէն կրնայ — ենթադրելով Պարսուա եւ Պարսու = Պերսիս անուանց նոյնութիւնը — մեկնուիլ, որ Կիւրոսի առեն հին Պարսուա անունը տրուած էր Ելամի հարաւակողմը գտնուող երկրին: Կիւրոս՝ Իշգումեգուն հպատակեցընելէն եւ Ագամդանու-Եկբատանան նուաճելէն ետքը՝ նախ "Թագաւոր Պարսուի" տիտղոսն առաւ: Դարեհ Ա. ին առենէն սկսեալ՝ ընդհանուր սովորութիւն եղաւ նոյն երկիրը Պարսու անուանել: Պարսուայի եւ Պարսու-Պերսիսի մէջ եղած յարաբերութիւնը Հոմմել (Gesch. էջ 719 եւ 784 եւ Abriss der Gesch. des alten Orients 1887, էջ 84, 89, 93) ալ նման կերպով կը մեկնէ: Նոյն եզրակացութեանց կը հասնի Մարկուարտ՝ ալ իր "Պարսից նախնական հայրենիք" ուսումնասիրութեան մէջ: Ինքը կը կարծէ հին Պարսուան գտած ըլլալ *Πάρσιοι* ցեղին մէջ, որ Կուրի եւ Երասխայ մէջ կը բնակի եւ անոնց դէպ ի հիւսիս ցրուելուն դիմացը կը դնէ Տիբերացւոց (Տաբալ) եւ Մոսկացւոց (Մուշկի)[2] դէպ ի հարաւ ցրուիլը:

Վերջապէս սա ալ մատնանիշ ընենք որ Դելիչ Ափարսաէէ (אֲפָרְסָיֵא հայ. Թարգմ. Ափերսէէ, Բ. Եզր. Դ. 9) անունը տեսած առեն՝ միտքը կը բերէ մեր Պարսուան, եւ ոչ թէ յետնագոյն Պերսիս (Պարսիս) անունը: Կերպապէս ամենեւին դժուարութիւն չկայ այս երկու անուանց նոյն ըլլալուն. Ափարսաէէ անուան՝ ա յաւելուածական տառն ունենալը՝ հանդէպ Պարսուա անուան՝ անսովոր երեւ-

1 Assyriaka S. 642 ff.

2 Պարսուա = *Πάρσιοι* Ստրաբոնի քով XI, էջ 580. Prášek, Beiträge z. med. Gesch. ի Recueil XIX, p. 194.

դյթ չէ։ Բայց ամբողջ այս մեկնութիւնը Նորբերտ տարակուսական հաշակուեցաւ. Հոֆմանի՝ Եղբայ նոյն տեղը գտնուող ամէն անունները — որ մարաքան եւ աարեստանեայ ժողովրդոց անուն կը համարուէին մինչեւ հիմայ — պաշտօնի անուն մեկնելէն ետքը՝ Նորբերտ Անդրէաս (Մարտիի քերականութեան մէջ) אפדסיאն ալ այս մօտք մեկնել ուզեց. կ'առաջարկէ אפדכביא ձեւն եւ այս ձեւն ալ համօզիչ կերպով ספדכוא = շ-ու-դ-ա-ր-շ-կ-եե կ'ուղղէ, որով նմանապէս կ'ունենանք աարեստանեայ արձանագրութիւններէ ծանօթացեալ պաշտօնի անուն մը։

Բ. Ղ-ու-րդ-ա (Ղ-ու-րդ-իր-ա)։ Սաղմանաաար Բ.ի տուրտանը Հառունայէ ճամբայ ելլելով Ղուրդիրա եկաւ եւ երկրին Ար-դ-ու-ա-րէ իշխանէն հարկն առնելէն ետքը Պարսուա իջաւ։ Սարգոն իր Գլանի արձանագրութեանը մէջ կը պատմէ թէ Ադ-ու-յի վրայ դրաւ Աշուրայ լուծը։ Տարեգր. եւն մէջ Ղուրտա՝ Կարալլու եւ Կիշելիմ անուններուն մէջտեղը գրուած է։ Ամենեւին կասկած չկայ Ղուրդա եւ Ղուրդիրա անուանց նոյն ըլլալուն վրայ։ Ղուրդիրա (ր-ա մասնիկով) անուանս հնագոյն ձեւը պիտի ըլլայ։ Այս երկիրն էր Հառունայի եւ Պարսուայի մօտերը, մերձաւորապէս այս երկուքին միջեւը։

Գ. Ղ-ու-շք-ա-ն-ա։ Այս երկիրն Սեաւ Կոթողին մէջ Հառանա եւ Անդիա անուանց մէջը մնած կը ներկայանայ մեզ. ուստի Ուրմիոյ լճին արեւելակողմը կամ հարաւ-արեւելակողմն եւ Անդիայի արեւմտակողմը տեղ մը դնելու ենք։

Դ. Տ-ու-րլ-ա (Տ-ու-լէ-կլ-ա)։ Սամսիրամման այս երկիրը կը յիշէ Նայիրեան երկիրներու մեծ ցանկին մէջ եւ կը դնէ Դինգիրդա եւ Ղանի —?— ալի երկիրներուն միջեւ։ Երկրին նոյն ատեննուան իշխանը կը կոչուէր Բ-ոլղ-ու-փ-ա։ Նոյն թագաւորն երրորդ արշաւանքին ատենը հարկ առաւ Հուբուշկուէ,

Միկտիարայէ, Սունբայէ, Մանէ, Պարսուայէ եւ Ցաւրլայէ։ Այս երկիրներուն մօտերը փնտռելու ենք Ցաւրլան. գիրքն աւելի ճշդել անկարելի է։

Ե. Անդիա (Անդիա)։ Այս անունն մեր դիմացը կ'ելլէ Ասորեստանցւոց թագաւորներէն երեքին արձանագրութեանցը մէջ։ Առաջին անգամ Սաղմանասար Բ. կը յիշէ Անդիան թագաւորութեանը 31դ տարին հարկ տուող երկիրներուն շարքին մէջ եւ այն՝ անմիջապէս Հառանայէ եւ Շաշգանայէ ետքը, Սամսիրամման նուաճեալ երկիրներուն մէկ ցուցակին մէջ կը յիշէ այս երկիրը Պարսուայէ, Ալլաբրիայէ, Աբդադանայէ, Նաիրիյէ ետքն եւ կը յաւելու "որուն գիրքը հեռաւոր է։" Սարգոնի ատեն Անդիայի մէջ կ'իշխէր Տելուսինա անունով իշխան մը։ Ասոր դէմ Ասորեստանի թագաւորը պատերազմի ելաւ. անդիական Տուաիադի գաւառին ութ ամրոցներն առաւ եւ 4200 հոգի գերի տարաւ հանդերձ ստացուածովք։ Ըստ տարեգրութեանց՝ Սարգոնի թագաւորութեանը 7դ տարին կ'իյնայ այս արշաւանքը։ Պարծանաց արձանագրութեան համապատասխան տեղւոյն մէջ՝ Անդիայի դէմ եղած արշաւանքին վրայ տրուած տեղեկութիւնը մուծուած է Մանի դէմ եւ Զիկիրտու եւ Ուիշտիշի դէմ մղուած պատերազմին վրայ տրուած ծանօթութեանց միջեւ։ Մտադրութեան արժանի են եւ հետեւեալ տեղերը. "Ուրարտու, Մուզասիր, Անդիա, Զիկիրտու", "որ Անդիան եւ Զիկիրտէն նուաճեց", եւ վերջապէս "Մաննաի, Անդիա, Զիկիրտու"։

Անդիայի մէկ գաւառը կը կոչուէր Տուաիադի. Տարեգրութեանց համապատասխան տեղը՝ բնագիրն աւրուած ու ջնջուած է։

Անդիա, ինչպէս եւ Մադաի բնակածներուն երկիրը, Ասորեստանցւոց քով ունի "հեռաւոր" վերադիրը. այս երկու երկիրներն ամենէն հեռաւորներն էին՝ ուր մտած են Ասորեստանցիք, առաջինը

նուոր եւ 120 հեծեալ զինուոր ջարդեց պատերազմի մէջ։ Այս իշխանին իշխանանիստը կործանեցաւ։ Նուաճեալ եւ հրոյ մատնեալ մարական քաղաքներուն թիւը 1200 է կ'ըսուի՝ սովորական չափազանցութեամբ։ Հանասիրուկուի երկրէն Ասորեստանցւոց թագաւորը “Քարերու„ լեռներուն վրայէն Արազիաշ անցաւ։

Ռամմանիրարի Գ.ի քով՝ Մադաի հետեւեալ կարգով մեր դիմացը կ'ելլէ՝ Ելլիպի, Հարհար, Արազիաշ, Մեսու, Մադաի, Գիզիլբունդա եւն։ Անուագիր ցուցակէն կը տեսնենք որ այս թագաւորին ատենը (811—783 ն. ք. Ք.) 8 արշաւանք եղած է Մադաիի դէմ. նմանապէս կը յիշուի արշաւանք մը՝ Ասուրդան Գ.ի (772—755) ատեն եղած։

Մադաիացիք Տիգղաթպիղեսեր Գ.ի շատ հոգ ու աշխատութիւն պատճառեցին։ Թագաւորն անձամբ սոնց դէմ երկու անգամ արշաւեց 744 եւ 737 (թագաւորութեանը 2դ եւ 9դ) տարիներուն։ Արձանագրութեանց մէջ երկայն ցուցակներ պահուած կան “մթագոյն Մարաց„ այն գաւառներուն, զորոնք առած է այս թագաւորը։ Այս գործառնութեանց առաջինէն է յայտնապէս այն տեղեկութիւնը, որ կ'ըսէ թէ Ասորեստանցւոց թագաւորը 60.500 հոգի եւ անոնց ստացուածքը, ձիերը, ..., ուղտերը, եզերն եւ ոչխարաց անհամար հօտերն առաւ տարաւ։ Երկրորդ արշաւանքին հետեւութիւնն եղաւ “8650 հոգւոյ, ... [պակաս կամ եղծեալ մաս] ..., 300 ջորւոյ, 660 իշու, 1350 արջառի, 19.000 ոչխարի„ տարուիլը։ Բաց աստի Տիգղաթպիղեսեր Գ.ի Աշուրդանինանի անուն կուսակալին կամ. զօրապետին յանձնուեցաւ յանդուգն արշաւանք մը, որ ուղղուած էր ի մասնաւորի արեւելեան հզօր Մարաց դէմ։ Այս վերջին ձեռնարկութեան ժամանակն ապահով կերպով ճշդել կարելի չէ, վասն զի այս մասին մեր ունեցած

ծանօթութեան աղբիւրը միայն պարծանաց արձանագրութիւնն է։ Հաւանական է որ այս արշաւանքն այն ժամանակ եղած է, երբ Ասորեստանցւոց թագաւորներէն անձամբ կատարուած երկու արշաւանքներէն մին տեղի կ՚ունենար։

Ըստ երեւութին Սարգոն ամենէն աւելի սաստկութեամբ կռուած է Մարաց դէմ՝ որ օր քան զօր կ՚աճէին անդադար նոր եկողներով։ Պարծանաց արձանագրութիւնն եւ Տարեգրութիւնք կ՚աւանդեն բազմաթիւ մարական երկիրներու անուններ. Խորսաբադի արձանագրութեան համեմատ՝ թագաւորն ընդ ամէնը մարական 34 գաւառ նուաճած եւ ստիպած է որ տարեկան որոշ թուով ձի հարկ տան։ Նմանապէս արտաքոյ կարգի ամրութիւններով օգնած է Հարհարի (Կար-Շարրուկին), որ ամենէն կարեւոր կէտն էր Ասորեստանցւոց ազդեցութիւնը կանգուն պահելու։ Մադաիի դէմ մեծ արշաւանք մ՚ալ եղած է թագաւորութեանը 6դ տարին. նոյն ատեն 28 "քաղաքապետք„ հարկատուութիւն մը յանձն առին. նմանապէս յաջորդ տարին 22 մար ցեղապետ իրենց ընծաները խաւրեցին։ Այս դէպքերն կրկնուեցան Սարգոնի թագաւորութեան 8դ եւ 9դ տարիները. վերջին տարին մինչեւ անգամ 42 "քաղաքապետք„ տուին 4609 (?) ձի, ջորի, արջառ եւ անհամար ոչխար։

Սանհերիբ Մարերէն հարկ առաւ, երբ Ելլիպիէն գալով մօտեցաւ։ Ծիծաղելի մեծաբանութիւն է, երբ այս թագաւորը կ՚ըսէ թէ իր նախնիքներն եւ ոչ իսկ "հեռաւոր Մատաիացւոց„ անունը գիտէին։ Մարական այլ եւ այլ ցեղերու միութիւնն պէտք է որ իյնայ Սանհերիբի արշաւանքին եւ Ասարհադդոնի գահ ելլելուն ժամանակամիջոցին մէջ։ Ասոնց առաջնորդն էր Մամիտիարշու — "քաղաքապետ„ Մարաց։ Այս անձը Մաննացւոց, Կիմմերացւոց եւ Սապարդացւոց հետ նիզակակցութիւն մը կազմեց, որուն գլուխն անցաւ

Կաշտարիտ, Կարկաշշիի քաղաքապետը։ Այս նիզակակցութեան ծանր, Ասորեստանցւոց վտանգապառնացող յարձակումներ քաղաքական հիմք կը կազմեն Կույունջուկի բնագիրներուն մէկ շարքին, զորոնք Կնուդսոն „Gebete an den Sonnengott„ խորագրին տակ հրատարակած է։ Նիզակակիցք ի սկզբան յաջողութիւն ունեցան եւ մարական-ասորեստանեայ սահմանին վրայ գտնուող քանի մը տեղեր առին, մինչեւ որ Գիմմերացւոց պարտութիւնն ընդ առաջնորդութեամբ Տեւշպայի (յամին 677)՝ այս նիզակակցութիւնը թուլցուց եւ հաւանցուց դաշնադրութիւն մը Ասորեստանցւոց եւ Մարաց մէջ։ Այս դաշնադրութիւնը կ'ընդունէր մարական նիզակակցութիւնը։ Հաւանականօրէն Մարերը վախցընելու եւ Ասորեստանցւոց դէմ թշնամական անդրագոյն գործառնութիւններէ ետ կեցընելու դիտմամբ՝ Ասարհադդոն Գիմմերացւոց պարտութեան յաջորդել տուաւ աւարառական արշաւանք մը, յորում շօշափեց Պատուշարրա, Պարտակկա, Պարտուկկա եւ Ուրակազաբառնա մարական երկիրները։

Ասուրբանիպալ (Գլան Բ, Դ, 2) կը պատմէ արշաւանք մը, որուն՝ անոր համար ձեռնարկուեցաւ իր թագաւորութեանը 4դ տարին, որպէս զի մէջտեղէն վերցուէին Բիրիզ-Հադրի՝ Մարաց մէկ քաղաքապետը, եւ Շարատի եւ Պարիհիա՝ Գագիի որդիքն ու Սահիի[1] քաղաքապետերը, որ Ասորեստանցւոց

---

1 Սահիի դիրքին նկատմամբ որոշ բան մ'ըսելը առայժմ դժուար է։ Ամենէն հաւանականն այն է որ Ուրարտուի, Մանի կամ Մադաիի մօտերը փնտռելու ենք։ Ասուրբանիպալի ատեն այս երկրին վրայ կ'իշխէին Շարատի եւ Պարիհիա, որ որդիքն էին Գագիի։ Սակէ ըսուածներուն (— Սկիւթացիք) հետ, զորոնք Շմիթ եւ Հոմմել կ'ուզէին նոյնացընել Սահիի հետ, գործ չի կրնար ունենալ Սահի, վասն զի աքամենեան արձանագրութեան բաբելական թարգմանութեանը մէջ Սակաց դիմաց Նամիրի գրուած է։ Գագի

լուծը իրենց վրայէն թօթափած էին։ Ասորեստանցիք անոնց ամուրներէն 75 հատն առին եւ ապստամբութեան երեք գլխաւորները Նինուէ գերի տարին։

Բեւեռագիր արձանագրութիւնք մեզ կը ծանօթացընեն մարական երկիրներու եւ քաղաքներու անուններ մեծ բազմութեամբ։ Մեր ծանօթութիւնները դեռ բաւական չեն այս անուններն ըստ տեղւոյ խումբ խումբ բաժնելու, ուստի պատշաճ կը համարիմ Ասորեստանի մէն մի թագաւորին արձանագրութեանցը մէջ գտնուող ցուցակներուն վրայ կարգաւ խօսիլ. մինչեւ աստիճան մը այս ցուցակներն ալ ազդուած են աշխարհագրական տեսակէտէ՝ անուններն իրարու ետեւ շարած ատեն։

---

անուան համար՝ Դիլլիչի օրինակին հետեւելով՝ Ս. Գրոց Գոգը առին, որ ըստ Եզեկ. ԼԸ. 2 Մագոգի իշխանին անունն է։ Այս իշխանին կը հպատակէին Ռոսս, Մեսոխ, Թոբէլ, Գոմեր, Թորգոմ եւն։ Եզեկիէլ Գոգ կամ Գոգ ըսելով կը հասկընայ հիւսիսային ժողովուրդները։ Մագոգը պէտք ըլլայ Կումմուհի (Կոմմագինէի) հիւսիսային կամ հիւսիս-արեւելեան կողմը։ Պէտք ենք նաեւ նոյն կողմերը գնել էլ-Ամառնայի նամակներուն մէջ յիշուած Գագայա երկիրը։ Մագոգ եւ Գոգ այնպէս մեկնուելու են, ինչպէս մեկնեցինք Մազամուան եւ Զամուան (էջ 133)։ Մագոգը կրնայ մասն Գոգէ ծագած եւ մասն Գագայայի հետ նոյն ըլլալ։ Այս պարագային մէջ Մագոգ իր անունն առած պիտի ըլլայ — ինչպէս ուրիշ բազմաթիւ դէպքերու մէջ տեսանք — տիրող Գոգի հարստութենէն։ Գագ անուան հետ կրնանք համեմատել Գագա աստուածոյն անունն, որ Ենումա-էլիշ վէպին մէջ մեր դիմացը կ՚ելլէ։ Շարատի եւ Պարիհիա կրնան այս տիրող տան շառաւիղներն ըլլալ, որ իրենց նախնական հայրենիքը թողլով՝ փոքրիկ պետութիւն մը հաստատած են արեւելք՝ դէպ ի Ուրարտու կամ Մարաստան։ Շարատիի հետ կը համեմատէ Եուստի (Iran. Namenb. S. 288) Σάρατος անունը, իսկ Սահիրի համար կը կարծէ թէ առնչութիւն մ՚ունենայ Սիւնեաց հայկական Շահէի հետ (Ինճիճ. Աշխ. Հ. Հայ. 533)։

Նախ խօսելու ենք Տիգղաթպիլեսեր Գ.ի Խնեցւոյ արձանագրութեանց մէջ գտնուող՝ մարական երկիրներու մեծ ցուցակին վրայ՝ ամբողջացընելով ուրիշ արձանագրութեանց համապատասխան տեղերովը։ Այս ցուցակը Նամրի երկիրը յիշելէն ետքը՝ կը յիշատակէ Բիթ-Սանգիպուտին։ Տիգղաթպիլեսեր՝ Տարեգիր արձանագրութեան համաձայն՝ Կուտէէ, Բիտ-Սանգիբուտէէ եւ ուրիշ կողմերէ գերիներ գաղթեցուց մասամբ ասորական քաղաքներ (Սիմիրրա, Արկա, Ուսնու, Սիանու), մասամբ Տու'իմմէ եւ Տիլ-կարմէ։ Սարգոնի տարեգրութեանց մէջ Սանգիբուտի կը ներկայանայ Հարհարի եւ Ուրիակկիի միջեւ. Տարեգրութեանց եղծեալ տեղը (113) կը կարդանք. [al?] Aš-ta-ni-a ša Bît-Sangibuti, ապա կը յաջորդէ ալ Տու-...-ի եւ ալ Տու-մա-ալ-կի-...-..., որ քաղաքներն են Գալ... անուն երկրի մը. վերջին երկու քաղաքները թերեւս վերաբերին Ուրարտուի, որուն կը հային յաջորդող տողերը։ Նամակի մը մէջ (K 619) Շունգիբուտու կը հանդիպի Ելլի(պի) եւ Մատայի անուններուն կից։ Բիլլէրբէք (էջ 59, 80) Բիտ-Սանգիբուտին կը դնէ Գերուսի հովիտը՝ Ջերբեր լճին հարաւակողմը. այս երկիրն աւանդ գնելու կարեւոր պատճառ մը չեմ տեսներ։

Բիթ-Համբան։ Այս գաւառին վրայ առաջին անգամ տեղեկութիւն կ'առնունք Նաբուքոդոնոսոր Առաջնոյն Ազատութեան Նամակէն, որով Բիտ-Կարզիաբկուի կուսակալը՝ Ռիտտի-Մարդուկ ազատ կը կացուցուի Նամրիի մէջ գտնուող իր ամէն երկիրներուն համար տուրքէ, ի մասնաւորի ձի՝ հարկ տալէ։ Այս արտօնութիւնը դրով հաստատելու գործողութեան ներկայ էր հին-բաբելական պետութեան ուրիշ մեծամեծացը հետ՝ նաեւ Բէլ-Նադին-շում տէր Համբան, Նամարի կուսակալը։ Դարձեալ նոյն արձանագրութենէն կը տեսնենք որ կուսակալութեան պատիւը շատ անգամ կը տրուէր

Հաբբանեանց ցեղին մէկ անդամին. Թերեւս նոյն ընտանեաց մէջ ժառանգական ալ էր նոյն պաշտօնը։ Մարդուկնադինահէի ժամանակէն մնացած ուրիշ յիշատակարան մ'ալ կը խօսի այն օժիտին վրայ զոր Էն Սին-Նատէր Հաբբանեանը տալ կը խոստանայ իր Դուշ-Շարքինաէրի անուն աղջկանը, որ նշանուած էր Տաքաշաք-Մարդուկի։ Օժիտն էր 20 Էուր անդ՝ Կար-Նաբուի դաշտին մէջ. այս դաշտը սահմանակից էր արեւմտեան կողմը Բաք(? Հա--)-դադա գաւառին, հիւսիսակողմը ու հարաւակողմը՝ Բիտ-Համբանի, արեւելեան կողմը Տա-Նա-Մի-Տաան անուն ընտանեաց կալուածոցը։ Նոյն Թագաւորին տեսնըները՝ սահմանի վերաբերեալ դաշնադրութեան մը մէջ դարձեալ մեր դիմացը կ'ելլէ Բիտ-Համբան. այս ցեղին այնտեղ յիշուած շառաւիղը կը կոչուի Ա-Մել-Իլու Բէլ։

Համբան ընտանիքը հին-բաբելական պետութեան մէջ շատ նշանաւոր դիրք մը կը գրաւէր եւ Բաբելոնի արքունեացը հետ մեծ ներդաշնակութեան մէջ էր. իսկ իր յարաբերութիւններն Ասորեստանի հետ միշտ բարեկամական չէին։ Թէեւ Մարդուկ-շում-ուտամինիի մահուընէն ետքը Սաղմանասար Բ. Հաբբանեանց տունէն Ցանզուն Նամրիի իշխան անուանեց (թագաւորութեանը 16ր տարին), սակայն 8 տարի ետքը (թագաւորութեանը 25ր տարին) ստիպուեցաւ իբր թշնամի անոր երկիրը մտնել, կողոպտել եւ Ցանզուն կուսակիցներովը մէկտեղ գերի տանիլ։ Տիգղաթպիլեսեր Գ. խեցեղէն արձանագրութեան մէջ Բիտ-Համբանը կը դնէ Բիտ-Սանգիբուտիի եւ Սումուրզուի միջեւ, ուրիշ տեղ մը՝ Բիտ-Կապ-սիէ ետքը. Սարգոն կը դնէ մէկ կողմանէ Նամրիի, Էլլիպիի եւ մէկալ կողմանէ Պարսուայի միջեւ, իսկ ուրիշ տեղ մը՝ Հարհարէ ետքը։

Բիտ-Համբանի մէկ քաղաքն էր Կիշէսսու, ուրկէ Սարգոն 2630 հոգի ունեցածներովը մէկտեղ գերի տարաւ։

Հանրի, Հարքան, Համբան ձեւերուն իբր նման օրինակ մատնանիշ կ'ընէ Դելիչ՝ Զարան, Զամբան, Զարբան բաբելական քաղաքի մ'անուան ձեւերը։ Եթէ Համբի սեմական բառ է, կրնայ միայն Հանիքա — պտուղ բառն ըլլալ։

Կրնայ տարակուսուիլ թէ արդեօք Բիտ-Համբան տեղագրօրէն Բաբելոնի՞ ընծայելու ենք թէ Մարաց. բնագրական խորհրդածութիւնք կը ստիպեն այս երկիրն մեծագոյն մասը Բաբելոնի ընծայել։ Բայց Սարգոնեանցիք յայտնապէս այս երկիրը Մարաց երկրին մասը կը համարին։

Բաբելական քաղաքակրթութեան ազդեցութիւնք թափանցած մնած է Բիտ-Համբանի մէջ, վասն զի մարական երկիրներուն մէջէն ամենէն հարաւ-արեւմտեանն էր աս։ Բիտ-Համբան Տիգրիսի արեւելեան կողմն էր. հարաւակողմը մինչեւ Կորնուքու-ի դաները կը հասնէր, որ Մեդան(կալ)-դան ջրանցքին եզերքը բարձրացող քաղաք մըն էր։ Տարակոյս չկայ որ Բիտ-Համբանի կը վերաբերէր այն երկիրն, որ մերձաւորապէս Բակուբա, Խանիկին եւ Մենդելի քաղաքներէն անցնող շրջանակին մէջ կ'իյնայ։ Թէ հիւսիսային արեւելեան կողմը Խանիկինէ անդին մինչեւ ուր կը տարածուէր, կռուան չունինք որոշելու։ Շատ հաւանական է որ Բիտ-Համբանի հիւսիս-արեւելեան մասը եւ Նամրի զիրար կը ծածկէին։ Բիլլէրբէք (անդ, էջ 14, 59) Համբանը կը դնէ Դիեալայի արեւելակողմը՝ հիւսիսէն Հուրինի եւ հարաւէն Զոհաբի մէջ գտնուող տեղը։ Նամրիի՝ Համբան խնամիքէ սերող իշխանին Յանզու տիտղոսը կրելէն Դելիչ կը հետեւցընէ սերտ ազգակցութիւն մ'այս ժողովրդեան եւ Կասեանց։ Ապահովապէս շատ հին ժամանակներէ ի վեր Հարբանեանք Նամրի գաղթած էին. Նմանապէս Տիգրիսի ամբողջ արեւելեան կողմին վրայ ամենամեծ կալուածատէրերն էին անոնք. եւ այս ցեղին՝ Կասեան սերունդ ըլլալուն ամենեւին արգելք մը

այս երկիրն յաջորդ կարգաւ կը յիշէ. Պարսուա, Ալլաբրիա, Արգատանա, Նաիրի: Տիգղ. Տարեգր. 27 կը կենայ Բիտ-Զաատի եւ Բիտ-Սանգի անուններուն մէջտեղը, իսկ Տիգղ. Տարեգր. 35՝ Բիտ-Զաատի եւ Բիտ-Կապսի անուններուն մէջտեղը: Տիգղաթպիղեսեր Գ.ի ատեն հոս Մաննու-կէնմա-ա-բէ (= «ով է որպէս զՍաբէ») անուն իշխանը կ'իշխէր: Այս երկրին կը վերաբերէր Կէփաղափփէա, որուն իշխանն էր Տու-նա-կու: Տիգղաթպիղեսեր Գ. պաշարեց եւ առաւ այս քաղաքը: — Բէթ-Կապսէ՝ որ ըստ Տիգղ. Հարթ կոթ.՝ Պարսուայի եւ Զակրուտիի մէջտեղը կը ներկայանայ, Տիգղ. Տարեգր. 27՝ Բիտ-Սանգիի եւ Բիտ-Տաաակկիի մէջտեղը, իսկ Տարեգր. 37 եւ 157՝ այս յիշեալ երկու նահանգներէն յառաջ: Տիգղաթպիղեսեր Գ. կը յիշէ Բաթփաննու եւ Ուղաշ երկու իշխաններն այս գաւառին, որ իր անունը Կապսի հարստութեան պարտական է: Այս երկու իշխաններէն առաջինն առանց պատերազմի հպատակեցաւ Ասորեստանի թագաւորին, իսկ երկրորդը՝ չարաչար պարտութիւն կրելէ ետքն՝ ականատես եղաւ իր քաղաքներուն կողոպտուելուն ու կործանելուն: Բիտ-Կապսիի համար որոշիչ ճակատը տրուեցաւ Աբէր-ու-ղ լեռը: Այս երկրին քաղաքներէն մին էր Կուրկուրէնանուէր, որ Բաստամանուի ձեռքը մնաց: — Բէթ-Սանգէ՝ արձանագրութեանց մէջ մէյ մը Բիտ-Արգատանայի եւ Բիտ-Կապսիի, մէյ մ'ալ Բիտ-Կապսիի եւ Բիտ-Տաաակկիի մէջտեղը կը բռնէ: -- Բէթ-Տա-(Ուր)-ակկէ՝ միշտ Բիտ-Կապսիի եւ Բիտ-Սանգիի հետ միատեղ կը յիշուի. Տարեգր. 158 կը ներկայանայ Բիտ-Սանգիի եւ Մադաիի միջեւ: — Բէթ-Իշտար՝ բեւեռագրութեանց մէջ մէյ մը Զակրուտիի եւ Նիշայի, մէյ մ'ալ Ումլիաշի եւ Կինդի-կանգէի մէջտեղը արձանագրուած կը տեսնենք: Տիգղաթպիղեսեր ինչպէս մարական ուրիշ երկիրներու մէջ, նմանապէս այստեղ իր անդրին կանգնել տուաւ:

յաջորդէ։ — Գու–չիններանու։— Բիտ–Սաքբաբ։ Սամսիրամման Բ.ի ատեն Սագբիտա, որ յայտնապէս վերջէն Բիտ-Սակբատ ըսուածն է, մարական Հանաբրուկա անուն գաւառակոմսին մայրաքաղաքն էր։ Սարգոն Բիտ-Սակբատը, զոր Սակբատ ալ կ՚անուանէ, միացուց Կիշեշիմի։ Այս երկիրն էր՝ ըստ Խորսաբադայ արձանագրութեան՝ Ելամայ հիւսիսային կողմը. այստեղ՝ Ելամացւոց ասպատակութեանց առջեւն առնելու համար՝ բերդաքաղաք մը կառուցուեցաւ։ Զանազանութիւնը, զոր Բիլլէրբէք (էջ 96) կը դնէ Սակբատ քաղաքի եւ Բիտ-Սակբատի կամ Սագբիտայի մէջ, կը կարծեմ թէ անհրաժեշտ չէ։ Բիտ-Սակբար կը կազմէր Կիշեշիմի հարաւակողմը։ — Սէլէ–ռէ։ Այս երկրին տրուած "Ամուրն Բաբելացւոց„ վերադիրէն կը հետեւի թէ երբեմն կը հնազանդէր Բաբելոնի գահուն։ — Ռու–(ա)։ Ռուսա խեցեղէն արձանագրութեան 32ը կը կարդայ Ru-ú a-di mât bît tabti = "Ռու մինչեւ ցերկիրն անապատի աղի„։ Ռուսաի այս ընթերցումն արձանագրութեանց ուրիշ տեղերովը կը հաստատուի։ Հարթ Կթղ.ի մէջ Ռուայէ յառաջ կայ Տարշարբինի-ՀՈՒ անունը։ Ռու(ա) թէ երկրի թէ լեռան անուն է։ — Ո–շկ–կկ–նու։ Հրթ. Կթղ.ի մէջ այս անուան կը յաջորդեն Շիկրակի եւ Տել-Ա[շուրի] անունները։ — Շէկր–կէ անուան յիշուելովը կը լմնայ խեցեղէն արձանագրութեան մեծ ցուցակը։ Այս երկրին տրուած "շա հուրասի„ տիտղոսէն կը տեսնուի, որ ոսկւոյ երակներով օժտեալ երկիր մըն էր։ Տարակոյս չկայ որ նոյն են Շիկրակի եւ Տիկրակկի, որ խեցեղէն արձանագրութեան մէջ Զակրուտիէ ետքն յառաջ կը բերուի իբր քաղաք մը, որուն մէջ Ասորեստանցւոց թագաւորը իր արձանը կանգնեց։ Խորսաբադի մէկ բարձրաքանդակը փոքրիկ ամուր քաղաք մը կը ներկայացրնէ, որ ապահովապէս Տիկրակկի կամ Շիկրակկի կարդացուելու է լրացուելի գրերով։ Խորշի մը մէջ կը տես-

նենք Թադաւորի մ՚անդրին, բոլորովին տարբերտաներոյ արձաններուն կամ սիւներուն ձեւովն ու ըմբռնմամբը։ Կը կարծեմ թէ ամենեւին պատճառ մը չկայ Շիկրակի եւ Սիկրիս նոյնացընելու, ինչպէս Բիւլերբէք կ՚ընէ (էջ 100)։

Թէ այս ցուցակին մէջ յիշեալ երկիրներուն յաջորդութիւնը կամ կարգը աշխարհագրական սկզբունքէ մ՚առաջնորդուելով եղած է, անանկ խնդիր մըն է, զոր պէտք ենք անպատասխանի թողուլ, վասն զի մինչեւ հիմայ միայն քանի մ՚անուններ կարելի եղած է ապահով կերպով նոյնացընել։ Բայց կան նշաններ, որ ենթադրել կու տան, թէ ցանկին մէջ յիշուած երկրանուններն ընդհանրապէս հարաւէն դէպի հիւսիս կամ հիւսիսային արեւելք ուղղութեամբ են։ Յիշեալ երկիրներէն ոմանց վրայ կ՚ուզեմ քանի մի խօսք աւելցընել։ Լընորմանի Աբդադանան Կապպէց Թոմու հարաւ-արեւելեան կողմը դանուող Աբդադանը համարեցաւ. ես կը կարծեմ թէ այս հաւասարութիւնն ամենեւին արժէք չունի, վասն զի Աբդադանա բոլորովին տարբեր յարաբերութեամբ կը ներկայանայ մեզ՝ ըլլալով միանգամայն Նաիրեան երկիր (տես էջ 9)՝ առանց նկատողութեան առնլու որ անուանց ձայնական նմանութիւնն ալ գրեթէ ոչինչ է։ Արդէն Շրադէր Լընորմանի դէմ ելած է, իսկ Ռոստ զարմանալի կերպով մը գաղղիացի գիտնականին առաջարկութեան համակրանք կը ցուցընէ։ — Կը կարծեմ թէ Գիզին(ի)կիսսին ապահով կերպով գտած ենք՝ Γάζακαյի (Պտղոմ. Զ, 2. Ամմիանոս ԻԳ, 6, 39) մէջ, որ Ստրաբոնի (ԺԱ, էջ 523) եւ Պլինիոսի (Nat. Hist. VI. 16) քով Γάζα ձեւն ունի։ Բիւզանդացիք տարբերանեայ անուան աւելի մօտ Κάνζακα եւ Κάνζακον ձեւերը կ՚աւանդեն. տարակոյս չկայ որ -իսսի մասնիկ մըն է՝ համապատասխան սովորական -ισσα, -υσσα, -ωσσα մասնիկներուն։ Գազակա կամ Գանզակա կը յիշուի Պտղոմէոսի, Մ. Անտոնինոսի, Տրա-

յիանոսի եւ Պ. Վեռոնի արշաւանքներուն մէջ, ինչպէս նաեւ Է. դարուն՝ Հերակլի առեն իբր մայրաքաղաք Ատրպատականի։ Հայերէն՝ Գանձակ։ Եաքուտի (Դ. 354, 10) քով՝ گزنا (կազնա) իբր հին անուն՝ իր առեն جيس (Ջիս) անուանեալ քաղաքին։ Տալմուդի մէջ հաւանօրէն גינזק։ — Կրնայ թերեւս Նիշշա յարաբերութեան մէջ դրուիլ Դասականաց Νησαῖον πεδίονին (Նիսեան դաշտ)՝ ձիաբուծութեան յատկացեալ դաշտին հետ, զոր «դիրքին նկատմամբ բազմապատիկ կերպով իրարմէ խոտորող վկայութեանց լաւագոյններ կը զետեղեն Եկբատանայի եւ Կասպեան Դրանց միջեւ[1]»։ Բայց եթէ Նիսեան դաշտը աւելի դէպ ի հիւսիս-արեւելք քշուի, այն ատեն՝ անոր արձանագրութեանց Նիշշային հետ նոյն ըլլալը բոլորովին անհաւանական կը դառնայ։ Բեհիստունի արձանագրութեան մէջ կայ Նիսաեա, եւ ասոր բաբելական թարգմանութեան մէջ՝ համապատասխան տեղը՝ Ni-is-sa--ai ša ina Madai.

Մէկալ ամէն գաւառներուն դիրքին վրայ կարելի չէ՝ մեր ձեռքն եղած նիւթով՝ ապահով բան մ'ըսել։ Այսու հանդերձ Լընորմանի արդէն 1870ին մեծ սրամտութեամբ մեկնութիւն մը դրած է Տիգղաթպիլեսեր Գ.ի երկրանուններուն ցուցակին վրայ, յորում՝ հին ու նոր անուններուն մերձաւոր կամ հեռաւոր նմանահնչութիւնը չարաչար գործածելով՝ այս ամէն երկիրները զետեղած է՝ հասցընելով արշաւանք մը մինչեւ Ինդոս։ Չ'արժեր Լընորմանի այս մեկնութեամբը զբաղիլ, որ շատ ծաւալած է՝ Մասպերոյի ընդարձակ Պատմութեանն եւ՝ եղանակաւորմամբ՝ Դունքէրի գործոյն մէջ մտած ըլլալով։ Դըլատր եղաւ առաջինն, որ Լընորմանի մեկնութիւնները տարրալուծեց եւ մերժեց իբր բոլորովին վրիպեալ եւ ոչ-քննական գործ մը։

[1] Kiepert, Geogr. S. 69.

Լընորմանի ամէն նոյնացուցմանց մէջէն մտադրութեան արժանի է միայն Նիշշայի վրայ բանածը։ Դունքէր եւ Շպիգէլ՝ Արախոտու = Հին Արաքոսիա հաւասարութիւնը փրկել եւ Ասորեստանցւոց թագաւորին արշաւանքն՝ մինչեւ այս վերջին երկիրը հասած համարիլ ուզեցին։ Թէեւ ըստ ինքեան շատ կասկածելի է որ Ասորեստանցւոց բանակն մինչեւ այսպիսի հեռաւոր երկիր մը յառաջացած ըլլայ, սակայն այսպիսի ենթադրութիւն մ'ամէն հիմ կը կորսնցընէ, եթէ մտածելու ըլլանք որ Բեհիստունի արձանագրութեան սեմական թարգմանութիւնը հին-պարսկական Հարաւվատի-Արաքոսիան կը բացատրէ կամ կը թարգմանէ Ա-րու-ու-հա-ազ-զի-ով. ասով սակայն անկարելի չ'ըլլար զուտ կերպական նոյնութիւնն Արախոտու եւ Ἀραχωσία, Ἀραχωτός անուններուն։

Լընորմանէ ի վեր Տիգղաթպիլեսեր Գ.ի երկրանուանց մեծ ցուցակն եւ մէկալ արձանագրութեանց համապատասխան տեղերն ոչ ոք ընդարձակօրէն մեկնած է, բաց ի Բիլլէրբէքէ (էջ 42—92), եւ ստիպուած եմ՝ նոյն մասը կրկին ու կրկին քննութենէ անցընելէ ետքն՝ ըսել թէ Բիլլէրբէքի ստացած արդիւնքներն ալ՝ նման Լընորմանի հետազօտութեան՝ չեն կրնար գոհացուցիչ համարուիլ։ Խնդրոյ նիւթ եղող այս երկիրներուն դիրքն որոշելու համար՝ կռուանք այն աստիճանի քիչ եւ առաձգական են որ հազիւ կարելի է մէկ երկուքին դիրքն յարաբերական ապահովութեամբ ճշդել, ուստի աստ եւ այժմ պատշաճ կը համարիմ՝ մինչեւ որ անդրագոյն նիւթեր մէջտեղ ելլեն, ենթադրութիւններ չընել, եւ չեմ կրնար ըսել թէ ո՛ր եւ է յառաջադիմութիւն է Բիլլէրբէքի ենթադրութեանց կոյտը — այսպէս կ'որակեմ Բիլլէրբէքի մեկնութիւնները։ Թղթէ շինուած տան մը պէս կը կործանի այս շէնքը — հմմտ. առ այս Բիլլէրբէքի ուրուագիծը —, եթէ յառաջադիրներուն

տոկունութիւնը կամ տարողականութիւնը քննութեան ենթարկենք։ Տեղւոյ անձկութիւնը թոյլ չէր տար որ մանրամասնութեանց մէջ մտնեմ, ուստի քանի մը կէտ միայն քննութեան կ'առնում։ Արձանագրութիւնք (Տարեգրութիւնք) իրաւունքի երեւոյթն մը կու տա՞ն՝ Հարաւային բաժնի մը եւ Հիւսիսային բաժնի մը գործառնութեանց վրայ խօսելու։ Տեղւոյ անուան մը ցանկի մը մէջ գտնուելէն եւ ուրիշ ցուցակի մը մէջ չգտնուելէն հանուած եզրակացութիւնք շատ երկբայական են եւ պէտք է որ զմեզ մոլորցընեն, նա մանաւանդ այն ատեն՝ երբ արձանագրութիւնը պարծանաց արձանագրութիւն է. այս տեսակէտէ դատելու է Թիլլէրբէքի (էջ 79) Բիտ-Զամանի եւ Բիտ-Աբդադանիի, նոյնպէս (էջ 83) Սակսուկնիի վրայ բանծը։ Այնպիսի կերպով մը Թիլլէրբէք նոր անուանց խաբուսիկ նմանահնչութենէն հիններուն կը հասնի, որ ներեալին սահմանէն շատ անդին անցած է (վ. օ. Բիտ-Տասաակկի — Սակկիս, Սակսուկնի — Ուկնու գետ)։ Ինչո՞ւ Զակրուտի անունով Մարաց մեծ ժողովատեղիներէն մին պիտի հասկընանք։ Արդեօք այս անուան սեմական ստուգաբանութեա՞նը վրայ հիմնեալ։ Չեմ ուզեր շարունակել. բաւական է ըսելն թէ Թիլլէրբէք ոտքին տակ հաստատուն հող չունի, ուստի իր ստացած արդիւնքներէն արտաքոյ կարգի զգուշութեամբ օգտուելու է։

Յաջորդ տողերուն մէջ յառաջ կը բերեմ Տիգղաթպիղեսեր Գ.ի արձանագրութիւններէն տեղւոյ անանկ անուններ, որ տեղ գտած չէին այն ցուցակներուն մէջ, որոնցմով զբաղեցանք։ Ասոնք են. Ո—չէէննա, որ կեցած է Սիբուր եւ Նիպարիա անուանց միջեւ։ Ռոստ այս քաղաքը կը նոյնացընէ՝ Եկբատանայի մօտերը գտնուող Βαρήνηին (կտես.՝ առ Ստ. Բիւզ.) հետ եւ այս երկուքն ալ՝ Վարենա անուն տեղւոյն հետ՝ Էլբրուսի շղթային հիւսիսակողմն այսօրուան Սարիի մօտ։ Կը կարծեմ թէ չա-

անմիջնորդաբար կը յիշուի Ուր(Տաշ)շանիխա քաղաքը։ Հաւանականօրէն սոյն տեղն է Մէտանիի. սոր կը հպատակէր նաեւ Կէռէդաղ։ Այս երկու տեղերն ալ Տիգղաթպիլեսեր Գ. առաւ։ Բնագրին մէջ՝ անկէ ետքը ապէլ Կադոնիի մը վրայ կը խօսուի։ Վերջէն կու գայ Երէնզիաշա, քաղաք մը, որ սպառնացած էր Կիշէրի Բէլէհապէր անուն իշխանէն։ Քանի որ Երիզիանշու = Արանզիշու (տե՛ս վարը) է, ուստի Կիզիր պիտի ըլլայ անոր մօտերը։ Մեր արձանագրութեան մէջ կը հանդիպինք նաեւ Արազի[աշ], Սումուրզու եւ Բիտ-Համբան անուններուն, որոնց կը յաջորդէ Կիշտադէ։ Ասկէ ետքն եկող թերատ մասին մէջ էր անունն այն երկրին, որուն կը վերաբերէր Կազաւտի։ Բնագիրը կը շարունակուի Բիտ-Աբդադանա եւ Հալղի անունները նշանակելով. վերջնոյն վրայ կ՚իշխէր Մէնի։ Ծանօթ է որ Կումմուհի վերաբերող գաւառ մ՚ալ Հալպի կը կոչուէր։ Հալպիէն ետքը կը կարդանք Ուշականա..., եւ վերջապէս Արիարմա, Տարշարրանի-ՀՈՒ։

Անդրադոյն մարական անուններ կը մատակարարէ մեզ Տիգղ. Տարեգր. 158—159։ Հոս Բիտ-Մատտի, Ումլիաշ եւ Բիտ-Իշտար անուններէն ետքն անմիջնորդաբար կը նշանակուին՝ Կինգինանգի։ — Կինդիգիգիատա։ — Կինգի-ալկասիշ. — Կուբաշհատիդի։ — Ուպաշա (Համբաշա)։ — Ահնդենա։ — Գիրգիրա։ — Կինահբաշհատի։ Ասորեստանցւոց թագաւորն ըստ սովորականին այս ամէն տեղերը կողոպտեց եւ կործանեց։ Արձանագրութիւնը՝ Բիտ-Կապսիի դէմ մղուած պատերազմի մը վրայ համառօտ տեղեկութիւն մը տալէ ետքը՝ կը յիշէ Տադիրրատա քաղաքը, որուն վրայ կ՚իշխէր Ուշրա անուն անձ մը։ Ասոր կը յաջորդէ Նիրատակտա մայրաքաղաք Բուրբադա իշխանին, որ Ասորեստանցւոց թագաւորին դէմ դրաւ եւ կարճ պատերազմէ մ՚ետքը գերի ինկաւ։

չկայ. բայց տառական թարգմանութիւն մ'ընելու համար Ցանզու տիտղոսը չի կրնար ապացոյց ըլլալ: Նամիրիի գահը նստող իշխանը — ըլլայ ծագմամբ ասորեստանցի-բաբելացի, մար կամ կասսեան — երկրին սովորութեան հետեւելով Ցանզու տիտղոսն առաւ՝ ճիշդ այնպէս, ինչպէս Նեղոսի հովտին վրայ իշխողը Փարաւոն կը կոչուէր: Ցանզու իբր իշխանական տիտղոս Հուբուշկիոյ մէջ ալ կը գործածուէր: Պրաշէկի առաջարկած Համբան = հին պրս. Կամպադա = կամբադենէ հաւասարութենէն աելլիլ լաւ կը համարիմ՝ ձայնական տեսակէտէ Ամբանդա = Կամպադա = կամբադենէ հաւասարութիւնը:

Ցուցակին մէջ կը յաջորդէ Սաճարշա (Սաճարշա): Այս անունն Տիգլ. Հարթ կոթողին եւ Խեցեայ արձանագրութեան մէջ կեցած է Բիտ-Համբան եւ Բիտ-Բարրուա անուններուն մէջտեղը, իսկ Տարեգր. 47՝ Բիտ-Համբանէ յառաջ: Այս երկրին իշխանը, զոր Տիգլաթպիլեսեր Գ. նուաճեց, Տունի կը կոչուի: — Բէթ-Բուրրուա տես վարը Էլլիպի անուան տակ: — Բէթ-Զուալզաշ, որ Հարթ կոթողին մէջ Բիտ-Բարրուա եւ Բիտ-Մատտի անուններուն մէջտեղը զետեղուած է, իսկ Տարեգր. մէջ՝ Մադաի եւ Բիտ-Մատտի անուններուն մէջտեղը: — Բէթ-Մատտի: Այս երկիրն ամէն արձանագրութեանց մէջ՝ Բիտ-Զուալզաշի եւ Ումլիաշի մէջտեղը դրուած է: — Նիկկու բաբելական Ումլիաշ նահանգին վերաբերող քաղաք մը կը ներկայանայ: Տիգլ. Տարեգր. 176 Տիլ-Աշուրիէ առջը դրուած է: — Բէթ-Տարանզայ՝ ամէն տեղ Ումլիաշի եւ Պարսուայի միջեւը զետեղուած է:

Պարսուայի յիշուելէն վերջը կը յաջորդէ Բէթ-Զատտի՝ Տարեգր. 27՝ Բիտ-Աբդադանիէ յառաջ, Տարեգր. 34՝ Ուսհարիէ վերջը դրուած: Երկրին իշխանն էր Կակի: Տարեգրութեանց մէջ յիշուած Ուսհարէն հաւանօրէն Բիտ-Զատտիի կը վերաբերէր: — Բէթ-Աբդադանա: Սալմանասարի Ա.

այս երկիրն յաջորդ կարգաւ կը յիշէ. Պարսուա, Ալլաբրիա, Աբդադանա, Նաիրի: Տիգղ. Տարեգր. 27 կը կենայ Բիտ-Զատտի եւ Բիտ-Սանգի անուններուն մէջտեղը, իսկ Տիգղ. Տարեգր. 35՝ Բիտ-Զատտի եւ Բիտ-Կապսի անուններուն մէջտեղը: Տիգղաթպիղեսեր Գ.ի ատեն Հոս Մաննու-կիմա-ա-բէ (= «ո՛վ է որպէս զՍաբէ») անուն իշխանը կ՚իշխէր: Այս երկրին կը վերաբերէր Կէդդուդդին, որուն իշխանն էր Տունակու: Տիգղաթպիղեսեր Գ. պաշարեց եւ առաւ այս քաղաքը: — Բէթ-Կապսի՝ որ ըստ Տիգղ. Հարթ կոթ.՝ Պարսուայի եւ Զակրուտիի մէջտեղը կը ներկայանայ, Տիգղ. Տարեգր. 27՝ Բիտ-Սանգիի եւ Բիտ-Տասակկիի մէջտեղը, իսկ Տարեգր. 37 եւ 157՝ այս յիշեալ երկու նահանգներէն յառաջ: Տիգղաթպիղեսեր Գ. կը յիշէ Բատտաննու եւ Ուպաշ երկու իշխաններն այս գաւառին, որ իր անունը Կապսի Հարստութեան պարտական է: Այս երկու իշխաններէն առաջինն առանց պատերազմի Հպատակեցաւ Ասորեստանի թագաւորին, իսկ երկրորդը՝ չարաչար պարտութիւն կրելէ ետքն՝ ականատես եղաւ իր քաղաքներուն կողոպտուելուն ու կործանելուն: Բիտ-Կապսիի Համար որոշիչ ճակատը տրուեցաւ Աբէրուղ լեռը: Այս երկրին քաղաքներէն մին էր Կուրչուբէհանդէր, որ Բատտանուի ձեռքը մնաց: — Բէթ-Սանգի՝ արձանագրութեանց մէջ մէյ մը Բիտ-Աբդադանայի եւ Բիտ-Կապսիի, մէյ մ՚ալ Բիտ-Կապսիի եւ Բիտ-Տասակկիի մէջտեղը կը բռնէ: — Բէթ-Տա(Ուր)-ալլէ՝ միշտ Բիտ-Կապսիի եւ Բիտ-Սանգիի Հետ միատեղ կը յիշուի. Տարեգր. 158 կը ներկայանայ Բիտ-Սանգիի եւ Մադաիի մէջեւ: — Բէթ-Իշտար՝ բեւեռագրութեանց մէջ մէյ մը Զակրուտիի եւ Նիշայի, մէյ մ՚ալ Ումլիաշի եւ Կինդի-կանդէի մէջտեղը արձանագրուած կը տեսնենք: Տիգղաթպիղեսեր ինչպէս մարական ուրիշ երկիրներու մէջ, նմանապէս այստեղ իր անդրին կանգնել տուաւ:

Տարեգրութիւնք՝ ասկէ քիչ մը խոտորելով կը պատմեն թէ Թագաւորն այնտեղ իր "սուր Նիզակը" կանգնեց ու անոր վրայ արձանագրել տուաւ իր քաջագործութիւնները։ — Զակրուտէ։ Արձանագրութիւնք կը զետեղեն այս անունը մէջ մը Բիտ-Կապսիէ յառաջ, մէջ մ'ալ՝ Բիտ-Կապսի եւ Բիտ-Իշտար անուններուն մէջտեղը։ Զակրուտի մասնաւոր կերպով "քաղաք Մարաց" կը կոչուի։ — Գէզէնէկէսսէ՝ յիշուած Նիշշայի եւ Սիպուրի միջեւ։ — Նէշշա՝ արձանագրութեան մէջ գրուած է Բիտ-Իշտար եւ Գիզինկիսսի անուններուն մէջտեղը։ — Սէբ(դ)ուր՝ գրուած Գիզինկիսսի եւ Ուրիեննայի միջեւ։ Տիգղաթպիղեսեր Գ.՝ Սիբուրն ու անոր շրջակայքը գտնուող տեղերը կողոպտեց եւ աւերեց։ Ռոստ (Unters. S. 82)՝ Սարգ. Տարեգր. 8 եւ Գլան 14 կ'ուղղէ եւ կը թարգմանէ "Հաշմարէ մինչեւ Սիբար, որ ի սահմանս Հեռաւորն Մարաց" եւ այս Սիբարը մեր Սիբուրին հետ յարաբերութեան մէջ կը դնէ։ Սիբուր=Սիբարի գիրքին համար վերոյիշեալ տեղեկութիւնէն սա կը հետեւի որ այս երկիրն Հաշմարէ բաւականհեռու էր՝ դէպի արեւելք։ Արդեօք Գիզիլբունդայի Սիբարանաւ կրնա՞նք նոյնացընել Սիբուր = Սիբարի հետ։ — Ուրէմշան։ — Ռա՛ուսսան։ — Նէգարէա՝ արձանագրութեան մէջ գրուած Ուրիեննա եւ Բուզտուզ անուններուն մէջտեղը։

Խեցեղէն արձանագրութեան ցուցակին մէջ կը յաջորդէ Բուզդուզ, որուն վրայ տես էջ 176։ Վերջէն կու գայ Արէարմէ՝ Բուզդուզ եւ Տարշարրանի-ՀՈՒ անուններուն մէջտեղը գրուած։ Ասորեստանեաց թագաւորն ինչպէս հոս, նոյնպէս եւ անմիջնորդաբար յաջորդող Տարշարրանի-ՀՈՒ գաւառին մէջ իր արձանը կանգնեց։ — Տարշարրանէ-ՀՈՒ՝ կեցած Արիարմա եւ Ռու(ա) անուններուն մէջ։ — Սանասակնէ՝ գրուած Տարշարրանի-ՀՈՒ անունէն ետքը։ — Արաէսսատտա։ — Կար-Զէբրա։ Տարեգրութեանց մէջ փոքրիկ բացէ մ'ետքը Ռու(ա) անունը կը

յաջորդէ։ — Գու-չիննանա։ — Բիթ-Ակիտու։ Սամսի-րամմանն Բ.ի առեն Սագբիտու, որ յայտնապէս վերջէն Բիտ-Ակիտու ըսուածն է, մարտկան Հանասիրուկա անուն գաւառակոմսին մայրաքաղաքն էր։ Սարգոն Բիտ-Ակիտուն, զոր Ակիտու ալ կ'անուանէ, միացուց Կիշեշիմի։ Այս երկիրն էր՝ ըստ Խորսաբադայ արձանագրութեան՝ Ելամայ հիւսիսային կողմը. այստեղ՝ Ելամացւոց ապստամբութեանց առջեւն առնելու համար՝ բերդաքաղաք մը կառուցուեցաւ։ Զանազանութիւնը, զոր Բիլլէրբէք (էջ 96) կը դնէ Ակիտու քաղաքի եւ Բիտ-Ակիտուի կամ Սագբիտայի մէջ, կը կարծեմ թէ անհրաժեշտ չէ։ Բիտ-Ակիտար կը կազմէր Կիշեշիմի հարաւակողմը։ — Սէլհող։ Այս երկրին տրուած "Ամուրն Բաբելացւոց" վերադիրէն կը հետեւի թէ երբեմն կը հնազանդէր Բաբելոնի գահուն։ — Ռու-(ա)։ Ռուսա խեցեղէն արձանագրութեան 32ը կը կարդայ Ru-ú a-di mât bît tabti = "Ռու մինչեւ ցերկիրն անապատի աղի"։ Ռուսաի այս ընթերցումն արձանագրութեանց ուրիշ տեղերովը կը հաստատուի։ Հարթ Կթղ.ի մէջ Ռուայէ յառաջ կայ Տարշարբինի-ՀՈՒ անունը։ Ռու(ա) թէ երկրի թէ լեռան անուն է։ — Ուշկիկկանա։ Հրթ. Կթղ.ի մէջ այս անուան կը յաջորդեն Շիկրակի եւ Տել-Ա[շուրի] անունները։ — Շիկրակի անուան յիշուելովը կը լմննայ խեցեղէն արձանագրութեան մեծ ցուցակը։ Այս երկրին տրուած "շա հուրսանի" տիտղոսէն կը տեսնուի, որ ոսկւոյ երակներով օժտեալ երկիր մըն էր։ Տարակոյս չկայ որ նոյն են Շիկրակի եւ Տիկրակկի, որ խեցեղէն արձանագրութեան մէջ Զակրուտիէ եւքն յառաջ կը բերուի իբր քաղաք մը, ուրուն մէջ Ասորեստանցւոց թագաւորը իր արձանը կանգնեց։ Խորսաբադի մէկ բարձրաքանդակը փոքրիկ ամուր քաղաք մը կը ներկայացընէ, որ ապահովապէս Տիկրակկի կամ Շիկրակկի կարդացուելու է լրացուելի գրերով։ Խորշի մը մէջ կը տես-

նենք Թագաւորի մ'անդրին, բոլորովին ասորես-տանեայ արձաններուն կամ սիւներուն ձեւովն ու ըմբռնմամբը։ Կը կարծեմ թէ ամենեւին պատճառ մը չկայ Շիկրակի եւ Սիկրիս նոյնացընելու, ինչպէս Բիլլէրբէք կ'ընէ (էջ 100)։

Թէ այս ցուցակին մէջ յիշեալ երկիրներուն յաջորդութիւնը կամ կարգը աշխարհագրական սկզբունքէ մ'ազդուելով եղած է, անանկ խնդիր մըն է, զոր պէտք ենք անպատասխանի թողուլ, վասն զի մինչեւ հիմայ միայն քանի մ'անուններ կարելի եղած է ապահով կերպով նոյնացընել։ Բայց կան նշաններ, որ ենթադրել կու տան, թէ ցանկին մէջ յիշուած երկրանուններն ընդհանրապէս հարաւէն դէպ ի հիւսիս կամ հիւսիսային արեւելք ուղղութեամբ են։ Յիշեալ երկիրներէն ոմանց վրայ կ'ուզեմ քանի մի խօսք աւելցընել։ Լընորման Արդադանան Կասպից ծովու հարաւ-արեւելեան կողմը գտնուող Աբադանը համարեցաւ. ես կը կարծեմ թէ այս հաւասարութիւնն ամենեւին արժէք չունի, վասն զի Արդադանա բոլորովին տարբեր յարաբերութեամբ կը ներկայանայ մեզ՝ ըլլալով միանգամայն Նաիրեան երկիր (տես էջ 9)՝ առանց նկատողութեան առնլու որ անուանց ձայնական նմանութիւնն ալ գրեթէ ոչինչ է։ Արդէն Շրադէր Լընորմանի դէմ ելած է., իսկ Ռոստ զարմանալի կերպով մը գաղղիացի գիտնականին առաջարկութեան համակրանք կը ցուցընէ։ — Կը կարծեմ թէ Գիզին(ի)կիսսին ապահով կերպով գտած ենք՝ Γάζακαյի (Պտղոմ. Զ, 2. Ամմիանոս ԻԳ, 6, 39) մէջ, որ Ստրաբոնի (ԺԱ, էջ 523) եւ Պլինիոսի (Nat. Hist. VI. 16) քով Γάζα ձեւն ունի։ Բիւզանդացիք ասորեստանեայ անուան աւելի մօտ Κάνζακα եւ Κάνζακον ձեւերը կ'աւանդեն. տարակոյս չկայ որ -իսի մասնիկ մըն է՝ համապատասխան սովորական -ισσα, -υσσα, -ωσσα մասնիկներուն։ Գազակա կամ Գանձակա կը յիշուի Պոմպէոսի, Մ. Անտոնիոսի, Տրա-

յիշատակի եւ Դ. Վեռոնի արշաւանքներուն մէջ, ինչպէս նաեւ Է. դարուն՝ Հերակլի ատեն իբր մայրաքաղաք Ատրպատականի: Հայերէն՝ Գանձակ: Եաքուտի (Գ. 354, 10) քով՝ گزنا (Կազնա) իբր հին անուն՝ իր ատեն جيس (Ջիս) անուանեալ քաղաքին: Տալմուդի մէջ հաւանօրէն גינזק: — Կրնայ թերեւս Նիշշա յարաբերութեան մէջ դրուիլ Դասականաց Νησαῖον πεδίονին (Նիսեան դաշտ)՝ ձիաբուծութեան յատկացեալ դաշտին հետ, զոր «գիրքին նկատմամբ բազմապատիկ կերպով իրարմէ խոտորող վկայութեանց լաւագոյնները կը զետեղեն Եկբատանայի եւ Կասպեան Դրանց միջեւ[1]»: Բայց եթէ Նիսեան դաշտը աւելի դէպ ի հիւսիս-արեւելք քշուի, այն ատեն՝ անոր արձանագրութեանց Նիշշային հետ նոյն ըլլալը բոլորովին անհաւանական կը դառնայ: Բեհիստունի արձանագրութեան մէջ կայ Նիսաեա, եւ ասոր բաբելական թարգմանութեան մէջ՝ համապատասխան տեղը՝ Ni-is-sa--ai ša ina Madai.

Մէկալ ամէն գաւառներուն գիրքին վրայ կարելի չէ՝ մեր ձեռքն եղած նիւթով՝ ապահով բան մ՚ըսել: Այսու հանդերձ Լընորման արդէն 1870ին մեծ սրամտութեամբ մեկնութիւն մը գրած է Տիգղաթպիղեսեր Գ.ի երկրանուններուն ցուցակին վրայ, յորում՝ հին ու նոր անուններուն մերձաւոր կամ հեռաւոր նմանահնչութիւնը չարաչար գործածելով՝ այս ամէն երկիրները զետեղած է՝ հասցընելով արշաւանք մը մինչեւ Ինդոս: Չ՚արժեր Լընորմանի այս մեկնութեամբը զբաղիլ, որ շատ ծաւալած է՝ Մասպերոյի ընդարձակ Պատմութեան եւ՝ եղանակաւորմամբ՝ Դունքէրի գործոյն մէջ մտած ըլլալով: Դըլատր եղաւ առաջինն, որ Լընորմանի մեկնութիւնները տարրալուծեց եւ մերժեց իբր բոլորովին վրիպեալ եւ ոչ-քննական գործ մը:

[1] Kiepert, Geogr. S. 69.

Լենորմանի ամէն նոյնացուցմանց մէջէն մտադրութեան արժանի է միայն Նիշշայի վրայ ըրածը։ Դուանքեր եւ Շրագեր՝ Արախուտաու = Հին Արաքոսիա հաւասարութիւնը փրկել եւ Ասորեստանցւոց թագաւորին արշաւանքն՝ մինչեւ այս վերջին երկիրը հասած համարիլ ուզեցին։ Թէեւ ըստ ինքեան շատ կասկածելի է որ Ասորեստանցւոց բանակն մինչեւ այսպիսի հեռաւոր երկիր մը յառաջացած ըլլայ, սակայն այսպիսի ենթադրութիւն մ'ամէն հիմ կը կորսնցընէ, եթէ մտածելու ըլլանք որ Բեհիստունի արձանագրութեան սեմական թարգմանութիւնը հին-պարսկական Հարաուվաթի-Արաքոսիան կը բացատրէ կամ կը թարգմանէ Ա-ռու-ու-խա-ա-տ-թի-ով. առով սակայն անկարելի չ'ըլլար զուտ կերպական նոյնութիւնն Արախուտաու եւ Ἀραχωσία, Ἀραχωτός անուններուն։

Լենորմանէ ի վեր Տիգղաթպիլեսեր Գ.ի երկրանուանց մեծ ցուցակին եւ մէկալ արձանագրութեանց համապատասխան տեղերն ոչ ոք ընդարձակօրէն մեկնած է, բաց ի Բիլլէրբէքէ (էջ 42—92), եւ ստիպուած եմ՝ նոյն մասը կրկին ու կրկին քննութենէ անցընելէ ետքն՝ ըսել թէ Բիլլէրբէքի ստացած արդիւնքներն ալ՝ նման Լենորմանի հետազօտութեան՝ չեն կրնար գոհացուցիչ համարուիլ։ Խնդրոյ նիւթ եղող այս երկիրներուն դիրքն որոշելու համար՝ կռուանք այն աստիճանի քիչ եւ տարաձգական են որ հազիւ կարելի է մէկ երկուքին դիրքն յարաբերական ապահովութեամբ ճշդել, ուստի աստ եւ այժմ պատշաճ կը համարիմ՝ մինչեւ որ անդրագոյն նիւթեր մէջտեղ ելլեն, ենթադրութիւններ չընել, եւ չեմ կրնար ըսել թէ ո՛ր եւ է յառաջադիմութիւն է Բիլլէրբէքի ենթադրութեանց կոյտը — ա՛յսպէս կ'որակեմ Բիլլէրբէքի մեկնութիւնները։ Թղթէ շինուած տան մը պէս կը կործանի այս շէնքը — հմմտ. առ այս Բիլլէրբէքի ուրուագիծը —, եթէ յառաջադիրներուն

տոկունութիւնը կամ տարողականութիւնը քննութեան ենթարկենք։ Տեղւոյ անձկութիւնը թոյլ չի տար որ մանրամասնութեանց մէջ մտնեմ, ուստի քանի մը կէտ միայն քննութեան կ՚առնում։ Արձանագրութիւնք (Տարեգրութիւնք) իրաւունքի երեւոյթն մը կու տա՞ն՝ Հարաւային բաժնի մը եւ Հիւսիսային բաժնի մը գործառնութեանց վրայ խօսելու։ Տեղւոյ անուան մը ցանկի մը մէջ գտնուելէն եւ ուրիշ ցուցակի մը մէջ չգտնուելէն հանուած եզրակացութիւնք շատ երկբայական են եւ պէտք է որ զմեզ մոլորցընեն, նա մանաւանդ այն ատեն՝ երբ արձանագրութիւնը պարծանաց արձանագրութիւն է. այս տեսակէտէ դատելու է Թիլլէրբէքի (էջ 79) Բիտ-Զատտի եւ Բիտ-Աբդադանիի, նոյնպէս (էջ 83) Սակսուկնիի վրայ ըսածը։ Այնպիսի կերպով մը Թիլլէրբէք նոր անուանց խաբուսիկ նմանահնչութենէն հիներուն կը հանի, որ ներեալին սահմանէն շատ անդին անցած է (կ. օ. Բիտ-Տասսակկի — Սակկիս, Սակսուկնի — Ուկնու գետ)։ Ինչո՞ւ Զակրուտի անունով Մարաց մեծ ժողովատեղիներէն մին պիտի հասկընանք։ Արդեօք այս անուան սեմական ստուգաբանութեա՞նը վրայ հիմնեալ։ Չեմ ուզեր շարունակել. բաւական է ըսելը թէ Թիլլէրբէք ոտքին տակ հաստատուն հող չունի, ուստի իր ստացած արդիւնքներէն արտաքոյ կարգի զգուշութեամբ օգտուելու է։

Յաջորդ տողերուն մէջ յառաջ կը բերեմ Տիգղաթպիղեսեր Գ.ի արձանագրութիւններէն տեղւոյ անանկ անուններ, որ տեղ գտած չէին այն ցուցակներուն մէջ, որոնցմով զբաղեցանք։ Ասոնք են. Ու-բէէննա, որ կեցած է Սիբուր եւ Նիպարիա անուանց միջեւ։ Ռոստ այս քաղաքը կը նոյնացընէ՝ Եկբատանայի մօտերը գտնուող Βαρήνηին (կտես.՝ առ. Ստ. Բիւզ.) հետ եւ այս երկուքն ալ՝ Վարենա անուն տեղւոյն հետ՝ Էլբրուսի շղթային հիւսիսակողմն այսօրուան Սարիի մօտ։ Կը կարծեմ թէ չա-

փէն աւելի դէպ ի Հիւսիսային-արեւելք գացած է Ռուսա. Ուրիշներ = Βαρήνη Հաւասարութիւնը կրնայ պաշտպանուիլ: — Նինէվէ: Ասորեստանցւոց թագաւորը այս գաւառին համանուն քաղաքէն առաւ տարաւ „Ձի, Ջորի, արջառ (եւ ոչխար)". եւ որովհետեւ բոլորովին աւերած էր, դարձեալ նորոգուեցաւ եւ բնակիչ ունեցաւ՝ ասորեստանցի պատերազմական գերիներ: Նիկուր անուան կը հանդիպինք պատերազմական իրաց վրայ խօսող նամակի մը մէջ (K 683), յորում բաց ի այլէ կը յիշուին նաեւ Ման եւ Կար-Շարուկին: Նիկուրի դիրքին վրայ արձանագրութիւններէն բան մը հետեւցընել կարելի չէ. Թերեւս Հարհարի մօտերն էր:

Տարեգիր արձանագրութեան քիչ մ'ապականեալ տողերուն մէջ Նիկուրի կը յաջորդէ Սուուխաշուա, հաւանօրէն նոյն՝ Սամսիրամմանէ Գիզիլբունդայի ընծայեալ Սասիաշային հետ: — Տապաաշդէ: — Փոքրիկ բացէ մ'ետքը՝ Կուշխանա: — Հուբշուա, կարելի է թէ նոյն ըլլայ՝ Հիլպրեխտի հրատարակած հին-բաբելական ցուցակին Հարշիին հետ: Վերջնոյն մէջ Գունդիի թագաւորութեան երկու տարիները՝ այն աւերման Հարշիի կ'ըսուին: — Շանաշուիկա: — Կէշշէփուրա: — Հուբշուի, թերեւս նոյն ըլլայ վերոյիշեալ Հարշիի հետ՝ որ Հիլպրեխտի քով կը տեսնուի: — Ախուբաքի': Ասոր կը յաջորդէ դարձեալ թերատ մը, որմէ ետքը կը յիշուի Հալիհադրի լեռը:

Տիգղաթ. Տարեգր. 40 եւն կը տեղականանք նմանապէս շարք մը Մարական երկիրներու անուանց. Բիտ-Կապսիի, Բիտ-Սանգիի եւ Բիտ-Տատաակկիի նուաճման վրայ տրուած տեղեկութենէն ետքը՝

---

1 Այս հատուածին յատուկ անուններն առաջին հայեցուածքին ոչ-երանեան կ'երեւան: Լեզուի տեսակէտէ ամենէն աւելի ազգակից են ասոնց Ուրարտեան եւ Նայիրեան երկիրներուն եւ լեռներուն անունները:

անմիջնորդաբար կը յիշուի Ու-ր(Տու-շ)շա-նի-կա քաղաքը։ Հաւանականօրէն սոյն տեղն է Մի-տա-նի. սոր կը հպատակէր նաեւ Կի-տի-դու-ղ։ Այս երկու տեղերն ալ Տիգղաթպիլեսեր Գ. առաւ։ Բնագրին մէջ՝ անկէ ետքը ա-ղի-ւ Կու-ղո-նի մը վրայ կը խօսուի։ Վերջէն կու գայ Եր-ի-նի-զի-ա-շա, քաղաք մը, որ սպասաւորած էր Կի-շի-տի Բի-տի-ի-հա-դի-ի անուն իշխանէն։ Քանի որ Երիզիանշու = Արանզիշու (տե՛ս վարը) է, ուստի Կիզեր պիտի ըլլայ անոր մօտերը։ Մեր արձանագրութեան մէջ կը հանդիպինք նաեւ Արազի[աշ], Սումուրզու եւ Բիտ-Համբան անուններուն, որոնց կը յաջորդէ Կի-շա-ա-դի։ Անկէ ետքն եկող թերատ մասին մէջ էր անունն այն երկրին, որուն կը վերաբերէր Կազաւատի։ Բնագիրը կը շարունակուի Բիտ-Արգադանա եւ Հալպի անունները նշանակելով. վերջնոյն վրայ կ'իշխէր Մի-կի։ Ծանօթ է որ Կումմուհի վերաբերող գաւառ մ'ալ Հալպի կը կոչուէր։ Հալպիէն ետքը կը կարդանք Ու-դա-կի-ա..., եւ վերջապէս Արիարմա, Տու-ր-շա-ր-րա-նի-ՀՈՒ։

Անդրադոյն մարական անուններ կը մատակարարէ մեզ Տիգղ. Տարեգր. 158—159։ Հոս Բիտ-Մատտի, Ումլիաշ եւ Բիտ-Իշտար անուններէն ետքն անմիջնորդաբար կը նշանակուին՝ Կի-նգի-կա-նգի։ — Կի-նդի-գի-ա-ս-ո։ — Կի-նգի-ալ-կա-ս-շ. — Կու-բու-շհա-դի-դի-ի։ — Ու-բու-շա (Շա-մբու-շա)։ — Ահ-զի-բու-նա։ — Գի-ր-գի-րա։ — Կի-հ-բա-շհա-դի։ Ասորեստանցւոց թագաւորն ըստ սովորականին այս ամէն տեղերը կողոպտեց եւ կործանեց։ Արձանագրութիւնը՝ Բիտ-Կապսիի դէմ մղուած պատերազմի մը վրայ համառօտ տեղեկութիւն մը տալէ ետքը՝ կը յիշէ Տա-դի-իր-ր-ա-դա քաղաքը, որուն վրայ կ'իշխէր Ու-շու-րա անուն անձ մը։ Ասոր կը յաջորդէ Նի-բա-ա-նի-դա մայրաքաղաք Բա-րա-դ-դա իշխանին, որ Ասորեստանցւոց թագաւորին դէմ դրաւ եւ կարճ պատերազմէ մ'ետքը գերի ինկաւ։

Տարեգրութեանց մէջ կը յաջորդէ Սիտուր-տակէ ետքը կու գան 12 բոլորովին եղծեալ տողեր, որոնց բովանդակութիւնն անտարակոյս նմանապէս Մարական իրաց նուիրեալ էր. յաջորդ չորս տողերն ալ սաստիկ վնասուած են. միայն երկու յատուկ անուն կարելի է կարդալ. մէյ մը մարական իշխանի մ՚անունն “Ցա-ա-ա-փա-ա-ու-շի եւ մէյ մ՚ալ Ըմաքէ անունն, որ էր “գաւառ մը վերեւը երկրին Ռու(ա)„ :

Ամենէն լաւն է Մադաիի ընծայել Տիգղ. Ցարեգր. 176—77 յիշուող երկիրներն, որ են՝ Տել-Աշշուրի: Տիգղաթպիղեսեր Գ. այստեղ Մարդուկին նեա մ՚ընծայեց եւ “մաքուր զոհեր„ մատոյց: Այս Տել-Աշշուրին շփոթելու չէ Բիտ-Ադինիի քով գտնուող նոյնանուն տեղւոյն հետ: — Տարեգրութեանց բնագրին մէջ կը յաջորդէ Նիկկու եւ փոքրիկ Թերատէ մ՚ետքը Հիշշա: — Հարբիխինա. հմմտ. Հարբիսինիա քաղաքին անունն Ուրարտուի կամ Էնզիի մէջ (էջ 76): — Բուշթաղ: — Տաա՝ “մինչեւ ցնեան Ո-լը-ը-ու-ա-շ. յաւելուածով: Ասոր կցուող աւարաց ցանկը՝ կ՚երեւայ թէ առնչութիւն ունի այստեղ յիշեալ մարական ամէն գաւառներուն հետ: Այս գաւառներուն դիրքն եւ ոչ իսկ յընդհանուրն որոշել կարելի է:

Սարգոնի արձանագրութիւններն ալ մարական երկիրներու բազմաթիւ անուններ կ՚ընծայեն մեզ: Յաջորդ տողերուն հիմը կը դնեմ Խորսաբադայ արձանագրութեան 58—70 տեղեկութիւնք: Հոս նախ եւ յառաջ կը յիշուի Նիկ-ա-մ-մա: Սարգոն այս երկրին վերաբերող վեց քաղաք առաւ եւ Պարսուայի միացուց: Նիկկամմայի մէկ քաղաքն էր Շու-ր-գա-դի-ա, որուն վրայ կ՚իշխէր Շէ-լու-շու-լի իշխանը: Նիկկամմա գաւառին մէկ մասին Պարսուայի հետ միացուիլն անկարելի կ՚ընէ Շարգադիան — ինչպէս Հոմմել կ՚ուզէ — Պաշարգադէի հետ նոյնացընելն, որ շատ վարը՝ հարաւակողմն է, կա-

բամանիայ մօտերը։ Նիկաամմա Պարսուայի կից պիտի ըլլայ, Թերեւս Հարաւային կողմանէ։ Բիլլէրբէք կը կարծէ թէ այս երկիրն Սաուջբուլակի կողմերն եղած ըլլայ (էջ 95)։

Կիշեսիմ։ Սարգոնի ատեն Կիշեսիմի իշխանը կը կոչուէր Բէլշարուսուր. ուստի անուանակից էր Նաբունաիդի անդրանիկին, որ Ս. Գրոց մէջ Բելշասար կը կոչուի։ Սարգոն այս իշխանը գերելով՝ գանձերովը մէկտեղ Ասորեստան տարաւ եւ անոր տեղ ասորեստանցի կառավարիչ մը դրաւ։ Քաղաքը նոր անուն մ'առաւ Կար-Ադար կամ Կար-Ներգալ։ Կիշեսիմի մէջ Ասորեստանցւոց թագաւորին մէկ անդրին կանգնուեցաւ. այս երկիրն ընդարձակուեցաւ շրջակայ 6 գաւառներուն միացմամբը։ Այս գաւառներն էին 1. Բիթ-Սակբատ. տես էջ 193։ 2. Բիթ-Հիրմամի։ 3. Բիթ-Ումարգի՝ որ կրնայ ըստ անուան, այլ ոչ ըստ էութեան, համապատասխանել 'Αμύργιοι = Սկիւթացիք անուան։ 4. Հար-խուբարբան։ 5. Կիլամբատի։ 6. Արմանգու։ Կիշեսիմ անուան կը հանդիպինք նաեւ Արեւու աստուածոյն աղօթիցը մէջ, որմէ կը տեսնուի թէ Ասորեստանցիք կը վախնային որ չըլլայ թէ Գիմմերացիք, Մադաիացիք եւ Մաննեանք այս քաղաքն առնուն։ Խորսաբադայ բարձրաքանդակին վրայ Կիշեսիմ կը ներկայանայ իբր ամուր բերդաքաղաք մ'երեքպատիկ պարսպով, բարձր աշտարակներով եւն։ Ընդհանուրն միայն կրնանք որոշել Կիշեսիմի դիրքը. հիւսիսէն Պարսուայի եւ հարաւէն Ելամի միջեւ տեղ մ'ըլլալու է։ Վինքլերինք Բիտ-Սակբատը Արազիաշէ կը բաժնէին։ Հիմէ զուրկ է Բիլլէրբէքի այն կարծիքն, որ Կիշեսիմը Պարսուայի մէջ կը դնէ եւ անոր գլխաւոր տեղերէն մին կը համարի։

Յառաջ քան Խորսաբադի արձանագրութեան մէջ Կիշեսիմի յաջորդող Հարհարին անցնիլը՝ կը յիշէ Գանգու-Խտու քաղաքն, որուն

անունը միայն Խորսաբատի մէկ բարձրաքանդակէն ծանօթ է. պատկերը Կիշեսիմը ներկայացընող քանդակին մօտ է։ Հաւանօրէն այս քաղաքը Կիշեսիմի մօտ էր։ Կրնայ ըլլալ որ Գանգուհատու նոյն ըլլայ Գինհուհատուի հետ։

Հարհար։ Սաղմանասար Բ. Պարսուայէ Արազիաշ եւ Հարհար իջաւ, այլեւայլ քաղաքներ առաւ եւ՝ Բիտ-Համբանի եւ Նամրիի դէմ արշաւանքը լմնցընելէն ետքը՝ Հարհարի մէջ իր արձանը կանգնեց։ Սարգոնի ատեն Հարհարի վրայ կ՚իշխէր Կիբաբա անուն իշխանը։ Խորսաբատայ արձանագրութեան համեմատ՝ Ասորեստանցւոց թագաւորն այս իշխանը պաշարեց, մայրաքաղաքին գրաւմանն ատեն զինքը գերեց եւ երկրին վարչութիւնը ասորեստանցի կուսակալի մը յանձնեց։ Տարեգրութիւնք քիչ մը տարբեր կը պատմեն. Հարհարցիք՝ Ելլիպիի Դալտա անուն իշխանին օգնութեանը վրայ վստահելով վռնտեցին իրենց իշխանը։ Սարգոն պատերազմի մէջ գերի բռնուած անձինքներ բերաւ եւ Հարհարի մէջ բնակեցուց. քաղաքին վերաբերող գաւառն ընդարձակեց՝ վեց շրջակայ երկիր միացընելով։ — Ասորեստանցւոց սովորութիւնն էր քանի մը կարեւոր նահանգներն ընդարձակել ի վնաս այլոց, որպէս զի մարական փոքր փոքր անկախ իշխանութիւնք վերնան։ Հարհար քաղաքը՝ Ասորեստանցւոց գերիշխանութիւնը Մարաց վրայ պահելու կարեւոր կռուան մ՚ըլլալուն՝ ամրոցներու գօտիով եւ պահականոցներով պատեցաւ։ Արտաքուստ ալ ցուցընելու համար որ այս քաղաքն Ասորեստանի հետ միացուեցաւ, Հարհար անունը փոխուեցաւ Կար-Շարրուկինի (= Սարգոնի թումբ կամ պատնէշ)։ Թէ այս անունն տեւակա՛ն եղաւ, շատ տարակուսական է, ինչու որ՝ երբ Ասորեստանցիք Մարաց վրայ իրենց գերիշխանութիւնը կորսնցուցին, այս անունն ալ անհետ եղաւ։ Հարհար անուան նամակներու

մէջ ալ կը հանդիպինք։ Հարհար երկրի ընդարձակում մ'ընդունեցաւ Սաներիբ Թագաւորէն, որ առոր միացուց Ելլի(պի)է առած Բիտ-Բարրուա գաւառը։ Ասարհադդոնի ժամանակէն մնացած բնագիր մը "Հարհարցւոց ամրոց ի սահմանս Ելլիպիի„ կ'անուանէ Սիսիրտուն, որ կ'երեւայ թէ ելլիպեան քաղաք մըն էր։ Ասուրբանիպալի թագաւորաց ժամանակէն յառաջ՝ Հարհարի գոյութիւն ունեցած ըլլալուն յիշատակարան ունինք։ Վերն (էջ 198) ըսինք թէ Գունդիի իշխանութեան երկու տարիներն կը կոչուին ամք աւերման Կարհարի։ Այս կէտն ուրիշ տեղեր ալ կը յիշուի։ Տեղ մը կը յիշուի Կարհարի մէկ Թագաւորն՝ Կի-իր-ա-րի անուանով։ Շատ կարելի է որ Կարհար հին ձեւն ըլլայ Հարհարի. ասկէ կը հետեւի որ այս անուններն իրարու հետ նոյն ըլլան։

Սարգոնի Հարհարի հետ միացուցած վեց գաւառներն էին 1. Ար-ան-զի-շու։ Այս գաւառին անուամբը կը կոչուէր "վերին Ջրանցքը։„ Իսկ ստորին Ջրանցքը կը կոչուէր 2. Բիթ-Ռամատուա գաւառին անուամբը։ Ասկէ կը հետեւի թէ Սարգ. Տարեգր. 83 տեղը, ուր "վերին եւ ստորին Ջրանցքին վրայ [գտնուող] մարդոց„ Հարհարի վերաբերելուն վրայ է խօսքը, աչքի առջեւ ունի Արանզիշուի եւ Բիտ-Ռամատուայի բնակիչները։ Բիլլերբեքի հետեւելով կրնանք ըսել թէ Արանզիշու նոյն պիտի ըլլայ Տիգղաթպիղեսեր Գ.ի Տարեգրութեանց Երինզիաշուին հետ։ Ելամական երկիրներու մէկ ցանկին մէջ կը հանդիպինք Ար-ան-զի-աշէ անուան. հաւանօրէն զանազանելու է այս անունն Արանզիշու = Երինզիանշուէ։ Սարգոնին նախորդները կը յիշեն Ար-ա-զի-աշ անունով երկիր մը, որ՝ ըստ երեւութին՝ Արանզիշուի հետ նոյն է։ Սաղմանասար Բ. թագաւորութեանը 24դ տարին Պարսուայէ Արազիաշ եւ Հարհար իջաւ։ Սամսիրամման Բ. Սագբիտա = Բիտ-Սակբատէ գալով՝

վիմալերինքն անցաւ եւ հասաւ Արազիաշ, ուր երկրին իշխանը՝ Մոնուարփա Ասորեստանցւոց դիմացն ելաւ, բայց ճակատուն մէջ պարտուեցաւ ինքն եւ իր մարդիկներէն 1070 հոգի։ Մեռելներուն մարմինները անդունդները նետուեցան։ Արջառ եւ ոչխար յաղթողներուն ձեռքն աւար ինկան։ Տիգղաթպիղեսեր Գ.ի ժամանակ Արազիաշի մէջ կ'իշխեր Ռամատէա անունով իշխան մը, որ Ասորեստանցւոց բանակներուն մօտենալուն՝ փախաւ, այնպէս որ բանակն առանց աշխատութեան աւար առաւ նժոյգ, արջառ, ոչխար եւ լաջուարթ բռնուած քար։ Արազիաշէ Տիգղաթպիղեսեր Սումուրզու չուեց։ Ռոստ (Unters. S. 88) իրաւամբ Արազիաշ հին անունը կ'ուզէ տեսնել 'Αρουζίς անուան մէջ, որ Ներքին Մարաց քաղաք մըն է՝ յիշուած Պտղոմէոսի քով (Զ, 2, 16)։ Գալով Ռամատուա անուան, պիտի ըսենք թէ սա՛ նախնաբար ընտանեաց մը անուն էր. այս անունը կը կրէին՝ ըստ արձանագրութեանց՝ Արազի[աշ]ի իշխանը Տիգղաթպիղեսեր Գ.ի ատեն, եւ Ուրակազաբարնայի կուսակալը՝ Ասարհադդոնի ատեն. — այս երկու դէպքին մէջն ալ անունս քիչ մ'այլայլեալ Ռամատէա ձեւով կը ներկայանայ։ Արդ՝ երկու կերպ մեկնութիւն կարելի է. կամ Մարաստանի մէջ Ռամատուա կամ Ռամատէա անունով բազմաթիւ ընտանիքներ կային՝ առանց իրարու հետ ազգակցութիւն ունենալու, կամ Ուրակազաբարնայի եւ Արազի[աշ]ի յիշեալ երկու գաւառատէրերն անդամներն էին այն ընտանեաց, որուն մայր երկիրը համարուելու է հաւանօրէն Բիտ-Ռամատուա։ 3. Ուրիկատու։ 4. Սիկրի։ Բիլլէրբէքի այս տեղն Սիկրակի = Տիկրակկիի հետ նոյնացընելը բանաւոր չեմ համարիր (տես էջ 193)։ 5. Շապարդա։ Ասկէ յայտնապէս տարբեր է Կնուտցոնի բնագրաց մէջ յիշուած Սաբարդայ բռնուածներն, որ Գիմմերացւոց, Մարաց եւ Մաննեանց հետ

Հակառակորդ կը ներկայանան Ասորեստանի: Ամէնէն լաւն է ասոնց բնակավայրը Փոքր Ասիոյ մէջ փնտռել եւ ապա զատոնք Սպարդա բառած ժողովրդեան հետ նոյնացընել, որ հին-պարսկական արձանագրութեանց մէջ մէյ մը Յաունա (= Յոնիա) անունէն յառաջ եւ մէյ մ'ալ Կատապաթուկա (= Կապպադովկիա) եւ Յաունա անուանց միջեւը կը յիշուին: Մեծապէս վէճի նիւթ է թէ արդեօք Ս. Գրոց Սեփարադը (Աբդիու 20, հյ. թրգմ. Սարփաթ), ուր Երուսաղէմէն գերի տարուածները կը բնակէին, Մարա՞ց Շեպարդային հետ նոյն է, թէ Փոքր Ասիոյ Սապարդային հետ: Առաջնոյն կողմն են Շրադէր եւ Գեզէնիուս, իսկ Սեփարադ = Սապարդա = Սպարդա հաւասարութիւնը կը պաշտպանեն Շպիգէլ, Նէօլդէքէ եւ Է. Հադէն. վերջինս ինք զինքը Լիւդիոյ կողմը կ'որոշէ, եւ առանց քննելու կը թողու Սապարդա եւ Σάρδεις անուանց ստուգաբանական աղերսին խնդիրը — աղերս մը՝ զոր կ'ենթադրէր Լասսէն, իսկ ես այս աղերսին գոյութիւնը շատ տարակուսական կը գտնեմ: Վերջնականապէս կարելի չէ որոշել թէ այս երկու տեսութիւններէն ո՞րն աւելի ընդունելի է: Ես աւելի պատրաստ կը համարիմ Սեփարադն արեւելեան երկիր մը համարիլը, վասն զի արեւելք կան ուրիշ գաղութներ ալ՝ Պաղեստինէն բերուածներով կազմուած: Այս խնդրոյն լուծումը սերտ կապ ունի Աբդիու գրոց ծագմանը ժամանակին հետ: Վերջապէս սա կէտն ալ շեշտենք որ Հոմմել սա-ա-պար-(մար)-դու անունը՝ Սա-մար-դա-ա, սա-ա-պար-դու = սա-ար-դու ("Բազէ") երկրորդական ձեւերն օգնութեան առնելով՝ "Թաչուն Սեփարադայ" կը մեկնէ: Ս. Գրոց Սեփարադը Հոմմել Կապպադովկիոյ կամ Պոնտոսի մէջ կը փնտռէ: 6. Ո-րէ-ա(-?)նէէ: Բայց ի այս վեց գաւառներէ՝ Հարհարի հետ միացուած պիտի ըլլան՝ ըստ Սարգ. Տարեգր. 83—84՝ Բիթ-Սանգիբուտի (տես վերը էջ 187) եւ Ո-պպարէա:

Սարգոնի թագաւորութեանն ատեն Ուպպարիա գաւառին վրայ կ'իշխէր Սաղարտանոս իշխանը։ Ուպպարիայի մէկ գաւառակը Ուիշմանոտի կ'անուանուէր։

Իբր Հարհարի վերաբերող կամ անոր մօտերը գտնուող տեղ յառաջ կը բերէ Սաղմանասար Բ. Կուաքինդա, Հազզանաբի, Եսամուլ, Կինաբլիլա։

Հարհար երկրին դիրքն որոշելու թէեւ այլ եւ այլ կռուաններ ունինք, սակայն ասոնք անանկ անորոշ են, որ շարժելու բաւական տեղ կը թողուն։ Հարհարի կեդրոնն ընդհանրապէս կ'որոշուի իր հիւսիսակողմը գտնուող Արապխաշ եւ Պարսուա երկիրներով, արեւմտակողմը կամ հիւսիս-արեւմտակողմը գտնուող սահմանակից Նամրիով եւ հարաւակողմը կամ հարաւ-արեւելակողմը գտնուող Էլլի(պի)ով։ Ասորեստանցւոց այս գաւառին ընծայած դերը կը ցուցընէ որ իրենց յարաբերաբար շատ դիւրին էր այս երկիրը մտնելը։ Ես կ'առաջարկեմ այս երկրին համար այն դաշտն, որ Դիեալայի արեւմտեան կամ արեւելեան ափին վրայ՝ հիւսիսէն Պաիկուլի եւ հարաւէն Քասր-ի-Շիրինի միջեւ կը տարածուի, վասն զի հիւսիսակողմն եւ հիւսիս-արեւելակողմը գտնուող դժուարին լեռնաշխարհը հազիւ կրնար կայանն ըլլալ Ասորեստանցւոց կուսակալական վարչութեան։ Հարհար անունն, որ նախնաբար լոկ աշխարհագրական էր, վերջէն, երբ նոյն երկրին հետ շատ մը գաւառներ միացուեցան՝ մի եւ նոյն վարչութեան տակ, վարչական գործածութեամբ շատ ընդարձակուեցաւ։ Թէ Էլլիպի ուղղակի սահմանակից էր Հարհարի, երկու իրողութենէ կը տեսնուի. մէյ կը Սարգոն Էլլի(պի)է առնուած Բիտ-Բարրուա գաւառը միացուց Հարհարի, եւ երկրորդ Կնուտսոնի քով թիւ 71ին յայտնապէս կ'ըսուի. “Քաղաքն Սիսիրտի, ամուր մը Հար-

հարացուց, որ Ելլիպի երկրին սահմանին վրայ էր։ Սանհերիբի արձանագրութեանցը մէջ Սիսիրտի կը յիշուի իբր ի սկզբանէ անտի Ելլիպեան քաղաք։ Հիւսիսէն Պարսուայի եւ հարաւէն (յատուկ մօք) Հարհարին միջեւը՝ ուստի Զերիբոր լճին մօտերը փնտռելու ենք ինչպէս Արանզիշու-Արանզիաշը, նոյնպէս եւ այն հինգ երկիրները, զորոնք Սարգոն Հարհարի տորեստանցի կուսակալին իշխանութեանը տակ դրաւ։ Հաւանական է Դիլաեա գետն էր՝ ուղղակի՝ վերին եւ ստորին Ջրանցքին Ջուր մատակարարողը։

Հարհարը տեղաւորելու համար մինչեւ հիմայ եղած փորձերուն գալով, ամէնէն յառաջ յիշելու ենք որ Լընորման այս երկիրը Նամրիի հարաւ-արեւելակողմը՝ Կարինա-Կամբադենէի տեղը դրաւ. ըստ իս՝ չափէն աւելի դէպ ի հարաւ-արեւելք գացած է։ Շրադէր՝ առանց տեղը ճշդելու՝ յընդհանուրն կ'ըսէ թէ մերձաւորապէս արեւմտեան Մարաց մէջ եւ Ելլի(պի)ի արեւմտակողմն ըլլալու է։ Եուստի՝ Կերմանշահալի կողմերը դրաւ, դը Մորգան՝ հարաւէն Դինաւերի եւ հիւսիսէն Սինէյի միջեւ. վերջապէս Բիլլէրբէք կը կարծէ թէ Հարհար է Նամրիի մէկ մասն, այն ալ՝ ամէնէն արեւելեանը. Հարհար քաղաքն այսօրուան Հեջաշի քովերը կը փնտռէ։ Բիլլէրբէք ալ Արանզիշուի եւ Արազիաշի իրարմէ տարբեր ըլլալը կ'ընդունի եւ վերջինը Զերիբոր լճին արեւելակողմը կը դնէ. Արանզիշուն կամ վերին Ջրանցքը կը համարի Բելադ-ռուս վտակը՝ Բակուբայի արեւելեան կողմը, եւ ստորին Ջրանցքին վրայ գտնուող Բիտ-Բամատուան կը նոյնացընէ այն դաշտին հետ, որ Ելվէնդրուդի, Դիեալայի եւ Գվորրատուի միջեւ կը տարածուի։ Խորսաբադի բարձրաքանդակը զՀարար կը ներկայացընէ իբր մեծ բերդաքաղաք մը՝ ոչ աննշան գետի մ'ափանց վրայ բարձրացած եւ միջնաբերդէ մը տիրուած։

Կը գտնամ Խորսաբադի արձանագրութեան քաղաքաց եւ երկրաց ցուցակին: Հոս Հարհարէն վերջը կը յիշուի Կիշեշլու: Այս քաղաքը Սարգոնէ նուաճուելէն ետքը՝ Կար-Նաբու կոչուեցաւ: Խորսաբադի բարձրաքանդակը զԿիշեշլու կը ներկայացընէ իբր կրկին պարսպով ամրացած եւ ժայռի մը վրայ կեցած բերդաքաղաք մը: — Կինդաու. այս քաղաքն ալ նոր անուն մ'առաւ, որ է Կար-Սին: — Բիթ-Բագայա (կամ Գաբայա): Այս քաղաքին անուան փոփոխմանը մասին իրարմէ կը խոտորին աղբիւրք: Խորս. արձ. կ'աւանդէ իբր ասորեստանեայ անուն Կար-Ռաման, իսկ Տարեգր.՝ Կար-Իշտար: Գաբաիա ոչ թէ անուանս մէկ երկրորդ ձեւն է, այլ լոկ արդիւնք վրիպանաց: — Անշարիա: Այս քաղաքին նոր անուանը վրայ ալ տեղեկութիւնք միաբան չեն. Խորս.՝ Կար-Իշտար կ'անուանէ, իսկ Տարեգր.՝ Կար-Ռամման: Այս Կար-Իշտարէն — ինչ որ ալ սոով հասկցուած ըլլայ՝ Բիտ-Բագաիա կամ Անզարիա — զանազանելու ենք համաժամանակեայ պատմութեան Կար-Իշտար քաղաքը. վասն զի այս վերջին տեղս — որուն քով Ասորեստանցւոց Ռամմանիրարի Ա. թագաւորին եւ Բաբելոնի Նազիմարադդաշ թագաւորին մէջ պատերազմներ մղուած են — հարկ է հիւսիսային Բաբելաստանի մէջ գնել: Անզարիա "վերին եւ ստորին Ջրանցքին, կողմերն էր, ըստ այսմ" Արանզիշուի եւ Բիտ-Ռամատուայի մօտերը: Սարգոնի ունեցած պատերազմական յաջողութիւններն պատճառ եղան, որ այս երկրին բնակիչները Ասորեստանցւոց թագաւորին զինուոր տալու ստիպուեցան. Տարեգրութեանց մէջ կը կարդանք. "400 զինկանի, իրենց զինուորները, 4820 ..., իրենց մարդիկներն առի բանակիս մէջ: — Կը յիշուին նաեւ հետեւեալ երեք մարական քաղաքները՝ Կախսանաքին Շարբարա, Հալբուքինա եւ Շա... ալ:

Սարգոնի Ցարեգր. 158—162 կը ծանօթացընէ մեզ դարձեալ շատ մը մարական գաւառակներ, որ են Բախտիլի, զոր Մէյս "տուն աստուածոյ„ կը թարգմանէ եւ այս թարգմանութեան վրայ հիմնուելով կը նոյնացընէ Հնոց Βαγίστανα, Βαγίστανον ὄρος, այսօրուան Բիսուտուն (հնագոյն ձեւ՝ Բեհիստուն) տեղւոյն հետ, ուր գտնուած են աքեմէնեան արձանագրութեանց ամէնէն մեծերն ու կարեւորները: Βαγίστανα հին-պարսկերէն Բագաստանա բառէն՝ "տեղի աստուածոց„ կը մեկնուի առ հասարակ. բայց այս անուանն ասուրերէնի թարգմանուած ատենը Բիտ-իլէ միայն կրնար ըլլալ, եւ ո՛չ թէ՝ Բախտիլէ: Բախտ բառն ուրիշ տեղ եկած չէ Ասորեստանեցւոց, Բաբելացւոց եւն մատենագրութեանը մէջ: Ասկէ իսկ կը տեսնուի որ Մէյսի մեկնութիւնն կասկածելի է: Բախտիլիի լերանցը մէջն էր Եւլիշփանու քաղաքը, զոր Սարգոն շրջակայ քաղաքներով մէկտեղ նուաճեց: Տող մ'եւաքը յիշուած Դիլիփանու՝ նոյն է Երիշտանայի հետ: — Աքահանտի: — Պարնուատտի: — Ուտիրնա: — Ուխարաու: — Ակազի: Ռաստ աստր հետ կը համեմատէ Աորպատականի ̓́Αραζαն: — Ամբանդա, հաւանօրէն Բեհիստունի արձանագրութեան Կապանդային (= Καμβαδηνή) հետ նոյն, որ Եկբատանա-Համադանի հարաւ-արեւմտակողմն էր: Հին անունն մնացած է Չամաբադան ձեւով: Այս տեղւոյն գլխաւոր քաղաքն էր Βαγίστανα = Բեհիստուն: — Դանանու: Ուաիդաւէ, Բուզտիս, Ագազի, Ամբանդա եւ Դանանու կը նշանակուին իբր "հեռաւոր գաւառք ի սահմանս Արաբացւոց արեւելից„: Այստեղ արաբացի ըսուածներով հասկընալու ենք ընդհանուր մօզք վաչկատուն վրանաբնակ ցեղեր:

Արեւելեան Արաբացւոց կը յաջորդէ արձանագրութեան մէջ "եւ երկիրն Նագիրի (կամ՝

եւ երկիր) Հզօր Մանդաիացւոց„ ։ Կապակցութիւնն աչքի առջեւ ունենալով Նոքէրան պէտք ենք Մարաց արեւելակողմը փնտռել ։ Այն խօսքը թէ Մադաիացիք Ասորեստանցւոց լուծը թօթափելով՝ լեռներն ու բացատածները քաշուեցան եւ վրաններու տակ բնակեցան, կրնանք այնպէս մը մեկնել որ յառաջ արեւմուտք կը բնակէին, ուստի՝ Ասորեստանի մօտ ։ Սակայն կրնայ անիմաստ խօսք ալ ըլլալ ։ Մանդանիացիք երբեք իրենք զիրենք Ասորեստանի հպատակ համարած պիտի չըլլան ։ Մանդաիացիք մարական ցեղ մըն էին ։

Բեկեալ Հաստուածակողման արձանագրութիւնն պահած է մեզի մարական երկիրներու եւ իշխաններու կարեւոր ցանկ մը, թէեւ լոկ համակոտորներով ։ Ասոնց շարքը կը բանայ 1. Սիկրինա, իշխան՝ ...?...պա-տար-նա-- ։ Ռոստ կը կարծէ թէ Սիկրինան է Մարաց հարաւարեւելքը գտնուող Σιγριανική (Պտղ. Զ, 2, 6) ։ — 2. [Մա-]սու-նա, իշխան՝ Սա-ռի-րի-նա ։ Ռոստ կը յիշեցընէ նմանահնչուն Ուտիրնա եւ սկիւթական Στύρανος անունները ։ — 3. Հա-պա-?-նա, իշխան՝ Ո-պ-պա-ամ-մա-ա ։ — 4. Ամակկի, իշխան՝ Մա-աշ-դա-կու ։ Զեմ ընդունիր Ռոստի՝ ամակկի = Μύχοι (Հերոդ. Գ, 93, Է, 68) հաւասարութիւնը ։ Մաշդակու = երանեան Մազդակա ։ — 5. Իշ(Մէլ)պէ-քքա, իշխան՝ Իշ(Մէլ)-պէ-աաա-կա ։ — 6. Ո-կա-ապէ, իշխան՝ Ո-ա-ար-զա-ան ։ Ուարզան = ավեստ. վարեզանա = պաշտպանութիւն, պաշտպանել ։ — 7. Կակկամ, իշխան՝ Աշ-պա-ան?-րա ։ — 8. Տաքարի եւ 9. Լա-հքարքարի ։ Այս երկու "Հզօր Նահանգաց„ իշխաններն էին Սա-պար-է-շա եւ ...-րա-րա-աա ։ Տաքարի = Τάπουροι (Τάπυροι, Τάπουρρα) դասականաց ։ — 10. Ո-պպարի, տես վերը էջ 205 ։ — 11. Անպէրպապէանա, իշխան՝ Պա-ար-պա-կ-կա-(?) ։ Անտիրպատտիանու = Անպարպապէ՝ ըստ Ռոստի ։ Անտարպատի = Անտրի-

պատէս, Ատրոպատենէ. Անտարպատի սկզբնաբար քաղաքի՝ կամ գաւառի մ'անուն էր եւ վերջէն անձի անուն եղաւ։ Ծանօթ է որ ᾿Ατροπατηνή Աղեքսանդրի յաջորդաց կամ զօրապետաց ժամանակէն է եւ ծագած է ᾿Ατροπάτης պարսիկ սատրապին անունէն, որ՝ Աղեքսանդր Մեծի ծառայութեան մէջ մնած ըլլալով՝ անոր մահուընէն ետքն՝ երկիրներուն բաժնուած ատենը Հիւսիս-արեւմտեան Մարքն (այսօրուան՝ Ատրպատականը) առաւ։ Անտիրպատտիանու (Անտարպատի) = Ատրոպատենէ հաւասարութիւնը բնականաբար կը ստիպէ ենթադրել թէ Ատրոպատէս ընտանեաց անունն նախնաբար — Աղեքսանդրէն դարեր յառաջ — լոկ տեղական էր։ Այս յինքեան կասկածելի ենթադրութիւնը աւելի կասկածելի կը դառնայ, երբ այս անուանց կազմիչ առաջին մասունքները նկատողութեան առնուին։ — 12. Բու-շտու-, տե՛ս էջ 176։ — 13. Ցու-ր-ուբ(?)..., իշխան՝ Ու-շր-տաա։ Ռոստ վերջին անունը կ'ուղղէ Ու-շտ-տաա = երան. Վիշդա։ — 14. Ագ-ուփա, իշխան՝ Մա-աշ-փա-կու։ Ունի՞ յարաբերութիւն Ամիտտա անուան հետ՝ Պարսուայի Միշտա քաղաքին անունը։ Մաշտակու = Մաշդակու (տես թիւ 4)։ — 15. Հ(?)ու-րշխանու, իշխան՝ Հա-ար-տու-կի-կա = ᾿Αρτύκας։ — 16. ....խ-փանու, սոր տէրերն էին Ա---ար(րի?)-դա-ար-նու եւ Իշ(Մէլ)-տե-լի-կու։ Աւարպարնու = ᾿Οροφέρνης։ — 17. Արնասխա. իշխան Արբակու = ᾿Αρβάκης (Վարբակէս) դասականաց։ — 18. Կար-շինու, իշխան՝ Կա(Ակ)-րա--տի։ — 19. Բարիկանու. իշխան՝ ...բար-նու։ Բարիկանու = Παρικάνοι Հերոդոտոսի, որոնց բնակավայրը փնտռելու է Մարաց արեւելակողմը՝ հին Գեդրոսիայի մէջ։ — 20. Զաշախնու = Ζάζακα (?)։

21. Կարխասխա = Կարխաշշի (?)։ Այս անուան վերջին մասին մէջ ծածկուա՞ծ է արդեօք Կասեանց

անունը։ Կարկաշիի կառավարն էր Կոշփոչեփ։ Ինչպէս վերն (էջ 185) յիշեցինք, Կաշտարիտ՝ Մադաիացւոց, Մանեանց եւ Գիմմերացւոց հետ դաշնակցութիւն մը կազմեց Ասորեստանի դէմ։ Ոմանք՝ առերեւոյթ նմանահնչութենէ հրապուրուելով՝ Կաշտարիտը համարեցան Մարաց Կիաքսար թագաւորը։ Կաշտարիտէ = հին-պարս. Խշաթրիտա, իսկ Կիաքսար կ'ենթադրէ երանեան *Ուվակշատար նախաձեւ մը։ Տիլէ այս հաւասարութիւնը մերժած ատեն կ'ըսէ. "Կիաքսար, Մարաց լայնածաւալ պետութեան մեծ թագաւորն էր, իսկ Կաշկարիտ՝ կասեան կամ մարական ցեղապետ մը, որ թէեւ դաշնակցութեան մը գլուխն անցած է, սակայն իւր վրան ունի մար տէր մը„։

22. Պորփոխնոս։ Տես վարը Պարտակկու անուան տակ։ Պարտականու անուան կը յաջորդեն բոլորովին եղծեալ հինգ տող։

Ըսինք թէ դժբախտաբար կիսկատար է Սարգոնի Հատուածակողման ընծայած մար իշխաններու ցանկն, որուն վրայ հիմայ խօսեցանք։ Բայց անոնց մէջէն երեք անուն բոլորովին կը միաբանին Դիոդորոսի (Բ. 32) քով գտնուած ինն մար "Թագաւորաց„ անուններէն երեքին, որ են՝ Արբակու =) Ἀρβάκης, Հարդուկկա = Ἀρτύχας, Աշպանդա = Ἀσπάντας. Թերեւս չորրորդ մը՝ Մաշտակու ծածկուած ըլլայ Μαυδάκης (Μανδάκης — որ կրնայ Μασδάκης անուան եղծեալն ըլլալ — անուան մէջ։ Հետեւեալ հինգ մար թագաւորաց անունները — Σώσαρμος, Ἀρβιάνης, Ἀρταῖος, Ἀρτύχης, Ἄστιβάρας — սեպագիր արձանագրութեանց մէջ դեռ գտնուած չեն։ Այս թագաւոր ըսուածներն՝ ինչպէս վերի նոյնացուցումներէն տեսնուեցաւ, թագաւոր չեն, այլ գաւառապետեր կամ իշխաններ, որ Մարաց Ասորեստանցւոց հետ ունեցած խնդիրներուն մէջ մեծ ազդեցութիւն ունեցած են։

Ասարհադդոնի արձանագրութիւններն ալ քանի մը մարական երկիրներ անուամբ կը յիշեն, որ են՝ Պա-տու-շար-րա՝ «դաւառ մը յեզեր անապատին աղի ի մէջ հեռաւոր Մարաց, որ կը բնակին Բիկնի՝ Լազուարթ-լերանց ստորոտը, ուր ոչ ոք թագաւորական նախահայրերէս մտեցած է։» Ասարհադդոն այնտեղ երկու «Հզօր քաղաքատէր», Շի-դիր-պա-ար-նա եւ Ե-պա-ար-նա՝ գերեց։ Առած աւարն էր՝ «կառքի ձի, արջառ, ոչխար, էշ եւ ուղտ»։ Ասարհադդոնի նկարագրութեանը համեմատ՝ Պատուշարրա Ասորեստանէն շատ հեռու էր. ուստէ նոյնացուցին հին պարսիկ արձանագրութեանց Բատիշվարիշին հետ, զոր Πατεισχορεῖς (Ստրաբոնի քով) ժողովուրդը համարեցաւ Շպիգել։ *Πατισχορ անունով երկու ժողովուրդ ընդունելու ենք. մէյ մը Ստրաբոնի յիշած Πατεισχορεῖςը, մէյ մ'ալ Ասորեստանեայ Պատուշարրան = հինպրս. Բիտիշվարիշ։

Ասարհադդոն մարական հետեւեալ երկիրներէն ալ հարկ առաւ, որ են 1. Պա-ար-տակ-կա, որ մայրաքաղաքն էր Ու-պի-իշ իշխանին։ — 2. Պա-ար-տուկ-կա, իշխանը՝ Սա-նա-սա-նա։ — 3. Ու-րա-կա-զա-բար-նա, իշխանը՝ Ռա-մա-տե-ա։ Այս երեք քաղաքները հարկ տուին «մեծ ձիեր, լազուարթ, քերթ լերանց»։ Պարտակկա եւ Պարտուկկա = Παραιτακηνή գաւառականաց։ Համմտ. նաեւ Paraetaceni (Պլին. Զ, 26, 29), Παραιτακηνοί (Հերոդոտ. Ա, 101) կամ Παραιτάκαι (Ստր. ԺԵ. էջ 729, 736)։ Այս երկրին հետ նոյն է Սարգոնի ցանկին Պարտականուն։

Կան վերջապէս քանի մը քաղաքաց եւ երկրաց անուններ, որ կամ Մարաց մէջ էին կամ մօտերը։ Ու-շի-շի։ — Սա-ն-դու։ — Կի-իլ-մա-ն։ — Կու-ր-դի-պա։ — Կու-ուկ-կու-մա։ — Ռա-մա-տա-նի։ — Բի-իտ-Կա-րի։

Յիշենք ի վերջոյ Կիւրոսի թագաւորական քաղաքը՝ Աֆ-ու-մպա-նու-ն, որ կենդրոնն էր այլ եւ

ուաջ Մատայի հետ կը համեմատէին Մատիանացիները, Ματιηνοί (Ματιανή), որ Ուրմիոյ լճին շուրջը բնակող ժողովուրդ մ'էին՝ ամենահին ատեններն ի վեր, երբ Ցառաջակողմեան Ասիոյ ամենէն նշանաւոր ազգերէն մին՝ Ալիս գետէն մինչեւ Ուրմիոյ լիճը տարածուած ըլլալով։ Շատ անհաւանական է որ Մադայի եւ Մատայի անուններն իրարմէ տարբեր ըլլան։ Մատայի = Մատիանէ հաւասարութեան դէմ կ'ելլէ Ստրաբոնի եւ Պտղոմէոսի աւանդած Μαντιανοί երկրորդական ձեւը։ Որովհետեւ Մատայի անունէն յառաջ շատ անգամ մատ որոշիչը գրուած չէ սեպագրութեանց մէջ, ուստի կարծեցին թէ նոյն տեղերն ո՛չ թէ Մատ-ա-ի կարդալու է, այլ mât Աի, եւ այս Աին Մատայիէ տարբեր երկիր մը համարեցան։ Բայց հիմայ բոլորովին սպահով է Մատայի ընթերցումը։ Աւելի սոէպ գործածուած է Մադ-ա-ի ձեւը = եբր. מָדַי, ասոր. ܡܕܝ, յուն. οἱ Μῆδοι, Μηδία. Հին-պարսկական սեպագրութիւնք կը գրեն Մադա, զոր բաբելական թարգմանութիւնը Մա-դա-աի կը թարգմանէ։ Անուանս երանեան նախաձեւն ըլլալու է՝ Մադհա։

Ռոստ Մարաց սկզբնական բնակավայրը կը փնտռէ հարաւային Ռուսաստանի, Սկիւթացւոց հայրենիքին մէջ։ Երանեան ազգաց գաղթականութեան սկիզբը կը դնէ 15րդ դարուն եւ Մադիացւոց գաղթականութիւնն այն ազգաց գաղթականութեանը հետ կը կապէ, որ 10դ դարուն կէսերը Կումմուհ եւ անոր հիւսիսային եւ հիւսիս-արեւելեան կողմերը հաստատուեցան։ Ուրարտեանց եւ Մանեանց յառաջխաղացութիւնն ալ կախում ունէր Մարաց շարժումէն։ Ռոստ կը կարծէ թէ Մարք դէպ ի հարաւ եւ հարաւային արեւելք յառաջանալով՝ Կասպից ծովուն բոլորտիքէն անցան եւ վերջէն արեւմտեան

կամ Հարաւ-արեւմտեան ուղղութիւնն բռնեցին։ Սաղմանաւոր Բ.ի ատեն Ասորեստանեցւոց տեսանելի եղան։ Վերջէն նորանոր ցեղեր ալ եկան, որով Մարք կամաց կամաց զօրացան եւ Պարսուա, Զամուա եւն երկիրներն ողողեցին, այնպէս որ Տիգղաթպիղեսեր Գ.ի եւ Սարգոնի ատեն գրեթէ Ասորեստանեցւոց սահմաններուն վրայ հաստատած էին իրենց վրաններն։ Անարիք մասամբ նոր բնակչութեան մէջ կորսուեցան, մասամբ վռնտուեցան։ Ասորեստանեցւոց յիշեալ երկու թագաւորներուն ատենը Մարաց աշխարհն էր գրեթէ այն երկիրն, որ արեւմուտքէն Զագրոս լեռներէն, հիւսիսէն՝ Ուրմիոյ լճէն, հարաւէն՝ Ելլիպիէն եւ Ելամէն կը պատի։ Հարեւ-արեւմուտքէն մարական գաւառներու սահմանն էին Նամրի եւ Ցասուբեանց եւ Կաշանց երկիրներն։ Դէպ ի հիւսիս-արեւելք Մարաց բնակավայրը կը տարածուէր մինչեւ Էլբրուզ, իսկ դէպ ի հարաւ-արեւելք՝ մինչեւ Պարտուկկա. Ասորեստանցիք ամէնկ կը ներկայացընեն Մարաց երկրին տարածութիւնը։ Ելլիպի երկայն ատեն իր անկախութիւնը թէեւ պահեց, բայց վերջապէս ձուլուեցաւ Մարաստանի հետ։ Չի կրնար ըսուիլ թէ Ասորեստանցիք մարական այս ընդարձակածաւալ նահանգները նուաճած ըլլան. տեւական ազդեցութիւն մ'ունեցած են բնականաբար Բաբելաստանի, եւ Մարաստանի մօտ գտնուող մարական նահանգներու վրայ միայն. հեռուները բնակող Մարաց կախում ունենալն էր՝ հարկ տալ Ասորեստանեցւոց բանակներուն անցած ատենը։ Մարաց երանեան ծագումը, զոր դասականք ալ կ'աւանդեն, կը հաստատուի բեւեռագրութեանց մէջ պահուած անուններով։ Մարք մինչեւ 7դ դար՝ բազմաթիւ գաւառներու բաժնուած էին՝ գաւառատէրերու կամ քաղաքատէրերու իշխանութեան տակ։ Թէ ուրմէ՞ եւ ե՞րբ այս թոյլ կապն վերցուելով՝ մարա-

կան միաձոյլ պետութիւնը կազմուեցաւ, վերջնականապէս կարելի չէ որոշել։ Պրաշէկ կը կարծէ թէ Կաշտարիտի եւ Մամիտիարշուի ջանից արդիւնքն է որ միաձոյլ պետութիւնը յառաջ բերած է։ Այս պետութեան առաջին թագաւորն եղած է Մամիտիարշու։

## 9. Ելլիպի (Ելլիբի)։

Ամենահին բեւեռագրութիւնն, որուն մէջ Ելլիպի անուան կը հանդիպինք, Ռամմանիրարի Գ.-ի արձանագրութիւնն է, ուր կը պատմուի Ելլիպիի, Հարհարի, Արազիաշի, Մեսուի, Մադաիի եւ Գիզիլբունդայի նուաճումը։ Տիգղաթպիղեսեր Գ. Ելլիպիէ հարկ առաւ՝ հաւանականագոյնս Մարաց դէմ ըրած արշաւանքէն դարձած ատեն։ Սարգոնի ատեն՝ Ելլիպիի վրայ կ՚իշխէր Դալտա իշխանը։ Ասոր որդիքն էին Նիբէ եւ Իշպաբարա։ Այս երեք անուններն ալ Յուստի իրանեան կը համարի. Դալտա = "Կրող, պահող (զպետութիւնը)", աւեստ. դէրէթար. Իշպաբարա = հինպրս. աստաբարէ, նորպրս, ասվար. Նիբէի հետ համեմատելու է Նիվիկա անունը (հինպրս. նաիբա = գեղեցիկ)։ Սարգոն Ելլիպիի Դալտա իշխանին, երբ հինգ գաւառներ հնազանդութիւնն անոր զլացան, այնու օգնեց, որ իր բանակաւը ապստամբած երկիրները նուաճեց։ Անհամար բազմութեամբ ձի իբր աւար Ասորեստան տարուեցաւ։ Այս գործառնութիւնը տեղի ունեցաւ Սարգոնի թագաւորութեանը 9դ տարին։ Սարգոն թագաւորութեանն 8դ տարին ալ Ելլիպի գացած էր։ Նմանապէս կը պատմուի թէ Հարհարացիք, երբ Սարգոնի թագաւորութեան 6դ տարին իրենց Կիբաբա իշխանն արտաքսեցին, ելլիպացիներէն օգնութիւն կը յուսային, բայց, ինչպէս կ՚երեւայ, յուսախաբ եղան։ Երբ Դալտա մեռաւ, անոր Նիբէ եւ Իշպաբարա երկու որդւոցը մէջ դահակալու-

թեան կռիւ ծագեցաւ. առաջինն Ելամացւոց Շաւտուրնահունդի թագաւորէն օգնութիւն խնդրեց եւ ընդունեցաւ, իսկ Իշպաբարա Սարգոնին դիմեց, որ եօթն կուսակալ խաւրեց իրենց բանակներովն՝ Ելլիպիի վրան։ Ելամական բանակը խորտակեցաւ եւ Իշպաբարա հօրը գահն ելաւ։

Սանհերիբ իր երկրորդ արշաւանքին ատենը՝ Կաշշի եւ Յասուբիգալլի բռնաւորներուն երկրէն Իշպաբարայի վրան քալեց, որ Ելլիպիի գահը բազմած էր։ Իշպաբարա չսպասեց որ խնդիրը զէնքով որոշուի, այլ ձգեց փախաւ։ Ասորեստանցւոց բանակն ամբողջ Ելլիպին աւերեց եւ Մարուբիշտի եւ Ակկուդդու իշխանանիստ քաղաքներն եւ շրջակայ 34 փոքր տեղեր նուաճեց։ Աւարն էր "ձի, ջորի, էշ, ուղտ, արջառ եւ անհամար բազմութեամբ անասուն"։ Սարգոն Բիտ-Բարուա գաւառն Ելլիէն առնլով՝ ուրիշ քանի մը քաղաքներու հետ Հարհարի միացուց։ Քիչ մ'ետքն՝ Ելլիպին Ասորեստանցւոց թշնամիներուն՝ Ելամացւոց կողմը կը տեսնենք, վասն զի անոնց առաջնորդին տրամադրութեանը տակ զինուոր դրաւ։ Այս անգամ Ելամայ դաշնակիցներն էին "Պարսուաշ, Պաշիրու, Ելլիպի, Յաշան (?), Լագաբրա, Հարզունու" եւն։

Արձանագրութեանց մէջ իշխանանիստ կոչուող երկու քաղաքներէն հաւանականօրէն նշանաւորագոյնն է Մուրու-բիշտու, "ամրոց մը՝ բարձր լեռնաժայռի մը վրայ դուրս ցցուած։ Երկրորդ իշխանանիստ է Աքքուդդու։

Նախնաբար ելլիպեան գաւառ մըն էր Բիթ-Բարրու, զոր Սանհերիբ Հարհարի հետ միացուց եւ Ելէնզաշն անոր մայրաքաղաքն ըրաւ։ Ելենզաշ անունը Կար-Սինախիրիբայի (= Ամուրն Սանհերիբայ) փոխեց։ Ելենզաշ = Ἀλίνζα (Պտղ. Զ, 2, 13)։ Հաւանօրէն Բիտ-Բարրուայի կը վերաբերէին Սինախիրբա եւ Կուսմանդամ ամուր քա-

ղաքները։ Բիտ-Բարրուայի Հարհարի հետ միացուելովը՝ Սիսիրտու Հարհարեան քաղաք եղաւ։

Ելլիպիի դիրքն կարելի է քիչ շատ ճշդել։ Հիւսիս-արեւմուտքէն սահմանակիցն էր Հարհար. դէպ ի հիւսիս-արեւելք կը հասնէր մինչեւ Ամրանդա. դէպ ի հարաւ կը հասնէր մինչեւ Ելամ, Պաշիրու, Ցազան, Լադաբրա, Անզան։ Ելլիպիի արեւմտակողմը կը բնակէին Ցասուբեանք եւ Կաշշեանք։ Ըստ այսմ այսօրուան գաղափարով Ելլիպին կ'իյնայ Պուշտի-Կուհի արեւելակողմը, հիւսիսէն ունի իրեն սահման Կիրինդ, Ռովանսիս քաղաքներն ու Բինդար գաւառը, հարաւ-արեւելքէն՝ Նաարաբադ եւ Բուրուջիրդ քաղաքները։

Բիտ-Բարրուա կ'իյնայ մերձաւորապէս Կերինդի եւ Կրմանշահի միջեւ գտնուող տեղը։

Ելլիպիի սկզբնական բնակչութիւնն անարիական էր, ինչպէս երկրին անունն եւ քանի մը քաղաքանուններ կը ցուցնեն։ Մարաց արշաւանքովն հին բնակիչք ազդեցութիւննին կորանցուցին, թէեւ մեծամասնութիւն կազմողն իրենք եղած պիտի ըլլան։ Երկրին տէրերն էին Մարք, որոնցմէ էր եւ տիրող հարստութիւնը։



# ՈՒՂՂԵԼԻՔ

| էջ | տող | | կարդա՛ |
|---|---|---|---|
| 117 | 25 | *անդիբացատրութեան* | *արդի բացատրութեան* |
| 118 | 13 | (310) | (էջ 12) |

☛ *Ուրիշ քանի մը տպագրական վրիպակներ ինքնին կը հասկըցուին:*

# ՅԱՆԿ

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

Ա. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոլէր. Իրաւունք Հայոց: 1890: 8° Երես՝ 85+59: Ֆր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց. (պատկերազարդ:) 1890: 8° Երես՝ 50: Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յակովբոս, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: 8° Երես՝ ԺԱ+159: Ֆր. 1.25

Դ. Դեմետրիոս Տաձի Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: 8° Երես՝ 79: Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: 8° Երես՝ Դ+272: Ֆր. 3.—

Զ. Ալպէր Տըմիշէ եւ Գ. Փիսոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: 8° Երես՝ 82: Ֆր. 1.—

Է. Մառ Նիկ., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ոնոփրիոս Անոփեան: 1892: 8° Երես՝ 89: Ֆր. 1.25

Ը. Գարրիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Ժ+51: Ֆր. 1

Թ. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտր. Ա. 1794—1860: (1 լուսանկարով:) 1893: 8° Երես՝ 232: Ֆր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Ց. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Է+92: Ֆր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յեղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 գընկատիպ.) 1893: 8° Երես՝ Ժ+533: Ֆր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Ջենոբ Գլակ, համեմատական ուսումնասիրութիւն: 1893: 8° Երես՝ 78: Ֆր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փարսադան, Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տախտակ՝ 55 պատկ.:) 1894: 8° Երես՝ 103: Ֆր. 2.—

ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Ց. Վ. Տաշեան: 1894: 8° Երես՝ ԺԱ+43: Ֆր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Ց. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փրօքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: 8° Երես՝ 9+145: Ֆր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք: Հտր. Ա.: Ա—Զ: Ա. Նեմեսիոս: Բ. Պրոկղ Դիադոխոս: Գ. Խոսրովիկ: Դ. Գիրք Հերձուածոց կամ Եպիփան: Ե. Պրոկղ: Զ. Սեկունդոս իմաստասէր: 1895: 8° Երես՝ ԺԲ+294: Ֆր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ի մի ամփոփուած եւ թարգմանուած հանդերձ ծանօթութեամբք: 1895: 8° Երես՝ 202: Ֆր. 2.50

ԺԸ. Տիրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: 8° Երես՝ 192: Ֆր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա

Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: 8° Երես՝ Թ+352: Ֆր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յակովբոս Վ., “Վարդապետութիւն առաքելոց„ անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադդէի: 1896: 8° Երես՝ Թ+442: Ֆր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Մասն Առաջին՝ Պատմական տեղեկութիւնք Սասնոյ վրայ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: 8› Երես՝ Է+62: Ֆր. 1.—

ԻԲ Կարրիէր Ա., Աբգարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գաբրիէլ Վ. Մէնէվիշեան: 1897. 8° էջ ԺԶ+107: Ֆր. 1.50

ԻԴ. Յովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897, 8° էջ Ը+272: Ֆր. 4.—

ԻԴ. Յովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: 8° էջ Ա—Ը+273—522: Ֆր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք թարգմանչին՝ 1. Ցանկ 1895—1897 Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897 8° էջ Ը+130: Ֆր. 1.50

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ Վ., Գիրք (կամ յօդուած) գրելու արուեստը: Նորուս հեղինակներուն ուղղեալ քանի մը կարեւոր ակնարկութիւններ: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: 8° էջ Է+123: Ֆր. 1.25

ԻԷ. Խալաթեան Գր., Մ. Խորենացու Նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: 8°, 56 էջ: Ֆր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչու-

թեան արուեստին: (10 զնկարիւ պատկերով:) 1898: 8° ԺԱ+202 էջ: Փր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փաւստոս Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Մ. Խորենացու աղբիւրների ուսումնասիրութիւն: 1898, 8° 175 էջ: Փր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899, 8° Երես՝ Ը+26: Փր. —.50

ԼԱ. Քօսեան Հ. Յ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: 8° Երես՝ ԺԲ+369: Փր. 5.—

ԼԲ. Քօսեան Հ. Յ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ մերձակայ գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: 8° Երես՝ Ժ+161: Փր. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հատոր 1780—1825. (1 զնկարիւ:) 1899: 8°. Երես՝ Ը+558: Փր. 5.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: 8° Երես՝ Ը+124: Փր. 1.—

ԼԵ. Կարրիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեաններն Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յակովբոս Վ. Տաշեան: (1 աշխարհագրկն տախտակով:) 1899: 8° Երես՝ 48: Փր. —.70

ԼԶ. Տաշեան Հ. Յ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: 8° Երես՝ ԺԱ+198: Փր. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Յ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. (տես ԺԶ:) Մասն Բ: Ը—Ժ. Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ագապետոս եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: 8° Երես՝ ԺԲ+388: Փր. 4.50

ԼԸ. Գր. Տէր-Պօղոսեան, Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: 8° Երես Ը+110: Փր. 1.50

ԼԹ. Վեբեր Դր. Սիմոն, Արարատը Ս. Գրոց մէջ: Թրգմ. Հ. Բառնաբաս Վ. Պիլէզիկճեան: 1901: 8° Երես՝ Ե+77: Փր. 1.—

Խ. Սանտալճեան Յովսէփ Վ., Ասորեստանեայ եւ Պարսիկ սեպագիր արձանագրութիւնք կամ նոցին քաղուածք որոնք Նաիրի-Ուրարտու աշխարհին պատմութեան կը վերաբերին: 1901: 8° Երես՝ 262: Փր. 4.50

ԽԱ. Խաչաթեանց Բագրատ, Հայ ժողովրդական դիւցազնական վէպը: 1903: 8° Երես՝ Ը+72: Փր. 1.—

ԽԲ. Մենեվիշեան Հ. Գաբրիէլ Վ., Արդի լեզուագիտութիւնը: Հատոր Ա.: 1903: 8° Երես՝ Ը+204: Փր. 3.—

ԽԳ. Մարկվարտ Դր. Յ., Հայ Բդեաշխք: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1903: 8° Երես՝ 44: Փր. - .75

ԽԴ. Գէլցէր Հ., Սկզբնաւորութիւնք Բիւզանդեան բանակաթեմերու դրութեան (1 աշխարհագրական տախտակով): Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1903: 8° Երես՝ Է+83: Փր. 2.—

ԽԵ. Կիւլէսէրեան Բ. Վ., Ծովք, Ծովք-Տլուք եւ Հռոմ-Կլայ, պատմական եւ տեղագրական ուսումնասիրութիւն: (1 աշխարհագրական տախտակով) 1904, 8° Երես՝ Ը+119: Փր. 1.50

ԽԶ. Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս Պատրիարք. պատմագրական եւ քննասիրական ուսումնասիրութիւն: 1904: 8° Երես՝ ԺԴ+227: Փր. 3.50

ԽԷ. Պեդերսըն Հ., Նպաստ մը հայ. լեզուի պատմութեան: Թարգմ. Հ. Գ. Գարանֆիլեան: 1904: 8° Երես՝ Ը+87: Փր. 1.25

ԽԸ. Տէր-Մկրտչեան Գ. եւ Ամառեան Հ. Յ., Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ նորագիւտ ձեռագրին: 1904: 8° Երես՝ Ի+110: Փր. 1.50

ԽԹ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հատոր 1825–1904: 8° Երես՝ Ժ+663: Փր. 7.—

Ծ. Շտրեք Մ., Հայաստան, Քրդաստան եւ արեւմտեան Պարսկաստան բաբելական-ասորեստանեայ սեպագրերու համաձայն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 8° Երես՝ Ի+222: Փր. 7.—

---

